ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք








# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922թ.

6

ՀՈՒՆԻՍ 1987

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6
ՀՈՒՆԻՍ
1987 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս.
(գլխավոր խմբագիր)
ԱՍԱՏՐՅԱՆ Գ. Ե.
ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ Լ. Բ.
(գլխավոր խմբագրի տեղակալ)
ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե.
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Լ. Մ.
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ.
(պատասխանատու քարտուղար)
ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ.
ԴԱՐԲԻՆՅԱՆ Գ. Բ.
ՄԱՆԴԱԼՅԱՆ Ք. Լ.
ՄԵԼԻՔՅԱՆ Ս. Ա.
ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Գ.
ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ.
ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ.
ՍԻՄՈՆՅԱՆ Ս. Ա.
ՖԱՆԱՐՋՅԱՆ Վ. Բ.

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—36
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանքի՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 53—86—11



# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՇԱՐՔԵՐԸ ՀԱՄԱԼՐԵԼ ԱՐԺԱՆԱՎՈՐՆԵՐՈՎ

ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ սովետական հասարակության զարգացումն արագացնելու գործում անչափ կարևորեց կոմունիստի անաղարտ ու ազնիվ կերպարի համար անդուլ պայքարի անհրաժեշտությունը: Համագումարը խնդիր դրեց կուսակցությունը պատնեշել պատահական մարդկանցից, նրանցից, ովքեր նրա մեջ են ընդունվում կարիերիստական կամ շահադիտական այլ մղումներով: Չէ որ, ինչպես նշվեց Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ, կոմունիստներին ամեն ինչում նայում են որպես օրինակի՝ աշխատանքով և վարքագծով: «Պետք է ապրել և աշխատել այնպես, որ աշխատավոր մարդը կարողանա ասել. «Այո՛ դա իսկական կոմունիստ է»: Եվ ինչքան լուսավոր ու մաքուր լինի կյանքը կուսակցական տանը, այնքան արագ կհաղթահարենք այն բոլոր ոչ դյուրին խնդիրները, որ բնորոշ են ներկայիս բեկումնային ժամանակաշրջանին»: Համագումարի ընդունած ՍՄԿԿ ծրագրի և կանոնադրության, ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումի բարձր չափանիշներն են այսօր դրված կուսակցության որակական կազմի բարելավման, նրա շարքերի համար մարդկանց ընտրության, կոմունիստների՝ որպես քաղաքական մարտիկների ու մասսաների կազմակերպիչների, կուսակցության գծի ու դիրեկտիվների ակտիվ կենսագործողների, դաստիարակության կատարելագործման հիմքում:

Ելակետ ունենալով կուսակցության արդի պահանջները՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, քաղկոմներն ու շրջկոմները նպատակաուղղված աշխատանք են ծավալում կուսակցական շարքերի որակական կազմը բարելավելու, կոմունիստների ակտիվությունը բարձրացնելու և ստեղծագործական նախաձեռնությունը զարգացնելու համար: Իրենց շարքերի աճի վրա կարգավորիչ ներգործության միջոցով կուսակցական կազմակերպությունները իրականացնում են անհատական ընտրություն և կուսակցության մեջ ներգրավում բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականության առավել արժանավոր ներկայացուցիչներին: Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները սկզբնական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրում են այն բանի վրա, որպեսզի ՍՄԿԿ-ի մեջ ընդունելությունը կատարվի մտածված, ջանադիր և ամենօրյա կազմակերպչական ու գաղափարաքաղաքական աշխատանքի հիման վրա: Ընդունվողների մանրազնին անհատական ընտրություն, կուսակցական շարքերի աճի վրա կարգավորիչ ներգործության սահմանում՝ ահա թե ՍՄԿԿ XXVII համագումարից հետո ինչն է բնութագրական հանրապետության կուսկազմակերպությունների՝ կուսշարքերի համալրման պրակտիկային:

Կոմունիստական կուսակցությունը սովետական հասարակության և՛ քաղաքական, և՛ բարոյական ավանգարդն է, և բնականաբար, այսօր հատուկ ուշադրություն է նվիրվում կուսակցության մեջ ընդունվել ցանկացողների գաղափարաքաղաքական, գործնական ու բարոյական հատկանիշներին: Ընդ որում հաշվի է առնվում կուսակցության շարքերն ընդունվողների մասին ինչպես կոմունիստների, այնպես էլ այն անկուսակցականների կարծիքը, որոնք նրանց հետ աշխատում են կողք-կողքի, ճանաչում են ոչ միայն արտադրության ոլորտում, այլև ամենօրյա կյանքում:

ՍՄԿԿ կանոնադրության համապատասխան՝ ընդունելությունը կատարվում է միայն դռնբաց կուսակցական ժողովներում: Դա հնարավորություն է ընձեռում համակողմանիորեն քննարկել ընդունվողի արժանիքներն ու թերությունները, նրա հարցը լուծել հրապարակայնորեն, կոլեկտիվի աչքի առաջ: Հարկավոր է, ինչպես կարգն է, կուսակցության մեջ ընդունելության հարցերը նախապես քննարկել կուսխմբերում և արտադրամասային կուսկազմակերպություններում: Դա, անշուշտ, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, դրական ազդեցություն է ունենում կուսակցական շարքերի աճի կարգավորման վրա:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունն այսօր ունի հետևյալ կառուցվածքը՝ 51 քաղկոմ ու շրջկոմ, 5.951 սկզբնական, 4.064 արտադրամասային կուսկազմակերպություն, 7.975 կուսխումբ: 1987 թ. հունվարի 1-ի դրությամբ Հայաստանի կոմկուսի շարքերում հաշվառման մեջ են գտնվում 191.753 կոմունիստներ, որոնցից 184.353-ը ՍՄԿԿ անդամներ են, 7.400-ը՝ ՍՄԿԿ անդամության թեկնածուներ: Սկսած 1976 թ. ՍՄԿԿ մեջ ընդունելությունն ավելացել է ինչպես երկրում ամբողջությամբ վերցրած, այնպես էլ մեր հանրապետությունում: Եթե ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում հանրապետությունում ամեն տարի միջին հաշվով կուսակցության մեջ է ընդունվել 3.200 մարդ, իսկ XXV և XXVI համագումարների՝ 5.400, ապա արդեն XXVI և XXVII համագումարների միջև ընկած ժամանակահատվածում այդ թիվը կազմել է շուրջ 6.000: Իսկ ահա 1986 թ. հանրապետության կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ անդամության թեկնածու է ընդունվել 6.729 մարդ: Վերջին տասը տարում հանրապետության կոմունիստների թիվն ավելացել է 49.094 մարդով: Այժմ կոմունիստների 88,5 տոկոսն զբաղված է ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում, ընդ որում 66,9 տոկոսը՝ անմիջականորեն նյութական արտադրության ոլորտում: Երկրի հասարակական-քաղաքական կյանքի վերակառուցման և սոցիալ-տնտեսական զարգացման արագացման արդի պայմաններում կուսակցությունն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում իր կազմակերպությունների դերի ըստ ամենայնի բարձրացմանը: «Կուսակցական աշխատանքի վերակառուցման էությունն այն է,— ասվեց XXVII համագումարին Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ,— որ յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն՝ հանրապետականից մինչև սկզբնականը, ակտիվորեն պայքարի ապրիլյան (1985 թ.) պլենումի գծի կենսագործման համար, ապրի որոնումների, իր գործունեության ձևերի ու մեթոդների նորացման մթնոլորտում»: Այդ պահանջը վերաբերում է նաև կուսակցական-կազմակերպական աշխատանքի մի այնպիսի կարևոր բնագավառի, ինչպիսին կուսակցության շարքերի աճի կազմակերպումն է, նրա որակական կազմի բարելավումը: Այսօր արդյունաբերության, տրանսպորտի, կապի, շինարարության ձեռնարկություններում և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերում շատ սկզբնական կուսկազմակերպություններ ակտիվորեն ներազդում են կոլեկտիվների գործերի վիճակի վրա, մոբիլիզացնում աշխատավորների ուժերը ժողովրդատնտեսական խնդիրները հաջողությամբ լուծելու համար: Նրանք, ամբողջությամբ վերցրած, կանոնավոր կերպով իրենց շարքերը համալրում են արժանավոր մարդկանցով՝ արտադրության, գիտության, կրթության, առողջապահության առաջավոր ներկայացուցիչներով, դաստիարակչական արդյունավետ աշխատանք ծավալում նրանց շրջանում: Կուսակցության մեջ ընդունվել ցանկացողների թվի մշտական ավելացման պայմաններում նրա շարքերի աճը կարգավորելիս սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում միշտ եղել և մնում է հոգատարությունը իրենց սոցիալական կազմի բարելավման նկատմամբ:

Սովետական հասարակության առաջատար ուժը եղել և մնում է բանվոր դասակարգը, և գերազանցապես նրա ներկայացուցիչների հաշվին ՍՄԿԿ շարքերի համալրման գիծը ճիշտ է և օրինաչափ: Վերջին տարիներին հանրապետության կուսկազմակերպության շարքերը համալրածների մեջ բանվորների տեսակարար կշիռը կազմել է 62,9 տոկոս: Դրա շնորհիվ նրա կազմում ըստ սոցիալական դրության բանվորների թիվը վերջին տասը տարում 36 տոկոսից հասել է 45,4 տոկոսի:

Այդուհանդերձ բանվոր դասակարգի ներկայացուցիչներից կուսակցության մեջ ընդունելու առնչությամբ հանրապետության կուսակցական կազմակերպությունների ծավալած աշխատանքում դեռևս կան թերություններ: Վերջին ժամանակներս գրեթե բոլոր շրջաններում արագ զարգանում է արդյունաբերությունը. կառուցվել են նոր գործարաններ ու ֆաբրիկաներ, ընդլայնվել է շինարարական կազմակերպությունների, շինարարական ինդուստրիայի, տրանսպորտի ձեռնարկությունների ցանցը: Սակայն առանձին շրջկոմներ այս տեղաշարժերը, ինչպես հարկն է, հաշվի չեն առնում: Այդ պատճառով էլ մի շարք նոր ստեղծված արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական կազմակերպություններում բանվոր կոմունիստների տեսակարար կշիռը ցածր է:

Կուսակցությունը պահանջում է իր շարքերը ներգրավել լավերից լավագույններին, նրանց, ովքեր բոլոր բնագավառներում իրենց դրսևորում են դրական կողմերով: Մինչդեռ կուսակցության շարքերը համալրելիս առանձին կազմակերպություններ դեռևս մակերեսային մոտեցում են ցուցաբերում ընդունվող բանվորների գործնական



և քաղաքական հատկանիշների ուսումնասիրման հարցում: Կուսակցության մեջ կարող է ընդունվել ամենևին էլ ոչ ուզած բանվորը կամ կոլտնտեսականը, այլ բոլոր առումներով իսկապես առաջավոր աշխատավորը, իր ակտիվ կենսադիրքում համոզված մարդը, որը պատրաստ է դառնալու կուսակցության իսկական մարտիկ: Ցավոք, շարունակում են տեղ գտնել փաստեր, երբ ՍՄԿԿ շարքերն են ընդունվում այնպիսի մարդիկ, որոնք բանվոր են դառնում հենց միայն այդ նպատակով՝ հույս ունենալով դրանով իսկ ինչ-որ օգուտներ կամ արտոնություններ ստանալ: Դրա տրամաբանական շարունակությունը լինում է այն, որ մարդը կուսակցության անդամության թեկնածու ընդունվելուց անմիջապես հետո հրաժեշտ է տալիս իր բանվորական անցյալին և ստանձնում ծառայողի պաշտոն: Այդպիսի օրինակներ կան Կալինինոյի, Աբովյանի, Ապարանի և ուրիշ շրջանային կազմակերպություններում:

Կուսակցական շարքերի համալրման առնչությամբ ծավալվող աշխատանքի արմատական բարելավման նպատակով անհրաժեշտ է, որպեսզի կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, կապի սկզբնական կազմակերպությունները ձեռնարկեն գործնական միջոցներ՝ արմատապես բարելավելու ՍՄԿԿ XXVII համագումարի և Կենտկոմի հունվարյան (1987 թ.) պլենումի պահանջներին համապատասխան կուսակցության համար բանվորների ընտրության գործը:

Հարկ է առանձնահատուկ կերպով շեշտել շինարարությունում կուսակցական կազմակերպությունների դերի հետագա բարձրացման անհրաժեշտությունը: Ինչպես հայտնի է, այդ ճյուղի ներդաշնակ աշխատանքով է պայմանավորված հաջողությունը ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում: Սակայն այդ բնագավառը շարունակաբար հետ է մնում: Գլխավոր պատճառը շինարարական կազմակերպություններում պետական և պլանային կարգապահության ցածր մակարդակն է, նրանց գործունեության դանդաղ վերակառուցումը, անպատասխանատվությունը գործերի վիճակի համար: Այդ մասին ամբողջ սրությամբ նշվեց նաև Հայաստանի կոմկուսի 1987 թ. մարտյան պլենումում:

Շինարարական կուսակցական կազմակերպությունների գործունեությունը մի շարք տեղերում դեռևս ցածրարդյունավետ է: Նրանք չեն դրսևորում անհրաժեշտ հոգատարություն կոմունիստների ուժերի ճիշտ տեղաբաշխման, գործերի վիճակի համար նրանց պատասխանատվության բարձրացման, արտադրության կարևորագույն տեղամասերում կուսակցական ազդեցության ուժեղացման նկատմամբ: Վերջին հնգամյակում հանրապետությունում կապիտալ ներդրումների ծավալը աճել է 18,5 տոկոսով: Նույն ժամանակաշրջանում ճյուղի աշխատողների թիվն ավելացել է 11,1 տոկոսով: Մինչդեռ շինարարությունում աշխատող կոմունիստների տեսակարար կշիռը 1981 թ. 7,8 տոկոսից նվազել և 1986 թ. կազմել է 7,4 տոկոս: Այդ միտումը նկատելի է հատկապես Հրազդանի, Ապարանի, Եղեգնաձորի, Մարտունու և ուրիշ շրջանների շինարարական կուսկազմակերպություններում:

Չի կարող անհանգստություն չպատճառել և այնպիսի փաստը, ինչպես շինարար բանվորների մեջ կուսակցական խավի նվազումն է: «Բաշարանշին» տրեստի բանվորների մեջ այն կազմում է սոսկ 8,4, իսկ ինժեներատեխնիկական անձնակազմի մեջ՝ 41,8 տոկոս: «Ախթալշին» տրեստում՝ համապատասխանաբար 10,6 և 37,9 տոկոս: Պետագրոարդի № 5 տրեստի 2-րդ շինվարչությունում, որը գտնվում է Արարատի շրջանում, կուսակցական կազմակերպության անդամների 62 տոկոսը ծառայող է և միայն 38 տոկոսը՝ բանվոր: Սկզբնական կուսակցական կազմակերպությունների, քաղկոմների և շրջկոմների կարևորագույն խնդիրն է՝ ուժեղացնել կուսակցական ազդեցությունը շինարարությունում, բարելավել կոմունիստների ուժերի տեղաբաշխումը արտադրության վճռորոշ տեղամասերում, բարձրացնել կադրերի պատասխանատվությունը հանձնարարված գործի համար:

Նույնպիսի վիճակ է ստեղծվել նաև գյուղատնտեսությունում: Այստեղ աշխատողների թիվը 1975-ի համեմատությամբ 1986 թ. ավելացել է 1,3 անգամ: Սակայն գյուղում կոմունիստների թիվը նույն ժամանակաշրջանում 20,1 տոկոսից նվազել և իջել է 17,9 տոկոսի: Կուսակցության Վարդենիսի, Ղուկասյանի, Անիի, Կամոյի, Կրասնոսելսկի շրջկոմները պետք է լրջորեն զբաղվեն գյուղատնտեսական արտադրությունում անմիջականորեն ընդգրկված կոմունիստների տեսակարար կշռի նվազումը կանխելու հարցով:

1986 թ. կուսակցական նոր համալրման մեջ կոլտնտեսականների տեսակարար կշիռը կազմեց 6,9 տոկոս, որը հնարավորություն ընձեռեց նախորդ տարվա համե-

մասնությամբ ավելացնել կոմունիստների թվաքանակը ըստ զբաղվածության: Ուշադրություն է հատկացվում կոլտնտեսություններում մասնագետների մեջ կուսակցական խավի ավելացմանը: Նրանց տեսակարար կշիռը հանրապետական կուսակցական կազմակերպությունում 1976 թ. 7 տոկոսից 1986 թ. հասավ 9 տոկոսի: Անցած տարի ՍՄԿԿ շարքերն ընդունված կոլտնտեսականներից 51,4 տոկոսն աշխատում էր դաշտավարությունում, այգեգործությունում և բանջարաբուծությունում, 21,3 տոկոսը՝ անասնապահությունում, 15,6 տոկոսը մեխանիզատոր էր, 8,2 տոկոսը՝ գյուղատնտեսության մասնագետ:

Կուսակցության մեջ ընդունելության հարցում ՍՄԿԿ կանոնադրությունը, ինչպես հայտնի է, խտրություն չի դնում տարբեր սոցիալական խմբերի ներկայացուցիչների միջև: Յուրաքանչյուր կուսակցական կոմիտե, կուսակցության մեջ մարդկանց ընտրության աշխատանքում ելնում է կոնկրետ պայմաններից, հաշվի առնում կուսակցական միջուկի ուժեղացման անհրաժեշտությունը այն կոլեկտիվներում ու տեղամասերում, որտեղ այդ պահանջում են գործի շահերը: Բնական է, որ այն վերաբերում է ոչ միայն արդյունաբերական, շինարարական, տրանսպորտի ու կապի ձեռնարկություններին, սովխոզներին ու կոլտնտեսություններին, այլև գիտահետազոտական ինստիտուտներին, դպրոցներին, բարձրագույն ուսումնական հաստատություններին, կոմունալ-կենցաղային հիմնարկություններին, առողջապահության կազմակերպություններին և այլն: Դա բխում է ոչ միայն այն չափազանց կարևոր դերից, որ խաղում է սովետական մտավորականությունը գիտատեխնիկական հեղափոխության իրականացման, ժողովրդի կուլտուրայի վերելքի, կոմունիստական շինարարության բոլոր խնդիրների լուծման գործում: Դա թելադրվում է կադրային ճիշտ քաղաքականության վարման, առաջքաշման համար ռեզերվի նախապատրաստման շահերից:

Վերջին տարիներին այդ ասպարեզում որոշակի աշխատանք է կատարվել. կուսակցական նոր համալրման մեջ ծառայողների տեսակարար կշիռը կազմում է 28,9 տոկոս: Նրանց ճնշող մեծամասնությունը ժողովրդական տնտեսության մասնագետ է: 1986 թ. ՍՄԿԿ շարքերն ընդունված ծառայողների 90,8 տոկոսը ինժեներատեխնիկական աշխատող է: Այդ աշխատանքը հատկապես ակտիվացավ 1985 թ. հունիսին ՍՄԿԿ Կենտկոմում տեղի ունեցած գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը նվիրված խորհրդակցությունից հետո: Հայաստանի կոմկուսի կազմում ծառայողների մեջ ինժեներատեխնիկական աշխատողների տեսակարար կշիռը 1986 թ. 30,2 տոկոս էր՝ 1976 թ. 25,8 տոկոսի փոխարեն: Մտավորականության լավագույն ներկայացուցիչներին կուսակցության մեջ ընդունելու համար ընտրության գործը անհրաժեշտ է առաջիկայում ևս շարունակել:

Միաժամանակ չի կարելի աչք փակել այդ գործում տեղ գտած թերությունների առջև: Խոսքն այն մասին է, որ կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները ճիշտ հաշվի առնեն իրենց խնդիրները կուսակցության մեջ մարդկանց ընտրության գործի կարգավորման-կանոնավորման ասպարեզում, նրա շարքերն ընդունվելու համար ընտրեն ծառայողների միայն արժանավոր ներկայացուցիչներին: Մինչդեռ երբեմն այնպես է լինում, որ իսկական առաջավորները, արժանավորները մնում են ստվերում, իսկ կուսակցության մեջ հայտնվում են պատահական մարդիկ: Այսպես, Կրասնոսելսկի շրջանի Ճորժայի երկաթուղային կայարանի կոմունիստները կուսակցության անդամության թեկնածու են ընդունել կայարանի պետին, իսկ մեկ տարի անց, համաձայն ՍՄԿԿ կանոնադրության 16 պարագրաֆի, կատարած խախտումների համար մերժել են նրան ընդունել ՍՄԿԿ անդամ: Այդպիսի դեպքերը եզակի չեն:

Ժողովրդի կենսամակարդակի բարձրացման խնդիրների լուծման հետ անմիջական առնչություն ունեն առևտրի, հասարակական սննդի, կենցաղային սպասարկման ոլորտի կուսակցական կազմակերպությունները: Նրանց անհրաժեշտ է ակտիվորեն ծավալել իրենց աշխատանքը, հետևողականորեն և նպատակասլաց պայքար մղել բացասական երևույթների դեմ: Իսկ դա հնարավոր է միայն այն դեպքում, երբ բոլոր կոմունիստները գտնվեն իրենց կոչման բարձրության վրա, երբ կուսակցական կազմակերպությունները պատշաճ հսկողություն սահմանեն առևտրի և կենցաղային ծառայության նկատմամբ, ուժեղացնեն իրենց ներգործությունը ու ազդեցությունը սպասարկման ոլորտի բոլոր օղակներում: Այս առումով կարևոր նշանակություն ունի այդ բնագավառում աշխատող արժանավոր մարդկանց կուսակցության շարքերը ներգրավելու գործը: Առևտրի և հասարակական սննդի աշխատողներից 1986 թ. կուսակցության մեջ ընդունվել է 95 մարդ: Դա շատ չէ, որովհետև ճյուղի կոմունիստների տեսա-



կարար կշիռը հանրապետական կուսակցական կազմակերպությունում նկատելիորեն նվազել է. 1976 թ. 3,6 տոկոսի փոխարեն այն 1986 թ. կազմել է 3,2 տոկոս: Հարկավոր է ոչ թե արհեստականորեն արագացնել կուսակցության մեջ ճյուղի աշխատողների ընդունելությունը, այլ այստեղ հետևողականորեն ամրապնդել կուսակցական միջուկը: Աճել է կոմունալ-բնակարանային տնտեսությունում և կենցաղային ծառայությունում աշխատող կոմունիստների տեսակարար կշիռը:

Կուսակցության հավատարիմ և հուսալի ռեզերվը եղել և մնում է լենինյան կոմերիտմիությունը: Կուսակցական շարքերի կազմի բարելավման տեսակետից կարևոր նշանակություն ունի ՍՄԿԿ XXVII համագումարի հաստատած կանոնադրական դրույթն այն մասին, որ երիտասարդությունը մինչև 25 տարեկանը ներառյալ (նախկինում՝ 23) ընդունվում է կուսակցության մեջ ՀամԼԿԵՄ-ի միջոցով: Դա հնարավորություն է ընձեռում կուսակցության մեջ ներգրավել առավել հասուն, պատրաստված երիտասարդ մարդկանց և ավելի բարձրացնել կոմերիտմիության հեղինակությունը որպես ՍՄԿԿ-ի հուսալի ռեզերվի և հավատարիմ օգնականի:

Վերջին տարիներին հանրապետությունում ավելացել է կուսակցության մեջ կոմերիտականների ընդունելությունը: Այսպես, 1986 թ. ընդունվածների թվում ՀամԼԿԵՄ անդամները կազմել են 73,1 տոկոս: ՀամԼԿԵՄ անդամներից կուսակցության մեջ ընդունվածների տոկոսը է՛լ ավելի բարձր է 26 կոմիսարների, Ապարանի, Թալինի, Իջևանի և ուրիշ շրջաններում:

Սակայն մի քանի շրջաններում ՍՄԿԿ մեջ կոմերիտականների ընտրության կազմակերպման հարցերին անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում: Կոմերիտականների թվից ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու ընդունվելու գործն անբավարար է Արթիկի, Եղեգնաձորի, Ախուրյանի և Մեղրու շրջաններում: Նրանց կուսակցական կոմիտեներին հարկավոր է անել համապատասխան հետևություններ:

Ձեռնարկված միջոցները հնարավորություն են ընձեռել երիտասարդացնել հանրապետության կուսակցական կազմակերպության տարիքային կազմը: Նրանում մինչև 30 տարեկան կոմունիստների թիվը 1975 թ. 12,9 տոկոսից 1985 թ. հասել էր 20,5 տոկոսի: Հանրապետությունում 1986 թ. կոմունիստների միջին տարիքը 45 էր, նույն թվականին ՍՄԿԿ շարքերը նոր ընդունվածներից 32-ը 41 տարեկանից բարձր: Հարկավոր է առանձնահատուկ ուշադրություն դարձնել յուրաքանչյուր այսպիսի դեպքի:

ՍՄԿԿ XXVII համագումարը, Կենտկոմի հունվարյան (1987 թ.) պլենումը անչափ կարևորեցին կանանց կուսակցության մեջ ներգրավելու և ղեկավար աշխատանքում առաջ քաշելու անհրաժեշտությունը: Այդ առնչությամբ մեր հանրապետությունում ևս զգալի աշխատանք է կատարվել: Դրա շնորհիվ հանրապետական կուսակցական կազմակերպությունում կոմունիստների ընդհանուր թվում կանանց տեսակարար կշիռը 1975 թ. 19,9 տոկոսից 1986 թ. հասել է 24,8 տոկոսի: Վերջին շրջանում ամեն տարի կուսակցության մեջ նոր ընդունվածների 35 տոկոսը կազմում են կանայք, իսկ 1986 թ. արդեն 35,9 տոկոս էր: Առանձին շրջաններում ու քաղաքներում այդ ցուցանիշը զգալի բարձր է: Այսպես, Լենինականի, Կիրովականի և Դիլիջանի քաղաքներում, Երևանի Սպանդարյանի շրջանում 1986 թ. կուսակցության մեջ ընդունվածների թվում կանայք կազմում են 39,2—41 տոկոս: Սակայն, ցավոք, առանձին շրջաններում կուսակցական կազմակերպություններում, կանանց շրջանում տարվող անբավարար աշխատանքի հետևանքով, նրանց թիվը նվազել է: Ախուրյանի, Բաղրամյանի, Գուգարքի, Ղուկասյանի, Մարտունու, Մասիսի, Նաիրիի շրջաններում, օրինակ, կոմունիստների ընդհանուր թվում կանանց տեսակարար կշիռը չի անցնում 20 տոկոսից: Հետևաբար, կուսակցության քաղկոմների ու շրջկոմների պարտքն է ավելի շատ հոգատարություն ցուցաբերել կանանց գաղափարաքաղաքական դաստիարակության, մեր կյանքի բոլոր ոլորտներում նրանց ակտիվության բարձրացման, ՍՄԿԿ շարքերը նրանց ընդունելության գործի բարելավման նկատմամբ:

Կուսակցական շարքերի աճի կարգավորման աշխատանքում հարկավոր է լիովին հաշվի առնել հանրապետության բնակչության ազգային կազմում տեղի ունեցող փոփոխությունները: Այդ մասին մեկ անգամ ևս նշվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1986 թ. հոկտեմբերյան պլենումում: Այսօր հանրապետական կուսակցական կազմակերպության կազմում հաշվվում են ոչ բնիկ 31 ազգի և ազգության 11.927 ներկայացուցիչներ: Վերջին տասը տարում կուսակցության մեջ ոչ բնիկ ազգության անձանց ընդունելությունը ավելացել է 3,6 անգամ:

Ամբողջությամբ վերցրած, դրականորեն գնահատելով ոչ բնիկ ազգության մարդ-

կանց կուսակցության շարքերն ընդունելու աշխատանքը, տեղին է նշել նաև, որ այդ ասպարեզում քիչ թերություններ չկան Դիլիջանի, Անիի, Ղուկասյանի, Մարտունու, Շամշադինի կուսկազմակերպություններում:

ՍՄԿԿ շարքերի որակական կազմի բարելավման գործում վճռական նշանակություն ունի կոմունիստների կրթական մակարդակի բարձրացման խնդիրը: Այդ առումով որոշակի ձեռքբերումներ կան: Այսօր հանրապետության կոմունիստների 39,1 տոկոսն ունի բարձրագույն և թերի բարձրագույն, 44,7-ը՝ միջնակարգ կրթություն: Նրանցից 611-ը գիտությունների դոկտորներ են, 4006-ը՝ թեկնածուներ: Այս ամենը, ինչ խոսք, ժամանակի պահանջն է, երբ երկրում մտցված է համընդհանուր միջնակարգ կրթություն, իրականացվում են գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդիրները: Նման պայմաններում անհասկանալի է այն կազմակերպությունների դիրքը, որոնք կուսակցության մեջ ընդունում են միջնակարգ կրթություն չունեցող անձանց: Օրինակ, 1986 թ. ՍՄԿԿ անդամության թեկնածու է ընդունվել ոչ լրիվ միջնակարգ կրթությամբ 37 մարդ: Ամասիայի, Բաղրամյանի և Եղեգնաձորի շրջանային կուսակցական կազմակերպությունները ընդունել են երկուական, Թալինինն ու Էջմիածնինը՝ երեքական ոչ լրիվ միջնակարգ կրթությամբ անձանց, Ղուկասյանի և Շամշադինի կազմակերպությունները՝ յուրաքանչյուր տասներորդին: Մի քանի շրջաններում կուսակցության մեջ են ընդունում բարձրագույն կրթություն չունեցող ծառայողների: Օրինակ, Թումանյանի շրջանում ընդունել են 5, Անիի, Նոյեմբերյանի և Ստեփանավանի շրջաններում՝ 2—3 մարդու: Կուսակցության շրջկոմները պետք է ամենալուրջ ուշադրությունը նվիրեն այս կարգի վրիպումների կանխման վրա:

ՍՄԿԿ XXVII համագումարում նշվեց, որ ամբողջությամբ վերցրած կուսակցության կազմի ձևավորումը, նրա շարքերի աճը իրականացվում են կանոնադրական նորմաներով, սակայն, ինչպես և ցանկացած կենդանի գործ, կուսակցության մեջ ընդունելությունը կարիք է զգում հետագա կատարելագործման: Համագումարում սուր կերպով քննադատվեցին այն կուսակցական կազմակերպությունները, որոնք ուժեղացնում են կուսակցության շարքերի աճը՝ ի վնաս նրանց որակի, պահանջկոտություն չեն դրսևորում ընդունվողների նկատմամբ:

Համագումարի պահանջների լույսի ներքո քաղաքային ու շրջանային կուսակցական կազմակերպությունները իրենց ամենօրյա գործունեության ընթացքում պետք է մշտապես վերլուծեն ժողովրդական տնտեսության կառուցվածքում տեղի ունեցող փոփոխությունները, նրա զարգացման հեռանկարները, ժամանակին մշակեն նրա տարբեր ճյուղերի նկատմամբ կուսակցական ազդեցության ուժեղացման միջոցառումներ:

Մանրազնին վերլուծության լուրջ աղբյուր են կուսակցական կազմակերպությունների կառուցվածքի և քանակական կազմի եռամսյակային ու տարեկան վիճակագրական հաշվետվությունները: Սակայն քաղկոմ-շրջկոմները երբեմն դրանք հաստատում են՝ առանց հանգամանալի ուսումնասիրության, ձևականորեն: Հաշվետվությունների պարունակած ինֆորմացիայի մեջ խորամուխ լինելու, դրանից անհրաժեշտ հետևություններ անելու դեպքում կուսակցության Աբովյանի, Գուգարքի, Ղափանի, Կրասնոսելսկի, Սպիտակի շրջկոմները, օրինակ, ժամանակին կնկատեին ժողովրդական տնտեսությունում զբաղվածների մեջ կուսակցական խավի նվազման միտումը և կաշխատեին կանխել այն:

Չի հաջողվում դադարեցնել նաև ժողովրդական կրթության բնագավառում աշխատող կոմունիստների տեսակարար կշռի նվազման պրոցեսը: Չնայած ձեռնարկված միջոցներին՝ շարունակվում է դպրոցների կուսակցական կազմակերպությունների «ծերացումը»: Այստեղ կոմունիստների տեսակարար կշիռը 1976 թ. 12,7 տոկոսից 1986 թ. իջել է 10,7 տոկոսի: Արտաշատի, Կրասնոսելսկի, Վարդենիսի, Կամոյի անվան, Անիի և ուրիշ շրջաններում մի շարք դպրոցական կուսկազմակերպություններ տարիներ շարունակ չեն աճում:

Կուսակցության շարքերի աճի կազմակերպումն ու կարգավորումը ներկուսակցական աշխատանքի հրատապ խնդիրներից են: Մինչդեռ որոշ կուսկոմիտեներ չեն հասել բոլոր սկզբնական կազմակերպություններում կուսակցական շարքերի պլանաչափ աճին: Այսպես, 26 կոմիսարների անվան շրջանի կուսակցական կազմակերպության կառուցվածքում կա 260 սկզբնական կազմակերպություն: Վերջին հինգ տարում նրանցից 62-ը և երեք տարում՝ 93-ը առհասարակ աճ չեն ունեցել, և դա այն դեպքում, երբ այստեղ ամեն տարի կուսակցության շարքերն են ընդունում 360



մարդու: Այստեղից էլ ծագում են փոքրաթիվ կուսկազմակերպությունների աճի պրոբլեմները:

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները ոչ միշտ են հետևում, որպեսզի սկզբնական կազմակերպությունները ժամանակին ներկայացնեն ընդունելության գործերը: Պատահում է այնպես, որ կուսակցական ժողովում ընդունելությունից մինչև կուսշրջկոմի բյուրոյի քննարկումը տևում է հրահանգով սահմանված մեկ ամսից ավելի: Այդ ժամանակաընթացքում կուսակցության մեջ ընդունվածին հանձնարարություններ չեն տալիս, նա փաստորեն թեկնածու չի համարվում: 1986 թ. շրջկոմներում ու քաղկոմներում ընդունելության գործերի 2,9 տոկոսը քննարկվել է մեկ ամսից ավելի ժամանակաընթացքում: Ավելին, հինգ թեկնածուների գործեր (Շահումյանի, Արտաշատի, Կամոյի, Եղեգնաձորի շրջաններում) քննարկվել են սկզբնական կուսակցական կազմակերպությունների ժողովներից չորս ամիս անց: Եվ բոլորովին անհասկանալի է, թե ինչու մի շարք կուսշրջկոմներ (Սովետական, Աբովյանի, Արտաշատի, Արթիկի, Ղուկասյանի, Մասիսի) ընդունելության հարցերի քննարկման համար բյուրոյի նիստերն անցկացրել են 1986 թ. դեկտեմբերի վերջերին: Ճիշտ չէ նաև այդ հարցի կապակցությամբ բյուրոյի նիստի հրավիրումը եռամսյակի վերջում, երբ անհրաժեշտ է նախապատրաստել վիճակագրական հաշվետվությունները, լրացնել կուսակցական փաստաթղթերը: Այստեղից էլ՝ դրանց ներկայացման ժամկետների խախտումները:

Կուսշարքերի համալրման ընտրությունը առաջին հերթին աշխատավորության շրջանում տարվող կազմակերպչական և քաղաքական-դաստիարակչական աշխատանք է: Ահա թե ինչու կուսկազմակերպությունները պետք է դրսևորեն բարձր պահանջկոտություն համալրման որակի համար, անխոնջ կերպով պայքարեն ՍՄԿԿ շարքերի անաղարտության, նրա ամրապնդման, ժողովրդի շրջանում նրա հեղինակության բարձրացման համար: Կուսակցական կազմակերպությունների պարտքն է հանգամանորեն և համակողմանիորեն ստուգել ՍՄԿԿ մեջ յուրաքանչյուր ընդունվողի, նրա մասին դատել ոչ թե խոսքով, այլ, առաջին հերթին, նրա գործերով, արտադրությունում և հասարակական կյանքում ունեցած տեղով ու դերով: Հարկավոր է մշտապես հիշել, որ կուսակցության մեջ կոմունիստի բարձր կոչմանը ոչ արժանի մարդկանց ընդունելու նույնիսկ եզակի փաստերը վնասում են կուսակցությանը, հարվածում կուսկազմակերպությունների հեղինակությանն ու մարտունակությանը: Ավելի վարկաբեկիչ է դատվածներին կուսակցության մեջ վերականգնելու պրակտիկան: Այդպիսի փաստեր հանրապետությունում շատ քիչ են, բայց կան (օրինակ, Աբովյանի շրջանում): Ցավոք, պրակտիկայում դեռևս քիչ չեն դեպքերը, երբ ընդունում են յուրաքանչյուր դիմողի: 1986 թ. ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունելիս մերժել են ընդամենը 12 մարդու: Իսկ ՍՄԿԿ անդամության թեկնածությունից հեռացվել ու դուրս է մնացել 63 մարդ, որոնց թվում քիչ չեն և քրեական հանցանք գործածները: Նման փաստեր կան Ամասիայի, Արթիկի, Գուգարքի, Թումանյանի շրջաններում: Կուսկազմակերպությունների հետ կապերը խզելու և կուսակցական անդամավճարները չմուծելու պատճառով ՍՄԿԿ անդամության թեկնածությունից հեռացվել են Ս. Բարոյանը Կալինինոյի շրջանից, Վ. Վարդանյանը՝ Նոյեմբերյանի, Վ. Հակոբյանը՝ Արագածի շրջանից և ուրիշներ:

Կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին անհրաժեշտ է յուրաքանչյուր նման փաստ դիտել որպես արտասովոր դեպք, խստորեն պատասխան պահանջել այն ընկերներից, որոնք երաշխավորել են ընդունվողին: Այնինչ կուսակցության մի քանի շրջկոմներ անհրաժեշտ պահանջկոտություն չեն ցուցաբերում թեկնածուական ստաժի անցկացման ժամանակաշրջանում երաշխավորվողների հետ աշխատանք տանելու համար երաշխավորողների պատասխանատվությունը բարձրացնելու նկատմամբ: Նրանք ոչ միշտ են սկզբունքայնություն դրսևորում կուսակցությունից հեռացված անձանց երաշխավորություն տալու համար անձնական գործեր քննարկելիս: Կան նաև երաշխավորողների հաշվետվությունները լսելու ձևական մոտեցման փաստեր:

Հարկավոր է որակական նոր մակարդակի բարձրացնել երաշխավորողների հետ տարվող աշխատանքը, հասնել կանոնադրական այն պահանջների անվերապահ կատարմանը, որոնց համաձայն նրանք պատասխանատվություն են կրում կուսակցական կազմակերպությունների առաջ երաշխավորվողների գործնական և բարոյական հատկանիշների օբյեկտիվ բնութագրման համար, օգնում են նրանց գաղափարաքաղաքական աճին:

Կուսակցական աշխատանքի պրակտիկան ցույց է տալիս, որ ՍՄԿԿ շարքերը առանձին ընդունվողներ դրսևորում են անազնվություն, լրիվ չեն նշում իրենց կենսագրական տվյալները, իսկ կուսակցական կազմակերպությունները խորությամբ չեն մոտենում այդ հարցերին: Այդպիսի փաստեր եղել են Արագածի, Հոկտեմբերյանի, Անիի շրջանային կուսակցական կազմակերպություններում: Արմատախիլ չի արվել նաև այն պրակտիկան, երբ ՍՄԿԿ անդամության թեկնածուն մինչև թեկնածուական ստաժի լրանալը մի կազմակերպությունից տեղափոխվում է մեկ ուրիշը, իսկ հաճախ էլ՝ երրորդը: 1987 թ. հունվարի 1-ի դրությամբ հանրապետության կուսակցական կազմակերպություններում ՍՄԿԿ անդամության թեկնածուների 5,3 տոկոսն ուներ ժամկետանց ստաժ: Այդ առումով գործերն անբարեհաջող են Ախուրյանի, Նաիրիի, Թալինի շրջանային կուսակցական կազմակերպություններում: Այս կապակցությամբ հարկ է նշել, որ ոչ ամենուրեք են օպերատիվորեն և պատշաճ ձևով լուծում սովետական բանակից զորացրված ՍՄԿԿ անդամության թեկնածուներին աշխատանքում տեղավորելու և կուսկազմակերպություններում հաշվառման վերցնելու հարցերը: 1987 թ. հունվարի 1-ի դրությամբ հանրապետությունում կային չաշխատող 464 կոմունիստներ: Նրանց թիվը շատ է Կալինինոյի, Մարտունու, Նաիրիի, Թումանյանի շրջաններում: Կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների պարտքն է հիմնովին բացառել նման փաստերը, երբ այս կամ այն պատճառով կոմունիստը չի աշխատում:

Ներկուսակցական աշխատանքում կարևոր նշանակություն ունի կուսակցական փաստաթղթերի պահպանությունը: Սակայն այս գործում կան լուրջ թերություններ: Կուստոմսերի և թեկնածուական քարտերի պահպանության նկատմամբ ցույց տրվող անփույթ վերաբերմունքի հետևանքով 1973 թ. ապրիլի 1-ից մինչև 1987 թ. հունվարի 1-ը կորել է 1.468 տոմս և 148 քարտ: Միայն 1986 թ. այդ փաստաթղթերը կորցրել են 92 ՍՄԿԿ անդամ և 3 անդամության թեկնածու: Անցած տարի կուսակցական փաստաթղթերը կորցնելու համար ՍՄԿԿ շարքերից հեռացվել են 14 անդամ և 5 անդամության թեկնածու: Այս հարցում այսուհետ ևս հարկավոր է խիստ մոտեցում դրսևորել:

Կուսակցության շարքերն ընդունելու համար մարդկանց ընտրությունը, նոր կուսակցական համալրման հետ տարվող աշխատանքը կարևոր խնդիրներ են: Դրանց ճիշտ լուծման համար պահանջվում է խորապես մտածված մոտեցում: Առաջադրված նպատակների հաջողությանը կնպաստի հանրապետության կուսակցական կոմիտեներում, սկզբնական կազմակերպություններում իրականացվող կուսակցական աշխատանքի ոճի, ձևերի ու մեթոդների արմատական վերակառուցումը, աշխատանք, որի կարևոր բաղադրատարրն են կուսակցական շարքերի բուռ ամենայն ամրապնդումը, արտադրության բոլոր տեղամասերում, հասարակական կյանքի բոլոր ոլորտներում կուսակցական ազդեցության ուժեղացումը:

---



# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ԵՎ ԱՇԽԱՏԱՏԵՂԵՐԻ ՀԱՇՎԵԿՇՌՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ

**Հ. ԶԱՔԱՐՅԱՆ**
**Տնտեսագիտության թեկնածու, դոցենտ**

**ԵՐԿՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ** արագացումն առաջին հերթին պայմանավորված է մասսաների կենդանի ստեղծագործությամբ, հասարակության կյանքի բոլոր կողմերի վերափոխմանը նրանց շահագրգիռ մասնակցությամբ:

Մեզ մոտ լիովին բավարարվում է աշխատանքի նկատմամբ բնակչության պահանջմունքը. գործնականում հասարակության բոլոր աշխատունակ անդամներն աշխատում կամ սովորում են: Իսկ ռացիոնալ զբաղվածության ապահովումը պլանային սոցիալիստական տնտեսավարման պայմաններում ենթադրում է ժողովրդական տնտեսության բոլոր ոլորտներում ու ճյուղերում աշխատանքային ռեսուրսների աճի և աշխատատեղերի ավելացման միջև անհրաժեշտ հաշվեկշռվածություն: Սոցիալիզմի օրոք կուտակման բարձր մակարդակը, որ ձեռք է բերվում արտադրության արագ աճի հաշվին, կանխորոշում է աշխատանքային նորանոր տեղերի ստեղծման և բնակչության զբաղվածության հարաբերական աճի լայն հնարավորություն:

Լրիվ զբաղվածության տնտեսական օրենքի պահանջներն առավել հստակ են դրսևորվում առկա աշխատանքային ռեսուրսների և եղած աշխատատեղերի անհրաժեշտ համապատասխանության մեջ: Սակայն լրիվ զբաղվածության ապահովումը ենթադրում է նաև աշխատանքի նկատմամբ մարդկանց նյութական ու բարոյական շահագրգռվածություն, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության որոշակի պայմանների առկայություն, աշխատուժի ընդլայնված վերարտադրության ապահովում, աշխատանքային ռեսուրսների որակի ու կառուցվածքի, դրանց տերիտորիալ տեղաբաշխվածության համեմատ աշխատատեղերի հատկացում և այլն: Սակայն այդ բոլոր պայմանների պահպանումը, առկա աշխատանքային ռեսուրսների և աշխատատեղերի միջև համապատասխանության բացակայության դեպքում, դարձյալ չի ապահովվի լրիվ զբաղվածություն: Դա նշանակում է, որ աշխատատեղերի (հերթափոխության գործակիցը հաշվի առնելով) քանակը աշխատանքային ռեսուրսներից քիչ չպետք է լինի, բայց միևնույն ժամանակ աշխատատեղերն էլ ռեսուրսներից ավելի չպետք է լինեն, այլապես արտադրության միջոցների մի մասը լրիվ չի օգտագործվի:

Այսպիսով, սոցիալիստական արտադրահարաբերությունների համակարգում հասարակության աշխատունակ անդամներին աշխատատեղերով ապահովելը հասարակական արտադրության պլանաչափ զարգացման գլխավոր խնդիրներից մեկն է: Տերիտորիալ պրոբլեմների թվում, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, կարևորներից մեկը արտադրության տեղաբաշխման ավելի սերտ շաղկապումն է աշխատանքային ու նյութական ռեսուրսների առկայության հետ:

Աշխատանքային ռեսուրսների և աշխատատեղերի թվի միջև համապատասխանության պահպանումը կապիտալ ներդրումների, հիմնական ֆոնդերի և նոր տեխնիկայի արդյունավետության բարձրացման, սոցիալ-քաղաքական հրատապ խնդիրների իրականացման տնտեսական հիմքն է:

Աշխատանքային ռեսուրսների և աշխատատեղերի որակական հավասարակշռվածության կարևոր պայման է վերջիններիս ատեստավորումը, որի ընթացքում վերլուծվում են աշխատատեղի տեխնիկական, տնտեսական, սանիտարահիգիենիկ, էսթետի-

Աշխատանքային ռեսուրսների հետ աշխատատեղերի համապատասխանության պրոբլեմը առաջին հերթին ծագում է հիմնական արտադրական ֆոնդերի վերարտադրության ոլորտում: Այդ խնդիրը շատ կարևոր է Հայաստանի համար, որը երկրի՝ աշխատուժով ապահովված շրջաններից մեկն է: 1985 թ. մեր հանրապետությունում մեկ քառակուսի կիլոմետրի վրա ապրում էր 111,3 մարդ: Հայկական ՍՍՀ-ում առավելապես բնակեցված է Արարատյան հարթավայրի տնտեսական շրջանը, որտեղ բնակչության միջին խտությունը կազմում է մոտ 159 մարդ: Անհամաչափ է բնակչության աճը հանրապետության տարբեր տիպի բնակավայրերում:

Աշխատանքային ռեսուրսների փաստացի պակասը երկրի մի շարք ռեգիոններում ու դրանց որոշ ավելցուկը միջինասիական հանրապետություններում, Անդրկովկասում, այդ թվում և Հայաստանում, արտադրողական ուժերի զարգացման մակարդակի, վարչատերիտորիալ մասշտաբների, արտադրության ճյուղային կառուցվածքի, զբաղվածների թվակազմի, բնակչության բնական վերարտադրության տեմպերի արտացոլումն էր: Այդ առանձնահատկությունները համապատասխան գնահատում են պահանջում տեսական եզրակացություններ ձևակերպելիս և գործնական որոշումներ կայացնելիս:

Բնական է, որ աշխատատեղերի վերարտադրության պրոցեսում երկրի զանազան ռեգիոնների համար տարբերակված մոտեցում է պահանջվում անձնական և իրային գործոնները համապատասխանեցնելիս: Չէ որ ռեգիոնալ առանձնահատկություններ կան ինչպես հիմնական ֆոնդերի վերարտադրության և օգտագործման, այնպես էլ աշխատանքային ռեսուրսների ձևավորման մեջ: Բայց ոչ միշտ է, որ աշխատանքի արտադրողականության աճը և ֆոնդահատույցը պետք է կապել ֆոնդազինվածության բարձրացման հետ: Այստեղ արտադրության բարձր արդյունքների կարող է հասնել նաև աշխատանքի ֆոնդազինվածության աճի համեմատաբար ցածր և նույնիսկ ցածրացող տեմպերի դեպքում: Դա տեղի է ունենում ի հաշիվ հնացած արտադրամիջոցների արդյունավետ նորացման՝ աշխատատեղերի թվի ընդհանուր կրճատմամբ և գործող ավելի արտադրողական սարքավորման հերթափոխության գործակցի բարձրացմամբ հանդերձ, որը լրացուցիչ կապիտալ ներդրումներ չի պահանջում հիմնական ֆոնդերի պասսիվ մասի և արտադրական ինֆրակառուցվածքի զարգացման համար:

Եթե երկրում ընդհանուր առմամբ աշխատանքային ռեսուրսների անբավարարության պատճառով որոշակի անհամամասնություն գոյություն ունի հիմնական ֆոնդերի և աշխատանքային ռեսուրսների ձևավորման մեջ, ապա Հայկական ՍՍՀ-ում հեռանկարում սպասվում է բարձր որակավորման աշխատուժ պահանջող արտադրությունների ընդլայնում:

Այլ կերպ ասած՝ ներգրավվող լրացուցիչ աշխատանքային ռեսուրսներն իրենց որակական կազմով մեծապես կտարբերվեն արդեն զբաղվածներից և դուրս կմղեն նվազ որակավորմամբ աշխատանքի տեղերն ավանդական արտադրություններից: Աշխատող ձեռքերի ավելցուկի հետ միասին հանրապետությունում քիչ չեն ինչպես բարձր, այնպես էլ ցածր որակավորման աշխատանքային ազատ տեղերը: Աշխատանքային ռեսուրսների ապահովվածության պայմաններում էլ Հայաստանի քաղաքների շատ ձեռնարկություններ դեռ շարունակում են հանրապետության սահմաններից դուրս աշխատուժ հայթայթելու պրակտիկան: Դա առկա ժողովրդագրական վիճակը ոչ բավականաչափ լրիվ հաշվի առնելու, մասնագիտական կողմնորոշման և հիմնական ֆոնդերի ու աշխատանքային տեղերի վերարտադրության ցուցանիշների պլանավորման աշխատանքը վատ կազմակերպելու հետևանք է: Ստեղծված վիճակը շտկելու համար հարկավոր է ամեն կերպ կատարելագործել հասարակական արտադրության մեջ աշխատանքային ռեսուրսների ազատ ավելցուկների ներգրավման և բարձր որակավորում ունեցող կադրերի պատրաստման ձևերն ու մեթոդները: Ընդ որում դա պետք է արվի տեղական բնակչության հաշվին: Աշխատանքային ռեսուրսների ազատ ավելցուկով հարուստ վայրերում խոշոր ձեռնարկությունների մասնաճյուղեր և արտադրամասեր կառուցելու՝ մեր հանրապետությունում կուտակված փորձը վկայում է արտադրողական ուժերի զարգացման այդ ձևի առաջադիմական ու արդյունավետ լինելու մասին: Արդյունաբերական նման ստորաբաժանումները, որպես կանոն, լավ են ապահովված աշխատուժով: Այստեղ հիմնական ֆոնդերի ձևավորման կապիտալ ծախսերը և կադրերի հոսունությունը նկատելիորեն ցածր են, քան խոշոր ձեռնարկություններում: Իհարկե, կան և բացասական մոմենտներ: Այդ մասնաճյուղերի ցանցի ընդլայնումը որոշ չափով կասեցնում է արդյունաբերության մեջ արտադրողականության աճը՝ գլխամասային ձեռնարկության համեմատությամբ տեխնիկական զին-



վածության, արտադրության կազմակերպման և բանվորների որակավորման ցածր մակարդակի պատճառով:

Աշխատանքային ռեսուրսների հետ աշխատատեղերի հաշվեկշռվածության հասնելու մեկ այլ կարևոր միջոց է աշխատանքային ռեսուրսների ձևավորման տերիտորիալ առանձնահատկությունների հաշվառումը արդյունաբերական արտադրության և արտադրական կարողությունների զարգացման ճյուղային պլանները կազմելիս: Առանց տերիտորիալ մոտեցման՝ աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման պրոբլեմը չի կարող լուծվել: Որպես կանոն, արտադրանքի թողարկման աճի պլանավորվող տեմպերը առաջ են անցնում աշխատանքի արտադրողականության բարձրացման իրական հնարավորություններից, քանի որ ենթադրվում է գիտատեխնիկական առաջադիմության (արտադրական կարողությունների զարգացման) և ռեգիոնում աշխատանքային ռեսուրսների թվակազմի իրական աճի միջոցառումների կենսագործում: Օրինակ, Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների համար մինիստրությունների ու գերատեսչությունների՝ բանվորների և ծառայողների պլանավորած թվակազմը 1983—1985 թթ. սպասվելիք աճը գերազանցել է:

Ահա թե ինչու հաճախ հարկ է եղել աշխատանքի ներգրավել աշխատուժի լրացուցիչ կոնտինգենտներ, որը և խոչընդոտել է խոշոր քաղաքների աճը սահմանափակելուն, էապես դժվարացրել է սոցիալական խնդիրների լուծումը: Այսպես, Երևանի տնտեսական և սոցիալական զարգացման գլխավոր պլանով, բնակչության մինչև 1984 թ. նախատեսված աճը գերազանցվել է արդեն 1975 թվականին: Այստեղ, ինչպես նաև Լենինականում և Կիրովականում բնակչության թվի հետագա մեխանիկական աճը ներկայումս խստիվ սահմանափակված է:

Աշխատանքային ռեսուրսների հաշվեկշռված օգտագործման ապահովումը կապված է աշխատատեղերի վերարտադրության համալիր կարգավորման հետ: Ուստի նոր աշխատատեղեր ստեղծելիս անհրաժեշտ է վճռականորեն հաղթահարել տեխնիկական հետամնացությունը, ստեղծել ու ներդնել առավել արդիական սարքավորումների նոր տեսակներ, բարելավել աշխատանքի պայմանները, իրագործել սոցիալ-տնտեսական լայն միջոցառումներ: Միայն աշխատատեղերի հաշվառումն ու պլանավորումը ինքնին անկարող են բարելավել կապիտալ ներդրումների և հիմնական արտադրական ֆոնդերի օգտագործումը: Այդ նպատակով անհրաժեշտ է կատարելագործել նաև դրանց պլանավորման մեթոդները, մշակել վերահսկման ու խթանման միջոցառումների գործուն համակարգ: Արդյունաբերության զանազան ճյուղերում թափուր աշխատատեղերի առկայությունը հետևանք է աշխատանքային ռեսուրսների ճյուղային և տերիտորիալ վերարտադրության պլանավորման գործում եղած անհամաձայնեցվածության, ինչն էլ հենց հանգեցնում է հիմնական ֆոնդերի սառեցման, կապիտալ ներդրումների արդյունավետության իջեցման, արտադրության մյուս ցուցանիշների վատթարացման:

Զբաղվածության բնագավառում հաշվեկշռվածության հասնելու լավագույն միջոցներից է շչոկինյան մեթոդի լայն կիրառությունը: Այն վաղուց է փորձարկվել և գործնականում ապացուցել, որ փոքրաթիվ անձնակազմով կարելի է որոշակի հաջողությունների հասնել աշխատանքի արտադրողականության աճն արագացնելու գործում:

Այդ մեթոդին անցած ձեռնարկությունների աշխատանքի փորձը համոզիչ կերպով վկայում է նաև ընդունվող պարտավորությունների մոբիլիզացնող բնույթի մասին, որոնք կազմակերպող սկզբունք են արտադրության արդյունավետության բարձրացման ռեզերվներն օգտագործելու, անձնակազմի թիվը կրճատելու ուղղությամբ միջոցառումներ իրագործելու, աշխատանքի արտադրողականության աճն արագացնելու հաշվով պլանաչափ աշխատանք ծավալելու համար: Օրինակ, Երևանի ալրաղաց կոմբինատին իրավունք տրվեց 1977 թվականից աշխատել այդ մեթոդով: Ձեռնարկության կոլեկտիվը պարտավորվեց այդ ընթացքում ազատել 12 մարդ, բայց փաստորեն ազատեց 24՝ աշխատավարձի ֆոնդի 21,6 հազար ռուբլու տարեկան տնտեսմամբ: Իբրև արդյունք՝ աշխատանքի արտադրողականության աճի հնգամյա պլանը կատարվեց 104 տոկոսով: Նոր մեթոդով աշխատանքը դրականորեն ազդեց նաև կադրերի ամրացման (հոսունությունը կրճատվեց 40 տոկոսով) և աշխատանքային կարգապահության բարձրացման վրա: Աշխատանքի վարձատրության նոր պայմանների կիրառման, նյութական խթանման լավագույն ձևերի ներդրման հիման վրա

ձեռնարկությունում պարտավորություն են ստանձնել տասներկուերորդ հնգամյակում կրճատել լրացուցիչ աշխատատեղեր:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հանրապետությունում նոր աշխատատեղերի ստեղծման տեմպերը բարձր են աշխատանքային ռեսուրսների աճի տեմպերից: Դեռևս զգալի չափերի են հասնում ագրոարդյունաբերական համալիրից աշխատանքային ռեսուրսների անկազմակերպ միգրացիան դեպի ժողովրդական տնտեսության ուրիշ ոլորտներ: Այլ պատճառների թվում այդ հանգամանքը պայմանավորված է քաղաքներում և արդյունաբերական կենտրոններում աշխատանքային ռեսուրսներով չապահովված զգալի քանակությամբ թափուր աշխատատեղերի առկայությամբ: Ներկայումս միայն արդյունաբերության մեջ հաշվվում են հարյուր հազարավոր չզբաղեցված տեղեր: Եվ դա սարքավորումների մեկհերթ աշխատանքի պայմաններում: 1,7 հերթափոխի դեպքում թափուր աշխատատեղերի թիվը կանցնի 4 միլիոնից: Դրանց ստեղծման վրա ծախսվել են միլիարդավոր ռուբլիներ: Փաստորեն գործող ձեռնարկություններում օգտագործվում է հին սարքավորումը, իսկ նորերն աշխատեցնող չկա:

Աշխատանքային ռեսուրսների պակասը ագրոարդյունաբերական համալիրի ճյուղերում հասցնում է կապիտալ ներդրումների արդյունավետության նվազման, հիմնական արտադրական ֆոնդերի ոչ ռացիոնալ օգտագործման, կադրերի հոսունության, գյուղատնտեսական արտադրությանը քաղաքներից ու արդյունաբերական կենտրոններից աշխատուժով օգնելու անհրաժեշտության և այլ բացասական հետևանքների:

Աշխատատեղերի և աշխատանքային ռեսուրսների հաշվեկշռվածությունը շինարարական արտադրության մեջ ևս թույլ է տալիս կրճատել և օպտիմալ չափերի հասցնել միաժամանակ կառուցվող օբյեկտների թիվը, արագացնել շինարարության տեմպերը:

Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերում աշխատատեղերի և աշխատանքային ռեսուրսների որակական և քանակական հաշվեկշռվածությունը, մարդկային գործոնի դերի բարձրացման ու երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու պայմաններում, մեր բոլոր պրոբլեմների լուծման բանալին է:

---

# ԱՎԵԼԱՑՆԵԼ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԻՐԱՑՈՒՄԸ

**Վ. ԱՍՏՎԱԾԱՏՈՒՐՈՎ**
**Տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր**

**ՎԵՐՋԻՆ ՏԱՐԻՆԵՐՍ** կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը իրականացրին գյուղատնտեսական արտադրության և ամբողջ ագրոարդյունաբերական համալիրի հետագա վերելքին ուղղված մի շարք միջոցառումներ, որոնց շնորհիվ երկրում զգալիորեն ավելացավ գյուղատնտեսության համախառն ու ապրանքային արտադրանքը: Դրա հետ մեկտեղ դեռևս առկա են բնակչությանը մթերքներ մատակարարելու դժվարություններ: Այդ պրոբլեմի արմատական լուծման համար իրականացվում է պարենային ծրագիրը, որի նպատակն է հնարավորին չափ առավել սեղմ ժամկետներում երկրի բնակչությանն ապահովել բոլոր տեսակի մթերքներով, էապես բարելավել սննդի կառուցվածքն առավել արժեքավոր մթերքների հաշվին, ինչպես նաև արդյունաբերությունն ապահովել գյուղատնտեսական հումքով: Պարենային ծրագրի իրականացման հիմքն են կազմում ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի էական վերելքն ու արդյունավետության բարձրացումը:

Հանրապետության գյուղատնտեսությունը վերջին ժամանակներս հողագործության և անասնապահական մթերքների արտադրության ու վաճառքի մեծացման շնորհիվ զգալի չափով բարելավվել է բնակչությանը սննդամթերք մատակարարելու գործը: Այսպես, 1985 թվականին 1970 թ. համեմատությամբ մսի և մսամթերքների սպառումն ավելացել է 46 տոկոսով, կաթինն ու կաթնամթերքներինը՝ 30, ձվինը՝ 59, բանջարեղենինն ու բոստանային կուլտուրաներինը՝ 31 տոկոսով: Որոշ չափով կրճատվել է մեկ շնչին ընկնող հացի սպառումը, որը պայմանավորված է սննդի կառուցվածքի բարելավմամբ, բնակչության կողմից անասնապահական բարձրորակ մթերքների սպառման ավելացմամբ: Այսօրվա դրությամբ սովետական մարդու սննդի օրաբաժինը, ըստ կալորիականության ընդհանուր մակարդակի, համապատասխանում է ֆիզիոլոգիական նորմաներին, սակայն առանձին մթերքների գծով այն ցածր է սահմանված նորմաներից:

ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումներով երկրի ագրոարդյունաբերական համալիրի առջև մեծ և պատասխանատու խնդիրներ են դրված: Համագումարում Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ «ագրարային սեկտորում հարկավոր է վճռական բեկում, որպեսզի արդեն տասներկուերորդ հնգամյակում նկատելիորեն բարելավվի պարենային մատակարարումը: Նախատեսվում է ավելի քան կրկնապատկել գյուղատնտեսական արտադրության աճի տեմպերը...» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** «Հայաստան» հրատ., 1986, էջ 42):

Հայկական ՍՍՀՄ-ում գյուղատնտեսության համախառն արտադրանքի միջին տարեկան ծավալը ընթացիկ հնգամյակում կաճի 12,1 տոկոսով: 1990 թվականին գյուղատնտեսությունը պետք է ապահովի մինչև 330 հազար տոննա հացահատիկի արտադրությունը, բանջարեղենինը՝ մինչև 500 հազար, մսինը (սպանդանոցային քաշով)՝ 130 հազար, կաթինը՝ 625 հազար տոննա, ձվինը՝ 680 մլն հատ: Այդ ժամանակահատվածում զգալիորեն կավելանան հողագործության և անասնապահության







իրացված մթերքների ծավալները: Այս ամենը դրանց սպառումը պետք է մոտեցնի գիտականորեն հիմնավորված նորմաներին, իսկ որոշ մթերքների գծով՝ ապահովի դրանք:

Հետևաբար, կոլեկտիվ և պետական տնտեսությունները, ագրոարդյունաբերական համալիրի ձեռնարկություններն ու կազմակերպությունները կոչված են օգտագործելու արտադրության բոլոր հնարավորություններն ու ռեզերվները, որպեսզի հաջողությամբ կատարեն, նույնիսկ գերակատարեն գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետությանը վաճառելու պլանները: Իսկ այդ ամենը կատարելու ի զորու են հանրապետության աշխատավորները, ինչը վկայում է առաջավոր շրջանների ու տնտեսությունների փորձը: Օրինակ, 1986 թվականին հանրապետությունում հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը մեկ հեկտարից կազմել է 24 ցենտներ, իսկ Արարատյան հարթավայրի առաջավոր տնտեսություններում այդ մակարդակը գերազանցվել է 10—20 ցենտներով:

Նման պատկեր կարելի է դիտել նաև բանջարաբուծությունում. բանջարանոցային կուլտուրաների միջին բերքատվությունը հանրապետությունում կազմել է 266, իսկ առաջավոր բրիգադներում և տնտեսություններում՝ 400—600 ցենտներ: Նույնը կարելի է ասել անասնապահության մթերատվության մասին: Եթե տասը տարի առաջ պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունների միջին քաշը կազմել է 264 կիլոգրամ, ապա 1986 թ.՝ 329, իսկ առանձին տնտեսություններում հասնում էր 350—400 կիլոգրամի:

Վերջին տարիներս էականորեն բարձրացավ կովերի մթերատվությունը: Այսպես, 1985 թվականին, 1975 թ. համեմատությամբ, մեկ կովի միջին տարեկան կիթը աճեց 25 տոկոսով և կազմեց 2.130 կիլոգրամ: Բայց անասունների մթերատվության մակարդակներում դիտվում է մեծ խայտաբղետություն: Հանրապետության տնտեսությունների մեկ հինգերորդում կաթի միջին տարեկան կիթը մեկ կովից չի անցնում 1.650 կիլոգրամից, մինչդեռ տնտեսությունների մեկ տասներորդում ստանում են 2—2,5 անգամ ավելի: Ինչպես տեսնում ենք, կաթի արտադրության ռեզերվները մեծ են: Հաշված է, որ եթե յուրաքանչյուր կովի միջին տարեկան կաթնատվությունը բարձրացվի գեթ 200 կիլոգրամով, ապա լրացուցիչ կստացվի ավելի քան 34 հազար տոննա ապրանքային կաթ կամ 13 **մլն** ռուբլի: Առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ անասնաբուժական, տնտեսական և կազմակերպչական միջոցառումների համալիրը ճիշտ իրագործելու դեպքում կարելի է ապահովել կովերի մթերատվության էական աճ:

Լայն հնարավորություններ կան գյուղատնտեսական մթերքների պետական գնումների ծավալի մեծացման ասպարեզում: Այսպես, օրինակ, տարեցտարի հանրապետության տասնյակ կոլեկտիվ, պետական ու այլ տնտեսություններ չեն կատարում մսի և կաթի մթերման պլանները: Եթե միայն անցած տարի հանրապետության բոլոր տնտեսությունները պետվաճառքի պլանները կատարեին, ապա հանրային պաշարները կավելանային լրացուցիչ 75 հազար ցենտներ մսով և 113 հազար ցենտներ կաթով: Այսպիսի ռեզերվների առկայությունը վկայում է, որ հողագործության և անասնապահության որակական ցուցանիշների բարելավման հաշվին հնարավոր է զգալիորեն ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ու վաճառքը:

Մթերքների արտադրության ավելացման և բնակչության մատակարարման բարելավման գործում տնտեսությունների շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով, ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «Երկրի ագրոարդյունաբերական համալիրում տնտեսավարման տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման մասին» որոշման համապատասխան, միութենական և հանրապետական ֆոնդերի գծով մատակարարումների պլանները կատարելուց հետո, տեղական մարմինների տնօրինության տակ են մնում մսի, կաթի և մյուս մթերքների պաշարները:

Այդ նույն նպատակով կոլեկտիվ և պետական տնտեսություններն իրավունք ունեն սպառկոոպի կազմակերպություններին և կոլտնտեսային շուկաներում վաճառելու, մթերումների պլանի կատարման դեպքում, պլանային ծավալի մինչև 30 տոկոսի չափով կարտոֆիլ, բանջարեղեն և այլ բուսաբուծական մթերքներ, ինչպես նաև պլանից դուրս արտադրանքը:

Պտուղբանջարեղենի արտադրանքի իրացման նոր կարգն արդեն առաջին տարում ցույց տվեց իր արդյունավետությունը, որի մասին են վկայում Մոսկվայում, Լենինգրադում, երկրի մյուս քաղաքներում ու արդյունաբերական կենտրոններում



կազմակերպված բանջարեղենի ու մրգի տոնավաճառները, որոնք բնակչությանը հնարավորություն ընձեռեցին ձեռք բերելու բարձր որակի թարմ բանջարեղեն ու մրգեր, նպաստեցին կոլտնտեսային շուկաներում այդ մթերքների գների իջեցմանը, արտադրանքի կորուստների կրճատմանը, տնտեսությունների եկամուտների աճին:

Նախատեսվում է պլանավորման նոր մեթոդների լայն ներդրում, որի համաձայն այն պետք է իրականացվի գյուղատնտեսական մթերքների մթերումների վերաբերյալ սահմանված կարգով իջեցված կոնտրոլ թվերի հիման վրա: Իրականացվում է անցում գյուղատնտեսական արտադրանքի, մթերումների ծավալների, ինչպես նաև արտադրամիջոցների (հաշվի առնելով հողի տնտեսական գնահատումը) պլանավորման նորմատիվային մեթոդի:

Գյուղատնտեսության զարգացման հետագա խթանման նպատակով 1983 թվականից նորից բարձրացվեցին բուսաբուծության և անասնաբուծության մի շարք մթերքների մթերման գները, սահմանվեցին վատթար պայմաններում, վնասով աշխատող և ցածր շահութաբեր տնտեսություններում արտադրվող մթերքների գների հավելումներ: Այս և ձեռք առնված այլ միջոցների շնորհիվ զգալիորեն ավելացան տնտեսությունների եկամուտները: Բավական է ասել, որ միայն առաջին տարում հանրապետության գյուղատնտեսական ձեռնարկությունների եկամուտները գերազանցեցին 120 **մլն** ռուբլին՝ նախորդ տարվա 57 **մլն** ռուբլու դիմաց:

Չնայած դրան, անասնապահական մի շարք մթերքների արտադրությունն ու վաճառքը պետությանը շարունակում են մնալ վնասաբեր: Նույնիսկ մթերման գները զգալիորեն բարձրացնելու պայմաններում դա վկայում է, որ գնային գործոնների ազդեցությունը դեռևս բավարար չափով արդյունավետ չէ շահութաբերության վրա ազդող մյուս գործոնների համեմատ: Այս պայմաններում արտադրանքի ինքնարժեքի ցածրացման կամ կայունացման հարցերը ձեռք են բերում առաջնակարգ նշանակություն:

Անասնապահության արտադրանքի ինքնարժեքի բարձրացման հիմնական պատճառը աշխատանքի վարձատրության և նրա արտադրողականության աճի միջև տնտեսական հարաբերակցության խախտումն է: Մեծ դեր է խաղում նաև կերերի արժեքի աճը: Այստեղ կարևոր նշանակություն ունի տնտհաշվարկի և սրա հիման վրա կոլեկտիվ կապալի կիրառումը, որը աշխատանքի վարձատրությունը համաձայնեցնում է արտադրության վերջնական արդյունքի հետ:

Կապալային կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի աշխատանքի վարձատրության պայմանավորվածությունը վերջնական արդյունքով հանգեցնում է նրան, որ տնտեսություններում ամրապնդվում է կարգապահությունը, բարելավվում արտադրության կուլտուրան, ավելի խելամիտ կերպով են օգտագործվում կերերը: Կապալի ներդրումը հատուկ նշանակություն ունի լեռնային և նախալեռնային շրջանների համար, քանի որ այդ շրջաններում գտնվող տնտեսությունների ֆերմաներում կադրերի խիստ պակաս է զգացվում, իսկ հողային մակերեսների սահմանափակվածությունը պահանջում է կերերն օգտագործել խնայողաբար ու սրտացավորեն, խստիվ պահպանել դրանց պատրաստման տեխնոլոգիան, առավել որակով կատարել բոլոր արտադրական աշխատանքները: Սակայն, չնայած նրա ակնհայտ առավելությանը և 1986 թ. արդեն կատարված զգալի աշխատանքին, այդ առաջադեմ մեթոդը դեռևս անբավարար ակտիվությամբ է ներդրվում հանրապետության անասնապահության մեջ:

ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թ. «Գյուղատնտեսության մեջ նրա կազմակերպման խելացի ձևերի և տնտհաշվարկի ներդրման հիման վրա աշխատանքի արտադրողականության բարձրացման անհետաձգելի միջոցառումների մասին» որոշմամբ շեշտվում է, որ բազմաթիվ կոլեկտիվ ու պետական տնտեսություններում տնտհաշվարկն ու կոլեկտիվ կապալը, արդեն այժմ ապահովելով մեխանիզատորների, անասնապահների և մյուս աշխատողների անձնական բարձր շահագրգռվածությունը իրենց աշխատանքի արդյունքի նկատմամբ, մեծ չափով ազդում են հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման վրա:

ՍՄԿԿ XXVII համագումարում հատուկ շեշտվեց գյուղատնտեսական արտադրանքի պահպանման և ամենանվազ կորուստներով այն սպառողին հասցնելու կարևորությունը: Հաշված է, որ լրիվ հասունացած հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը տասն օրով ուշացնելը հանգեցնում է բերքի մինչև 22 տոկոսի կորստին: Բերքահավաքի, տեղափոխման, մթերման և հատկապես պահպանման փուլերում զգալի է կարտոֆիլի, բանջարեղենի և մրգերի կորուստը, որը երբեմն հասնում է դրանց համախառն բերքահավաքի 25 տոկոսին: Ուստի կորուստների դեմ

պայքարը գյուղատնտեսության կարևոր ռեզերվներից մեկն է և պարզ է, որ արդեն
արտադրվածը պահպանելու համար զգալիորեն քիչ ջանք ու միջոց է հարկավոր,
քան նրա արտադրության համար: Կորուստները նվազեցնելու և սպառողին մատա-
կարարվող արտադրանքի որակը բարձրացնելու գործում կարևոր դեր է պատկանում
մթերումների այնպիսի արդյունավետ ձևերի ներդրմանը, ինչպիսիք են արտադրող-
ների և սպառողների ուղղակի կապերը և անմիջականորեն տեղերում արտադրանքի
ընդունումը, դրա տեղափոխումը մթերող կազմակերպությունների տրանսպորտով:
Կոլեկտիվ և պետական տնտեսությունների ուղղակի կապերը արդյունաբերական
ձեռնարկությունների և առևտրական կազմակերպությունների հետ թույլ են տալիս
շեշտակիորեն իջեցնելու շրջանառության ծախսերը, կրճատելու արդյունաբերական
ձեռնարկություններ և առևտրական ցանց մթերքների և հումքի տեղափոխման ժամ-
կետները: Դա թույլ չի տալիս գյուղատնտեսական արտադրանքի և, հատկապես
շուտ փչացող մթերքների, որակի վատթարացում:
Հանրապետությունում մթերումների այդ առաջադեմ եղանակն իրականացվում
է ուշացումով և դեռևս բարձր մակարդակի չի հասել: Ճիշտ է, 1986 թվականից Երե-
վան, Լենինական և Կիրովական քաղաքներում ընդլայնվում է կոլեկտիվ ու պետա-
կան տնտեսությունների հետ ուղղակի կապերով «դաշտ-խանութ» սխեմայով աշխա-
տող պտուղբանջարեղենի խանութների ցանցը: Նրանք բնակչությանն են վաճառում
անմիջականորեն Արարատյան դաշտավայրի շրջանների տնտեսություններից բերվող
բանջարեղենն ու մրգերը:
Առևտրական ցանցին ուղղակի մատակարարումներ կատարող կոլեկտիվ ու պե-
տական տնտեսությունների աշխատանքի պրակտիկայում ծագում են դժվարություն-
ներ: Խանութները պահպանման համապատասխան պայմաններ չունեն և բանջարե-
ղեն ու պտուղ քիչ քանակությամբ են պահանջում, որպեսզի ստացածը կարողանան
վաճառել օրվա ընթացքում, այլապես մնացած մթերքը կկորցնի իր որակը, որը բա-
ցասաբար կանդրադառնա նրանց տնտեսական գործունեության վրա: Իսկ տնտեսու-
թյուններին ձեռնտու է բերքահավաքի շրջանում մեծ քանակությամբ մատակարա-
րումներ կատարել: Ուստի և անհրաժեշտ է պլանաչափ մատակարարումը, որը և,
ինչպես մեզ թվում է, պետք է արտացոլվի պայմանագրում: Ուղղակի կապեր իրա-
կանացնելիս կարևոր դեր կարող է խաղալ գյուղատնտեսական մթերքների տեղա-
փոխման տեխնոլոգիական պրոցեսների դիսպետչերացումը: Նման ծառայությունը
կարող է նպաստել մանրածախ առևտրական ցանց շուտ փչացող մթերքների պլա-
նաչափ և ռիթմիկ տեղափոխմանը՝ համաձայն պայմանագրի և տեղափոխման
չվացուցակի: Գյուղատնտեսական մթերքների իրացման նոր ձևերի ու մեթոդների
որոնումով կոչված են զբաղվելու համապատասխան մարմինները:
Բացի այդ, մեր կարծիքով, բանջարանոցային կուլտուրաների մասսայական բեր-
քահավաքի շրջանում անհրաժեշտ է մշակել գյուղատնտեսական մթերքների ընդուն-
ման հաստրակական վերահսկողության համակարգ: Դա ակտիվորեն կներազդի ինչ-
պես կոլեկտիվ ու պետական տնտեսությունների, այնպես էլ մթերող կազմակերպու-
թյունների վրա:
Անմիջական կապերի զարգացումն էական նշանակություն ունի նաև անասնա-
պահական մթերքների մթերումների գործում: Դրանք լավ պայմաններ են ստեղծում
անասունների, կաթի, բրդի և կաշվի հումքի որակի պահպանման համար, ապահո-
վում են վերամշակող ձեռնարկությունների ռիթմիկ աշխատանքը, ինչպես նաև կըր-
ճատում մթերումների հետ կապված փոխադրական և այլ ծախսերը: Ուսումնասիրու-
թյունները ցույց են տալիս, որ եթե կաթի ընդունումը կազմակերպվի անմիջակա-
նորեն կոլեկտիվ ու պետական տնտեսությունների ֆերմաներում և կենտրոնացված ձևով
փոխադրվի մթերող կազմակերպությունների մասնագիտացված ավտոտրանսպորտով,
ապա թարմ կաթի սառեցման և նման վիճակով տեղափոխման հաշվին առաջնակարգ
կաթի բաժինը կավելանա 25—30 տոկոսով:
Ներկայումս որոշ հանրապետություններում և մարզերում այս առաջադեմ եղա-
նակով է մթերվում անասնաբուծական մթերքների զգալի մասը: Բելոռուսիայի կո-
լեկտիվ ու պետական տնտեսությունների 94 տոկոսից կենտրոնացված կարգով տե-
ղափոխվում են անասունները, իսկ 52 տոկոսից՝ կաթը: Այս ձևը լայնորեն կիրառ-
վում է նաև Էստոնական ՍՍՀ-ում, Լենինգրադի, Բելգորոդի և այլ մարզերում: Մոլ-
դավական ՍՍՀ-ում բոլոր թռչնաբուծարաններն իրենց արտադրանքն իրացնում են
անմիջականորեն առևտրական կազմակերպություններին: Ուղղակի կապերով բրդի
մթերմանն են անցել Կալմիկական ԻՍՍՀ-ի և Ստավրոպոլի երկրամասի, Օմսկի և



Չիտայի մարզերի կոլեկտիվ ու պետական տնտեսությունները: Բայց լրիվ կերպով
անասունների ընդունման այդ նոր ու տնտեսապես առավել շահեկան սիստեմին անց-
նելու համար պահանջվում են զգալի թվով մասնագիտացված ավտոմեքենային
տրանսպորտ, տնտեսություններում համապատասխան բարձման-բեռնաթափման
հրապարակներ, ուղեմատույցներ և այլն:
Արտադրանքի բարձր որակի պահպանման համար պահանջվում է էապես բա-
րելավել մթերումների կազմակերպումը, ուժեղացնել տրանսպորտի նյութատեխնի-
կական բազան, բարելավել աշխատանքը: Մթերող կազմակերպություններում, ինչ-
պես նաև հենց կոլեկտիվ ու պետական տնտեսություններում բանջարեղենի ու կար-
տոֆիլի պահեստների անբավարար քանակության պատճառով այդ կուլտուրաների
համախառն բերքի զգալի մասը փչանում է դեռևս սպառողին հասնելու ճանապար-
հին:
Արտադրանքի բարձր որակի պահպանման համար կարևոր նշանակություն ունի
նաև ամբողջ մթերող ապարատի ժամանակին պատրաստ լինելը մթերման սեզոնին:
Անհրաժեշտ է, որ մթերման կազմակերպությունները, առևտրի մինիստրությունը, ագ-
րոարդը և Հայկոոպը վաղօրոք նախապատրաստեն ընդունման կետերն ու բազանե-
րը, պահեստային շինությունները, բանջարեղենի, կարտոֆիլի և մյուս շուտ փչացող
մթերքների վաճառքի համար ամենուրեք բացեն մասնագիտացված խանութներ, տա-
ղավարներ ու վրաններ, լուծեն բեռնարկղերի և փոխադրման հարցերը:
Հարկ է նաև նշել, որ հանրապետությունում անբավարար է պահեստարանների
ծավալը, նրանց մեծ մասը վերակառուցման կարիք ունի, որովհետև չի համապա-
տասխանում արտադրանքի պահպանման տեխնոլոգիայի պահանջներին: Կարտոֆիլի
պահեստարանների 65 տոկոսից ավելին բնական և արհեստական սառեցման, ակտիվ
օդափոխման համապատասխան սարքավորում չունի:
Վերջին տարիներս փոքր-ինչ ընդլայնվել և բարելավվել է մթերող կազմակեր-
պությունների նյութատեխնիկական բազան: Կառուցվել են բանջարեղենի և կարտո-
ֆիլի մի շարք պահեստարաններ: Սակայն շուտ փչացող արտադրանքի լրիվ պահ-
պանման համար այդ բոլորը դեռևս բավարար չէ: Ուսումնասիրությունը ցույց է տա-
լիս, որ արդիական սարքավորումով խոշոր պահեստարաններ ձեռնտու է ունենալ
կարտոֆիլ մշակող այնպիսի հիմնական շրջաններում, ինչպիսիք Լոռի-Փամբակի և
Սևանի գյուղատնտեսական գոտիներն են:
Արտադրանքը պահեստավորելիս կարևոր նշանակություն ունի փոխադրումների
համակարգը: Մի շարք հանրապետությունների փորձը ցույց է տալիս, որ շուտ փչա-
ցող արտադրանքի փոխադրման ու պահպանման առավել ճիշտ ուղին կոնտեյներա-
յին եղանակն է, որի շնորհիվ զգալիորեն կրճատվում են կորուստները:
Սննդամթերքների արտադրության ավելացման գործում էական է նաև ձեռնար-
կությունների ու կազմակերպությունների օժանդակ տնտեսությունների զարգացումը:
Ներկայումս, երբ իրենց ռեգիոնների բնակչությանը սննդամթերք մատակարարելու
համար զգալիորեն բարձրացել է հանրապետական և տեղական մարմինների պա-
տասխանատվությունը, առավել է մեծանում նման տնտեսությունների դերը:
Ձեռնարկությունների և կազմակերպությունների օժանդակ տնտեսությունների
զարգացումը կարևոր սոցիալ-տնտեսական նշանակություն ունի: Այնտեղ, որտեղ
գյուղատնտեսական այդպիսի տնտեսություններ կան, ավելի լավ են օգտագործվում
աշխատանքային ռեսուրսները, թոշակառուների և ծերերի աշխատանքը, ոչ գյուղա-
տնտեսական ձեռնարկությունների, հիմնարկությունների կոլեկտիվներն ակտիվորեն
ներգրավվում են պարենային ծրագրի իրականացման գործում: Բացի այդ, գյուղա-
տնտեսական շրջանառության մեջ են ներառնվում քաղաքների, քաղաքատիպ ավան-
ների, արդյունաբերական կենտրոնների չօգտագործվող հողերը, ինչպես նաև անա-
սուններին կերակրելու համար հաջողությամբ օգտագործվում են զանազան արդյու-
նաբերական թափոններ, հատկապես՝ հասարակական սննդի թափոնները, ավելա-
նում է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, որը և նպաստում է աշխա-
տանքային կոլեկտիվների պահանջմունքների բավարարմանը՝ սեփական արտադրու-
թյան սննդամթերքներով:
Մեր հանրապետությունում սննդամթերքների պաշարների մեծացման այդ կա-
րևոր ռեզերվը դանդաղ և ամենևին էլ ոչ լրիվ է օգտագործվում: Այժմ հանրապե-
տությունում գյուղատնտեսական օժանդակ տնտեսությունների պրոբլեմներով զբաղ-
վում են միութենական ու հանրապետական ենթակայության շատ մինիստրություններ
ու գերատեսչություններ: Գրեթե բոլոր շրջաններում կան նման տնտեսություններ;

# ՊԱՐԵՆԱՅԻՆ ՀԱՄԱԼԻՐԻ ՀԱՆԳՈՒՑԱՅԻՆ ՊՐՈԲԼԵՄԸ

**Ն. ՄՈՒՐԱԴՅԱՆ**
**Կենսաբանական գիտությունների թեկնածու**

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ շատ ճյուղերի հետագա զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման վճռական նախադրյալներից մեկը հացահատիկի արտադրության ավելացումն է:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը հատուկ որոշում են ընդունել «Տասներկուերորդ հնգամյակում երկրի հացահատիկային տնտեսության կայունության բարձրացման և փուրաժային ռեսուրսների մեծացման միջոցառումների մասին»: Արդի պայմաններում անչափ աճում է հացահատիկի պրոբլեմի տնտեսական և սոցիալ-քաղաքական նշանակությունը: Որպես պարենային համալիրի հանգուցային պրոբլեմ՝ այն կանխորոշում է կարճ ժամկետում երկիրը պարենով լիուլի ապահովելու՝ կուսակցության XXVII համագումարի առաջադրած խնդրի լուծման հաջողությունը:

Նյութատեխնիկական բազայի ամրապնդման, սոցիալական ենթակառուցվածքի զարգացման ուղղությամբ վերջին տարիներին իրականացված միջոցառումները նպաստել են երկրագործության ինտենսիվացմանը, հացահատիկային տնտեսության կայունության որոշ բարձրացմանը, բուսաբուծական մթերքների արտադրության ավելացմանը: Սակայն դրա հետ մեկտեղ, ստացվող համախառն բերքը չի ապահովում երկրի հացահատիկի պահանջմունքները: Սպիտակուցի առումով հաշվեկշռված չլինելու հետևանքով թույլ է տրվում հատիկային կերերի գերածախս, որը և մեծացնում է հացահատիկի դեֆիցիտը:

Տնտեսական կառավարման մարմիններից, ագրոարդյունաբերական համալիրի աշխատավորական կոլեկտիվներից մեծ ջանքեր են պահանջվում դրությունը կտրուկ փոխելու, հացահատիկային տնտեսության զարգացումն արագացնելու և կայունացնելու համար: Կուսակցության ժամանակակից ագրարային քաղաքականությունը, գյուղում ստեղծված տնտեսական նոր իրադրությունը, ագրոարդյունաբերական համալիրում տնտեսավարման մեխանիզմի կատարելագործումը բարենպաստ պայմաններ են ստեղծում հացահատիկի արտադրության ավելացման համար: Այդ պրոբլեմի լուծման ուղին երկրագործության ինտենսիվացումն է, հողերի մշակման և բերրիության բարձրացման գիտականորեն հիմնավորված համակարգերի հետևողական կիրառումը, հակաէռոզային միջոցառումների կոմպլեքս իրականացումը, արտադրության նյութատեխնիկական բազայի օգտագործման էական բարելավումը: Առանձնապես արժեքավոր են հացահատիկի ինտենսիվ մշակման փորձի ուսումնասիրումն ու ներդրումը, տեխնոլոգիական նոր եղանակների տիրապետումն ու կիրառումը:

Գյուղատնտեսական գիտության և արտադրության առջև խնդիր է դրված՝ բարելավել բարձրարդյունավետ, երաշտի, վնասատուների և հիվանդությունների նկատմամբ կայուն հացահատիկային կուլտուրաների սորտերի սելեկցիան և սերմնաբուծությունը, արագացնել դրանց ստեղծումն ու ներդրումն արտադրության մեջ:

Մեր հանրապետության երկրագործները պայքարում են հացահատիկի համախառն բերքը տասներկուերորդ հնգամյակի վերջում 330 հազար տոննայի հասցնելու համար: Ճիշտ է, վերջին տարիներին մեզ մոտ որոշ աշխատանք է տարվել այդ կուլտուրայի արտադրությունն ու մթերումներն ավելացնելու ուղղությամբ, սակայն այն դեռ հեռու է բավարար լինելուց: Յուրաքանչյուր չորրորդ տնտեսությունում մեկ հեկտարի բերքատվությունը չի անցնում 14 ցենտներից, իսկ շատ շրջաններ ընդհան-



րապես ձախողեցին տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների կատարումը: Ավելին, նախորդ հնգամյակի համեմատությամբ, հացահատիկի տարեկան միջին համախառն բերքը հանրապետությունում նվազել է: Շատ տնտեսություններ և առանձին շրջաններ նույնիսկ ապահովված չեն որակյալ սերմացուով: Բավարար ուշադրություն չի դարձվում արտադրության մեջ տեղական սելեկցիոն նոր սորտերի լայն ներդրմանը: Դրա հետևանքով տարեցտարի հացահատիկի արտադրության ծավալները մեր հանրապետությունում խիստ տատանվում են: Այն հնարավորին չափ կայունացնելու համար անհրաժեշտ է նաև հաշվի առնել յուրահատուկ պայմանները: Հայտնի է, որ Հայաստանի տարածքն աչքի է ընկնում կլիմայական պայմանների բազմազանությամբ և բաժանվում է գյուղատնտեսական 9 գոտիների, որոնցից յուրաքանչյուրը ստորաբաժանված է միմյանցից էապես տարբերվող 2—3 ենթագոտիների: Մեզ մոտ դաշտավարությամբ զբաղվում են ծովի մակերևույթից 350—2500 մ բարձրության վրա: Ստույգ արտահայտված՝ ուղղահայաց գոտիականությունը ստեղծել է ինչպես հյուսիսային, այնպես էլ չոր սուբտրոպիկներին բնորոշ բնակլիմայական պայմաններ: Բույսերի վեգետացիայի տևողությունը տատանվում է 90—220 օրվա միջև: Հայաստանի կլիմայի համար բնորոշ են հաճախ կրկնվող երաշտը, խորշակները և ցրտահարությունները, որոնք բերքի, երբեմն էլ ցանքերի ոչնչացման պատճառ են հանդիսանում: Ելնելով այս առանձնահատկություններից՝ անհրաժեշտ է խստորեն պահպանել մշակության գիտականորեն հիմնավորված տեխնոլոգիան ըստ գյուղատնտեսական գոտիների: Այստեղ հարկ է նկատի ունենալ ցանքաշրջանառությունը, հանքային և օրգանական պարարտանյութերի զուգակցումը, հողի մշակությունը, ցանքի օպտիմալ ժամկետները, նորմաները, ոռոգումը, մոլախոտերի դեմ պայքարի քիմիական եղանակի կիրառումը, բերքահավաքը: Եթե նախկինում աշնանացանի բոլոր սորտերը մշակվում էին միևնույն ագրոտեխնիկայով, ապա ինտենսիվ երկրագործության պայմաններում յուրաքանչյուր սորտի համար պահանջվում է մշակության համապատասխան տեխնոլոգիա: Այստեղ կարևոր է հաշվի առնել յուրաքանչյուր սորտի կենսաբանական և բերքատվության պոտենցիալ առանձնահատկությունները: Այսպես, **Բեզոստայա—1, Միրոնովսկայա—808, Կանգուն—20, Սևանի—4, Արմյանկա—60** ինտենսիվ սորտերն Արարատյան հարթավայրում ապահովում են բարձր բերք՝ հեկտարին 4,5—5 **մլն** ծլունակ սերմի նորմայի դեպքում, իսկ լեռնային և նախալեռնային շրջաններում՝ 5,5—7,0 **մլն**: Սովորաբար լեռնային անջրդի պայմաններում, երբ միավոր տարածության վրա բուսածածկի չափավոր խտության ստեղծումը վտանգի տակ է, աշնանացանների ցանքի նորման հեկտարի վրա կարելի է հասցնել 6,5—7,5 **մլն** ծլունակ սերմի: Սահմանված ձևով ցանելու դեպքում ուժեղանում է բույսերի թփակալումը, մեծանում արևային էներգիայի կլանման տոկոսը: Այդ ամենը նպաստում է հեկտարի լրիվ ծանրաբեռնվածությանն ու լիարժեք հասկերի ձևավորմանը, միաժամանակ տնտեսվում մեծ քանակությամբ բարձրորակ սերմացու: Մինչդեռ վերջին տարիներին Արարատյան հարթավայրի և լեռնային շրջանների շատ տնտեսություններ, հացահատիկին նախորդող կուլտուրաների բերքահավաքը ձգձգելու պատճառով, խախտում են աշնանացանի համար հողի նախապատրաստման և ցանքի ժամկետները, որը և հանգեցնում է բերքատվության նվազեցման: Ուստի հացահատիկի բերքահավաքը պետք է կատարվի այն հաշվով, որպեսզի նվազագույնի հասցվեն կորուստները: Հայտնի է, որ բերքահավաքի մինչև 5 օր ուշացումը պատճառ է դառնում 3—5 ցենտներ բերքի կորստի, իսկ 10 օրը՝ 8—10 ցենտների:

Հանրապետությունում ամեն տարի, հատիկի և կերի նպատակով, ցանվում են շուրջ 130—140 հազար հեկտար հացահատիկային կուլտուրաներ, և երկրագործության բարձր կուլտուրայի ապահովման, գիտության ու առաջավոր փորձի նվաճումների, մշակության տեխնոլոգիայի անթերի կիրառումը հնարավորություն կտա հանրապետությունում միջին հաշվով ստանալ հեկտարից 5—6 ցենտներ լրացուցիչ բերք:

Հացահատիկի արտադրության ավելացման կարևոր նախադրյալներից է նաև ոռոգելի հողերում բարձր և կայուն բերքի ապահովումը: Հացահատիկային կուլտուրաների զբաղեցրած ցանքատարածությունների շուրջ մեկ երրորդը ոռոգելի են: Առաջավոր տնտեսությունների բազմամյա տարիների տվյալների համաձայն, ոռոգելի պայմաններում հեկտարից ստացվում է հատիկի 60—85 ցենտներ բերք: Սակայն Արարատյան հարթավայրում հացահատիկի միջին բերքատվությունը առայժմ չի անցնում 40 ցենտներից, ընդ որում ամենաբարձր ցուցանիշը տարիներ շարունակ ստացվում է Էջմիածնի (1985 թ. 53,0 ց, 1986 թ. 55,5 ց) շրջանում, որտեղ հիմնականում մշակվում են երկրագործության գիտահետազոտական ինստիտուտի բուծած

աշնանացան ցորենի և աշնանացան գարու սորտերը: Արարատյան հարթավայրի
նախալեռնային գոտում հացահատիկային կուլտուրաները մշակվում են շուրջ 20—21
հազար հեկտարի վրա, որոնց զգալի մասը ոռոգելի է: Արդյոք հանդուրժելի՞ է, որ
այդ հեկտարներից միջին հաշվով ստացվում է ընդամենը 15—20 ցենտներ բերք:
Ժամանակը չէ՞, որ այդ շրջանների տնտեսությունների ղեկավարները լիովին փոխեն
իրենց վերաբերմունքը նման վիճակի նկատմամբ: Ոռոգելի հողերի ինտենսիվ մշա-
կության պայմաններում մոտակա տարիներին 50 հազար հեկտար տարածության
վրա միանգամայն հնարավոր է աշխատանքները վերակառուցել, աշխատել նորովի՝
կուսակցության պահանջների ոգով, օգտագործել տվյալ պայմաններին ադապտաց-
ված տեղական սելեկցիոն սորտեր և հեկտարի բերքատվությունը բարձրացնել 8—12
ցենտներով: Դա լրացուցիչ կտա 25—30 հազար տոննա հացահատիկ:

Մյուս կարևոր պայմանը հետ մնացող շրջաններում հացահատիկի բերքատվու-
թյան բարձրացումն է մինչև հանրապետության միջին մակարդակը: Ինչպես նշվեց
ՀԿԿ Կենտկոմի 1986 թ. հուլիսյան պլենումում, հացահատիկի արտադրության
տասնմեկերորդ հնգամյակի պլանները չեն կատարել 27 շրջաններ, իսկ Անիի, Գո-
րիսի, Նաիրիի, Թումանյանի, Թալինի, Շամշադինի և այլ շրջաններ հացահատիկի
արտադրությունը, նախորդ հնգամյակի համեմատությամբ, նվազեցրել են: Եղեգնա-
ձորի, Ազիզբեկովի, Կրասնոսելսկի, Ամասիայի շրջաններում տասնմեկերորդ հնգամ-
յակի տարիներին միջին հաշվով հեկտարից հավաքվել է ընդամենը 9,8—11,7 ցենտ-
ներ հացահատիկ: Դա նշանակում է, որ այդ շրջաններում տարիներ շարունակ հա-
ցահատիկային տնտեսությունը բարձիթողի վիճակում է, կոպիտ կերպով խախտվում
է հացահատիկային կուլտուրաների մշակության տեխնոլոգիան: Հետ մնացող շրջան-
ներում հացահատիկի բերքատվությունը հանրապետության միջին մակարդակին
հասցնելու դեպքում կարելի է ստանալ 30—40 հազար տոննա լրացուցիչ բերք:

Հացահատիկի արտադրության ավելացման մյուս նախապայմանը բարձր բեր-
քատու, հիվանդադիմացկուն (հատկապես ժանգադիմացկուն) սորտերի ներդրումն է:
Հաշվարկված է, որ միայն այդ հիվանդությունից ու վնասատուներից մենք տարեկան
կորցնում ենք ամբողջ բերքի 10—13 տոկոսը: Մինչդեռ ժանգերի և մրրիկների նկատ-
մամբ պայքարի ագրոնոմիական, քիմիական միջոցառումների կիրառումը ապահովում
է հեկտարից առնվազն 8—10 ցենտներ լրացուցիչ բերք: Ագրոմիջոցառումներից ար-
դյունավետ են ֆոսֆորակալիումական սնուցումները և միկրոէլեմենտները՝ պարար-
տանյութերի ձևով, իսկ քիմիական պայքարի եղանակներից վիտավաքսի կիրառումը:
Ամենահուսալին իմուն սորտերի բուծումն է սելեկցիայի ճանապարհով:

Սերմնաբուծության փոխադրումն արդյունաբերական հիմքերի վրա, նրա կենտ-
րոնացումն ու մասնագիտացումը պայմաններ կստեղծեն իջեցնելու ինքնարժեքը և
ունենալու անհրաժեշտ քանակի ու որակի սերմացուի կայուն ռեզերվներ: Գիտու-
թյան նվաճումներն ու արտադրության առաջավոր փորձը ցույց են տալիս, որ միայն
սերմերի բերքատու հատկանիշների բարելավման շնորհիվ հացահատիկային կուլ-
տուրաների բերքատվությունը կարելի է բարձրացնել 2—3 ցենտներով:

Հանրապետությունում մշակվել է հացահատիկային կուլտուրաների սերմնաբու-
ծության նոր սխեմա, որը պայմաններ է ստեղծում այն գիտականորեն կազմակերպել
ըստ երեք հիմնական հացահատիկային գոտիների (Շիրակ, Սևանի ավազան և Զան-
գեզուր):

Ներկայումս աշնանացան ցորենի **Բեզոստայա—1, Միրոնովյան—808, Սպիտա-
կահատ,** գարնանացաններից՝ **Նոր-կոնդիկ, Գալգալոս,** գարիներից՝ **Պալլիդում, Նու-
տանս տեղական, Նուտանս—115** սորտերը լիովին չեն բավարարում տնտեսություն-
ների աճող պահանջները: Տարիների ընթացքում դրանք կորցրել են իրենց չորա-
երաշտադիմացկունությունը և բերքատվության հիմնական ցուցանիշները, իմունի-
տետը շատ հիվանդությունների հարուցիչների նկատմամբ: Այս հանգամանքը բա-
ցասաբար է ազդում հացահատիկի համախառն արտադրանքի վրա: Ուստի հանրա-
պետության գյուղատնտեսական բոլոր գոտիների համար հացահատիկների նոր սոր-
տերի բուծումը մեր սելեկցիոներների կարևորագույն խնդիրներից է: Այս գործում
գլխավորը բերքատվությունն ու որակն են: Արտադրության մեջ պետք է մշակել աշ-
նանացան ցորենի վաղահաս, չպառկող, հիվանդությունների ու վնասատուների
նկատմամբ դիմացկուն ինտենսիվ սորտեր՝ ջրովի պայմաններում 90—100, իսկ ան-
ջրդի պայմաններում՝ 50—55 ցենտներ հեկտարից պոտենցիալ բերքատվությամբ:
Այս պարամետրերն աշնանացան գարու սորտերի համար ոռոգելի պայմաններում
պետք է լինեն ոչ պակաս 80—90, իսկ գարնանացանի համար՝ 50—70 **ց/հա:** Ան-



ջրդի պայմաններում այդ ցուցանիշները 15—20 տոկոսից ցածր են: Բույսերի գենե-
տիկական բարդացման նոր մեթոդի կիրառմամբ ագրոարդի երկրագործության գիտա-
հետազոտական ինստիտուտում վերջին տարիներին ստացվել և արտադրության մեջ
ներդրվում են աշնանացան ու գարնանացան ցորենի, աշնանացան գարու մի շարք
բարձր բերքատու, հատիկի լավագույն որակով, իմուն նոր սորտեր, որոնք հասկի
մեծությամբ, սպիտակուցի բարձր պարունակությամբ և հացաթխման հատկանիշնե-
րով զգալիորեն գերազանցում են արտադրության մեջ մշակվող սորտերին: Դրանց
մեջ առանձնակի ուշադրության են արժանի աշնանացան ցորեններից **Կանգուն—20,
Արմյանկա—60, Սևանի—4,** գարնանացան ցորեններից՝ **Շիրակի—1,** աշնանացան
գարիներից՝ **Արարատի—7** սորտերը: Հացահատիկի նշված սորտերը ինտենսիվ
երկրագործության պահանջները միանգամայն բավարարում են և Էջմիածնի, Հոկ-
տեմբերյանի, Արարատի, Մասիսի, Աշտարակի, Նաիրիի, Աբովյանի, Եղեգնաձորի
շրջանների ջրովի հողերում 1982—86 թթ. ընթացքում ապահովել են միջին հաշվով
55—75, իսկ առանձին տնտեսություններ և բրիգադներ՝ մինչև 85—90 ցենտներ հա-
տիկի բերք: Հատկապես մեծ հեռանկարներ ունի **Արմյանկա—60, Սևանի—4** և **Արա-
րատի—7** սորտերի ցանքերի ընդարձակումը: Եթե մինչ այժմ **Արմյանկա—60-ը** շրջա-
նացված էր հիմնականում ջրովի հողերում, ապա ընթացիկ տարում այն կտարածվի
նաև Արարատյան հարթավայրի նախալեռնային և հյուսիս-արևելյան գոտիներում:
Խոստումնալից են **Սևանի 4-ի** հեռանկարները: Լինելով չորադիմացկուն, ունենալով
հատիկի բարձր որակ, իմունիտետ մի շարք սնկային հիվանդությունների նկատմամբ,
ապահովելով բարձր և կայուն բերք՝ այն նախատեսված է շրջանացնել Սևանի ավա-
զանի և Զանգեզուրի գոտու տնտեսություններում: Անասնապահությանը կերով ապա-
հովելու գործում շատ մեծ է կերային հատիկի դերը: Հանրապետության մի շարք
շրջաններում լայնորեն մշակվում է վերջերս երկրագործության ինստիտուտում բուծ-
ված աշնանացան գարու **Արարատի—7** սորտը, որի բերքատվությունը հեկտարից
հասնում է 70—75 ցենտների: Բարձր բերքատվության հետ մեկտեղ այն նաև վա-
ղահաս է, հասունանում է մշակվող սորտերից 10—15 օրով շուտ, դրանով իսկ ստեղ-
ծում նպաստավոր պայմաններ նույն հողատարածությունից երկու բերք ստանալու
համար:

Սելեկցիոն-սերմնաբուծական աշխատանքների կազմակերպման տեսակետից
կարևոր է նշել մեկ հանգամանք ևս: Եթե սորտը կենսաբանաագրոնոմիական որո-
շակի ժառանգական հատկանիշներով օժտված բույսերի խումբ է, ապա որպես ար-
տադրության միջոց, այն առաջին հերթին որոշակի քանակի սերմացու է: Եթե չկա
այդ սերմացուն, ապա սորտի շրջանացումը և նրա ցանքատարածությունների ընդար-
ձակումն իսկ մնում են որպես վերացական հասկացություն: Երկրագործության ինս-
տիտուտում ստեղծված սորտերի նկատմամբ այդ հարցը լուծված համարել չի կարե-
լի: Այստեղ բուծված հացահատիկների և կերային կուլտուրաների շատ արժեքավոր
տեսակներ չունեն համապատասխան քանակի սերմացու և հողատարածություններ՝
սերմ արտադրելու համար: Ինստիտուտում բուծվել և նախորդ հնգամյակում շրջա-
նացվել են աշնանացան ցորենի **Կանգուն—20, Արմյանկա—60,** գարնանացան ցորե-
նի **Շիրակի—1,** աշնանացան գարու **Արարատի—7,** առվույտի **Հայկական—1** և ցո-
րենի **Լենինական—5** սորտերը: Պետական սորտափորձարկման մեջ են գտնվում
աշնանացան ցորենի **Սևանի—4-ը,** կորնգանի **Զանգեզուրի—82**-ը և այլն: Սակայն
սերմնաբուծության անբավարարության պատճառով դրանք տարիներ շարունակ ոչ
միայն չեն զբաղեցնում նախատեսված տարածություններ, այլև մշակվող տարածու-
թյուններից տալիս են անհամեմատ ցածր բերք, քան դրանց պոտենցիալ հնարավո-
րությունն է: Շատ ավելի վատ է հանրապետությունից դուրս գտնվող սելեկցիոն հիմ-
նարկների բուծած և մեզ մոտ շրջանացված որոշ սորտերի վիճակը: Վերջին տարի-
ներս հանրապետությունում շրջանացվել են աշնանացան ցորենի **Օդեսկայա—75,
Բրիգադնիրնա,** ինչպես նաև աշնանացան և գարնանացան գարու մի քանի նոր սոր-
տեր: Սակայն սերմացու չլինելու պատճառով դրանք կամ շատ փոքր տարածություն-
ներ են զբաղեցնում, կամ բոլորովին չեն մշակվում: Ստացվում է, որ շրջանացումը՝
սորտերի ներդրման այդ վարչական ակտը, լոկ ձևական բնույթ է կրում: Նման պայ-
մաններում հարցի լուծման արդյունավետ ուղի է վերջերս երկրագործության գիտա-
հետազոտական ինստիտուտի և մի շարք կոլտնտեսությունների ու սովխոզների բա-
զայի վրա ստեղծված գիտաարտադրական միավորման ստեղծումը:

Գիտականորեն ապահովելով նոր սորտերի սերմնաբուծության կազմակերպումն ու ներդրումը արտադրության մեջ՝ մեր հաշվարկներով կստացվի ևս 45—60 հազար տոննա հացահատիկի լրացուցիչ բերք: Նախատեսված է ինստիտուտում բուծված նոր, բարձր բերքատու սորտերի ցանքատարածությունները ընթացիկ հնգամյակի վերջում հասցնել 65—70 հազար հեկտարի, որը լրացուցիչ կտա 5,8—6,3 միլիոն ռուբլու եկամուտ:

Հացահատիկի արտադրության ավելացման կարևոր ռեզերվ է նաև ցանքատարածությունների կառուցվածքի կատարելագործումը: Անցած հնգամյակում հանրապետությունում հացահատիկային կուլտուրաներ մշակվել են 144 հազար հեկտար տարածության վրա: Մեր ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ միայն աշնանացան ցորենի, աշնանացան և գարնանացան գարու բերքատվությունն է համապատասխանում բերքատվության միջին ցուցանիշին (21,3 ցենտներ): Մինչդեռ գարնանացան ցորենը, վարսակը, աշորան և մյուս հացահատիկային կուլտուրաները միջին հաշվով հեկտարից տվել են միայն 12—15 ցենտներ բերք: Այստեղից բխում է տրամաբանական հետևություն. գարնանացան ցորենի, աշորայի և վարսակի մշակությունը մեր հանրապետությունում նպատակահարմար չէ: Նրանց զբաղեցրած տարածությունը կարելի է հատկացնել առավել բերքատու հացահատիկային կուլտուրաների: Կարելի է նաև ցածր բերքատու գարնանացան գարին փոխարինել բարձր բերքատու աշնանացանով: Անհրաժեշտ ուշադրություն է պահանջում նաև հաճարի և եգիպտացորենի հատիկի բերքատվության բարձրացման խնդիրը:

Հացահատիկային ցանքատարածությունների կառուցվածքի նշված փոփոխությունները հնարավորություն կտան ընթացիկ հնգամյակում ստանալ հատիկի 4—5 հազար տոննա լրացուցիչ բերք: Հացահատիկի արտադրության ավելացմանը մեծապես նպաստում է նաև բերքի ծրագրավորումը: Այն միմյանց կապակցված ագրոմիջոցառումների համակարգ է, որոնց ժամանակին և որակով կատարումը ապահովում է գյուղատնտեսական կուլտուրաների հնարավոր առավելագույն երաշխավորված բերքի ստացումը: Այս դեպքում բերքի կազմավորման ընթացքը կանխորոշվում է նախօրոք կազմված ծրագրով՝ հաշվի առնելով տնտեսության հողակլիմայական պայմանները և մշակվող սորտերի կենսաբանական առանձնահատկությունները:

Բերքի ծրագրավորումը թույլ է տալիս առավելագույն չափով օգտագործել հողի յուրաքանչյուր հեկտարի պոտենցիալ հնարավորությունները և ապահովել հացահատիկի արտադրության փոխադրումը արդյունաբերական հիմքի վրա:

Նշված գործոնների հաշվառումը և ագրոմիջոցառումների անթերի կիրառումը հնարավորություն կընձեռեն հանրապետությունում միևնույն ցանքատարածությունից ընդհանուր առմամբ լրացուցիչ ստանալ 100—150 հազար տոննա հացահատիկ: Դա էական ներդրում կլինի գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման և պարենային ծրագրի իրականացման գործում:

---



# ԺՈՂՈՎՐԴԻ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԻՆՔՆԱԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ

**Վ. ՆԱԶԱՐՅԱՆ**
**Իրավաբանական գիտությունների թեկնածու, դոցենտ**

ՍՄԿԿ **XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԱՌԱՋԱԴՐԱԾ**՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, սովետական դեմոկրատիայի ըստ ամենայնի ծավալման և ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման խորացման ստրատեգիական կուրսի իրականացման համար անհրաժեշտ է իրավական հաստատուն հիմք: «Դեմոկրատիան,— մատնանշվում է կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած Քաղաքական զեկուցման մեջ,— եղել ու մնում է **սոցիալիստական օրինականության ամրապնդման** կարևորագույն լծակը, իսկ ամուր օրինականությունը՝ մեր դեմոկրատիայի անբաժանելի մասը» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** «Հայաստան» հրատ., 1986, էջ 86):

Այս սկզբունքային դրույթը մեկ անգամ ևս ընդգծվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումում: «Վերակառուցման և կուսակցության կադրային քաղաքականության մասին» 1987 թվականի հունվարի 28-ին ընդունված որոշման մեջ նշվում է, որ «իսկական դեմոկրատիան գոյություն չունի օրենքից դուրս և օրենքից վեր»: Ուստի «կուսակցությունը ելնում է այն բանից, որ սոցիալիստական դեմոկրատիան ընդհանուր ոչինչ չունի անարգելության, անպատասխանատվության, անարխիայի հետ» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի նյութերը: 1987 թվականի հունվարի 27—28-ին: «Հայաստան» հրատ., 1987, էջ 112): Այստեղից էլ բխում է գործող օրենսդրության հետագա զարգացման ու կատարելագործման մասին մշտապես հոգ տանելու անհրաժեշտությունը: «Ընթացիկ հնգամյակում,— նշվում է կուսակցության Կենտկոմի պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի տված զեկուցման մեջ,— պետք է մեծ աշխատանք կատարվի էկոնոմիկան, սոցիալական ոլորտն ու մշակույթը, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարումը զարգացնելու, քաղաքացիների իրավունքների ու ազատությունների երաշխիքները ընդլայնելու հետ կապված նոր օրենքների նախապատրաստման և ընդունման ուղղությամբ» (Նույն տեղը, էջ 49—50):

ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած վիթխարի խնդիրների լուծման գործում ոչ պակաս կարևոր դեր է պատկանում հասարակական գիտություններին և, դրանց թվում, իրավագիտությանը: Մինչդեռ, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում, «որոշակի հանգամանքների բերումով տեսությունից և հասարակագիտությունից անհետացել էին կենդանի բանավեճը և ստեղծագործական միտքը, իսկ ավտորիտար գնահատումներն ու դատողությունները սոսկ մեկնաբանման ենթակա անառարկելի ճշմարտություններ էին դարձել» (Նույն տեղը, էջ 11): Հասարակության սոցիալական կառուցվածքը պատկերվում էր սխեմատիկորեն՝ որպես նրա տարբեր խավերի և խմբերի հակասություններից ու բազմապիսի շահերի դինամիկությունից զուրկ: Դրա հետևանքով, ինչպես նշվեց պլենումում, տեղի ունեցավ հասարակության կազմակերպման՝ պրակտիկայում հաստատված ձևերի յուրա-

տեսակ բացարձակացում: Ավելին, նման պատկերացումները նույնացվում էին սոցիալիզմի էական բնութագրումների հետ, դիտվում որպես անփոփոխ և մատուցվում որպես դոգմաներ, որոնք օբյեկտիվ գիտական վերլուծության համար տեղ չէին թողնում: Մինչդեռ, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, «կենդանի, ստեղծագործական սոցիալիզմը ժողովրդական մասսաների ստեղծածն է»:

ՍՄԿԿ XXVII համագումարը տվեց ստեղծված դրության խոր գիտականորեն հիմնավորված գնահատականը և առաջադրեց ամբողջ հասարակական ու պետական կյանքի վերակառուցման ծրագիրը, ձևակերպեց հասարակական գիտությունների զարգացման հրատապ խնդիրները: Կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացված Քաղաքական զեկուցման մեջ նշվում է, որ «ժամանակն առաջադրում է հասարակական գիտությունները պրակտիկայի կոնկրետ կարիքներին լայնորեն նպատակամղելու հարցը, պահանջում, որ հասարակագետ գիտնականները զգայուն կերպով արձագանքեն կյանքում տեղի ունեցող վերափոխումներին, իրենց տեսադաշտում պահեն նոր երևույթները, անեն այնպիսի հետևություններ, որոնք կարողանան ճիշտ կողմնորոշել պրակտիկան» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 119): Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումը իր հերթին ընդգծեց, որ վերակառուցում նշանակում է վճռական շրջադարձ դեպի գիտություն, նրա հետ պրակտիկայի գործարար պարտնյորություն՝ վերջնական բարձր արդյունքների հանելու նպատակով, ամեն մի նախաձեռնություն գիտական պատկառելի հիմքի վրա դնելու ունակություն, հասարակության նորացման կուսակցության կուրսը ակտիվորեն պաշտպանելու գիտնականների պատրաստակամություն ու ջերմ ցանկություն. միաժամանակ դա նաև հոգատարություն է գիտության զարգացման, նրա կադրերի աճի, վերափոխումների պրոցեսներին նրանց ակտիվ մասնակցության նկատմամբ:

Կուսակցության ստրատեգիական կուրսի կենսագործումը օրգանապես կապված է համապատասխան իրավական միջոցների ստեղծման հետ, որոնք ընդունակ են ապահովելու երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը, սովետական դեմոկրատիայի ծավալումը և ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման խորացումը: Այդ կապակցությամբ սովետական իրավագիտության առջև ծառացած է մի խնդիր՝ կուսակցության հիմնադրույթների խոր իմաստավորման հիման վրա մշակել տեսական կառուցվածքներ և նախապատրաստել գործնական հանձնարարականներ, որոնք ուղղված լինեն հասարակական և պետական կյանքի վերակառուցման պրոցեսներում սովետական սոցիալիստական իրավունքի ակտիվ ստեղծագործական դերի ապահովմանը: Այդ ամենը հրատապ է դարձնում սովետական սահմանադրությունների՝ ՍՍՀՄ սահմանադրության և միութենական ու ինքնավար հանրապետությունների սահմանադրությունների, տեսության ու պրակտիկայի պրոբլեմների ուսումնասիրումը, որոնք, վավերագրելով սովետական ժողովրդի լիիշխանությունը, կարգավորելով դրա իրականացման զանազան ձևերը, քաղաքացիների, նրանց կոլեկտիվների և կազմակերպությունների լայն մասնակցությունը հասարակական ու պետական գործերի կառավարմանը, ծառայում են որպես հիմք այն օրենսդրության համար, որը ապահովում է ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման իրականացումը ամբողջ երկրի և յուրաքանչյուր հանրապետության մասշտաբներով:

1977 թվականի ՍՍՀՄ սահմանադրությունը և միութենական հանրապետությունների 1978 թվականի սահմանադրությունները ընդլայնեցին սովետական դեմոկրատիայի հաստատությունների ու ձևերի գործողությունը, բարենպաստ ներգործություն ունեցան կյանքի բոլոր՝ քաղաքական, տնտեսական, սոցիալական, մշակութային, գիտական ոլորտների վրա, ապահովեցին երկրում այնպիսի անհրաժեշտ պայմանների ստեղծումը, որպեսզի դեմոկրատիան դառնա սովետական մարդկանց սոցիալիստական ապրելակերպի անկապտելի գիծը: Սովետական սահմանադրական համակարգի պարունակած իրավաստեղծական պոտենցիալը նպաստեց ընդհանուր միութենական և հանրապետական օրենսդրության հետագա զարգացմանն ու կատարելագործմանը, որը նպատակամղված է դեմոկրատիայի խորացմանն ու ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման ծավալմանը: Այդ կապակցությամբ, մասնավորապես, առաջին պլանի վրա է դրվում սովետական դեմոկրատիայի զարգացման և ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման խորացման տեսական ու գործնական կողմերն ուսումնասիրելու, նրանց փոխպայմանավորվածությունն ու հասարակական և պետական կյանքի մյուս հաստատությունների վրա նրանց ազդեցությունը լուսաբանելու անհրաժեշտությունը:



Ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման՝ որպես դեմոկրատական ֆենոմենի, էությունն է ժողովրդի լիիշխանությունը, բոլոր քաղաքացիների, նրանց կազմակերպությունների ու միավորումների լայն ու համապարփակ ընդգրկումը հասարակական ու պետական գործերի կառավարման մեջ: Մինչդեռ, սոցիալիստական դեմոկրատիայի հասկացությունը ներկայանում է ավելի տարունակ, քանի որ ներառում է քաղաքացիների ոչ միայն քաղաքական, այլև սոցիալ-տնտեսական ու անձնական իրավունքները, որոնք դուրս են գալիս ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման հասկացության սահմաններից: Դրա հետ մեկտեղ դեմոկրատիան սոցիալիստական ինքնակառավարման հիմնական բնորոշումն է, որը բացահայտում է նրա էական բնութագրերը: Պետք է համաձայնել Բ. Ն. Տոպորնինի հետ, որ «ավելի ընդհանրացված ձևով ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարումը կարելի է բնորոշել իշխանության ու կառավարման առիթով ստեղծված հասարակական հարաբերությունների միջոցով: Դրանք այնպիսի հարաբերություններ են, որոնք հասարակության մեջ կազմավորվում են սոցիալիստական հեղափոխության հաղթանակից հետո, որը ոչնչացնում է բնակչության բաժանումը կառավարողների ու կառավարվողների՝ պետական և հասարակական գործերի կառավարմանը աշխատավորական զանգվածների ավելի ու ավելի լայն ու ներգործուն մասնակցության մասին լենինյան գաղափարների հիման վրա» (Топорнин Б. Н. Теория и практика социалистического самоуправления народа: актуальные проблемы.—«Социалистическое самоуправление: опыт и тенденции развития» գրքում, М., ИГПАН, 1986, с. 9): Համանման միտք է արտահայտում Ի. Մ. Ստեպանովը. «Սոցիալ-պատմական լայն պլանով ինքը՝ պրոլետարական հեղափոխության ակտը, նշանակում է ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման համակարգի հաստատում»: (Степанов И. М. Социалистический конституционализм и концепция самоуправления народа. Նույն տեղը, էջ 46):

Պատմականորեն ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարումը կազմավորվում է աստիճանաբար: Իր կազմավորման նախնական փուլերում այն հանդես է գալիս բանվորների և գյուղացիների իշխանության ձևով, իսկ սոցիալական բազայի ընդլայնման հետ զուգընթաց վերածվում է աշխատավորների իշխանության, և, վերջապես, արդի պայմաններում հանդես է գալիս որպես ամբողջ ժողովրդի իշխանություն: Այսպիսով, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարումը, առաջանալով որպես հասարակության մեջ կառավարման ձևերից մեկը, զարգացած սոցիալիզմի պայմաններում դառնում է նրա համապարփակ ձևը: Այն հասարակական առաջադիմության օբյեկտիվորեն պայմանավորված փուլն է և հետագայում վերաճում է ժողովրդի կոմունիստական հասարակական ինքնակառավարման:

Ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման ձևավորումն ու զարգացումը հենվում է սահմանադրական ամրակուռ հիմքի վրա, իր վավերագրումն է գտնում սոցիալիստական պետությունների հիմնական օրենքների նորմաների մեջ: Հետևաբար, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման հետագա խորացումը կապված է նրա սահմանադրական հիմքերի կատարելագործման հետ: Կարևոր է նաև հաշվի առնել, որ «ինքնակառավարման հիմունքները զարգանում են ոչ թե մեր պետականությունից դուրս, այլ նրա ներսում՝ ավելի ու ավելի խոր թափանցելով պետական ու հասարակական կյանքի բոլոր ծակոտիները, հարստացնելով դեմոկրատական ցենտրալիզմի բովանդակությունը, ամրապնդելով դրա սոցիալիստական բնույթը» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 77): Ուստի անթույլատրելի է պետական կառավարումը բացառել ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման համակարգից, քանի որ սոցիալիզմի պայմաններում պետությունը հանդես է գալիս որպես մի համապարփակ կազմակերպություն, որը իրականացնում է մարդկանց գործունեության կառավարման հասարակական պրոցեսների իրավական կարգավորումը: Այսպիսով, պետական իշխանությունը հանդես է գալիս որպես համաժողովրդական իշխանության կարևորագույն ձև, քանի որ ժողովուրդն իր իշխանությունն իրականացնում է ինչպես պետական ապարատի միջոցով, այնպես էլ անմիջականորեն: Այս դիրքերից պետական ապարատի կառուցվածքի կատարելագործումը գնահատելիս, նրա գործունեության պրոֆեսիոնալ հիմունքների ուժեղացումը պետք է դիտել որպես սովետական պետական կառավարման մեջ պրոֆեսիոնալիզմի ու դեմոկրատիզմի օրգանական զուգակցման արդյունք: Հետևաբար, պետությունը և ինքնակառավարումը սոցիալիզմի ժամանակ զուգակցվող և նշանակալի չափով համընկնող ֆենոմեններ են:

Որպես ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման իրականացման մեխա-

նիզմ հանդես է գալիս ամբողջ սոցիալիստական քաղաքական սիստեմը, նրա բոլոր բաղադրամասերը: Այդ սիստեմի մեջ է մտնում, առաջին հերթին, ՍՄԿԿ-ն՝ սոցիալիստական ինքնակառավարման զարգացման առաջատար ուժը, ժողովրդական դեպուտատների սովետները՝ ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման գլխավոր օղակը, մասսայական հասարակական կազմակերպությունները, ժողովրդական վերահսկողությունը, աշխատավորական կոլեկտիվները, անմիջական դեմոկրատիայի ձևերը: Հետևաբար, սոցիալիզմի պայմաններում քաղաքական իշխանությունը բնութագրելիս չի կարելի սահմանափակվել լոկ մատնանշելով պետական իշխանությունը: Սովետական քաղաքական սիստեմի անմիջական հաստատությունների դերը չի հանգում պետական իշխանությանը աշխատավորների մասնակցության ապահովմանը միայն: Ինչպես հասարակական կազմակերպությունները, այնպես էլ աշխատավորական կոլեկտիվները, ժողովրդական վերահսկողությունը և այլն, հանդես են գալիս որպես ինքնուրույն քաղաքական հաստատություններ, որպես ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման օրգանական բաղադրամասեր:

Խորամուխ լինելով ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման խորացման՝ ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած կուրսի էության մեջ, անհրաժեշտ է նկատի ունենալ, որ խոսքը մեր քաղաքական սիստեմի ինչ-որ բեկման մասին չէ, այլ նրա բոլոր հնարավորությունների առավելագույն արդյունավետությամբ օգտագործելու մասին, այն մասին, որ կուսակցության, սովետների, պետական մարմինների, հասարակական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների աշխատանքը հագեցնենք խոր դեմոկրատական բովանդակությամբ: ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումում նշվեց. «մենք կկարողանանք ժողովրդի նախաձեռնությունն ու ստեղծագործությունը իսկապես բարձրացնել, եթե մեր դեմոկրատական հաստատությունները ակտիվորեն և ռեալ կերպով ազդեն յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի իրավիճակի վրա՝ լինի դա պլանավորում, թե աշխատանքի կազմակերպում, նյութական և մյուս բարիքների բաշխում, առավել հեղինակավոր և բանիմաց մարդկանց ընտրություն և ղեկավար պաշտոններում նրանց առաջադրում: Կարելի է վստահորեն ասել, որ յուրաքանչյուր սովետական մարդ այդ փոփոխությունները որքան ավելի շուտ զգա սեփական փորձով, այնքան ավելի ակտիվ կլինեն նրա քաղաքացիական դիրքորոշումը, բոլոր հասարակական, պետական գործերին նրա մասնակցությունը» **(ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի նյութերը,** էջ 35—36):

Այս խնդիրների լուծման համար հրատապ հարց է ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման խորացման ներգործուն մեխանիզմի ստեղծումը, որը հենված լինի իրավական ամուր հիմքի վրա, մի բան, որ կապված է այնպիսի օրենսդրական ակտերի մշակման հետ, որոնք կոչված են ապահովելու այդ մեխանիզմի արդյունավետ աշխատանքը: Այդ պատճառով ՍՍՀՄ օրենսդրության կատարելագործման ուղղությամբ ՍՍՀՄ օրենսդրական ակտերի, ՍՍՀՄ կառավարության որոշումների ու առաջարկությունների նախապատրաստման 1986—1990 թվականների պլանում, որը հաստատվել է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1986 թվականի օգոստոսի 28-ի որոշմամբ, առաջին բաժինը կազմում է սոցիալիստական դեմոկրատիայի, քաղաքացիների սոցիալիստական ինքնակառավարման, իրավունքների ու ազատությունների հետագա զարգացման հարցերի վերաբերյալ օրենսդրությունը (տե՛ս Ведомости Верховного Совета СССР, 1986, № 32, с. 782):

Համանման բաժիններ կան նաև միութենական հանրապետությունների օրենդրական ակտերի, հանրապետական օրենսդրության կատարելագործման վերաբերյալ նրանց կառավարությունների որոշումների ու առաջարկությունների նախապատրաստման՝ հիշյալ ժամանակաշրջանի պլանների նախագծերում: Մասնավորապես, ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի յոթերորդ նստաշրջանի քըննարկմանն է ներկայացվում պետական կյանքի կարևոր հարցերի համաժողովրդական քննարկման վերաբերյալ ՍՍՀՄ օրենքի նախագիծը: Պլանում նախատեսված են նաև նորմատիվ ակտեր բանվորների ու ծառայողների ժողովների դերի բարձրացման մասին, այն հարցերի շրջանը ընդլայնելու մասին, որոնց վերաբերյալ աշխատավորական կոլեկտիվների որոշումները վերջնական են, ձեռնարկությունների մակարդակով աշխատավորական կոլեկտիվների խորհուրդների ստեղծման և ձեռնարկությունների ղեկավար աշխատողների առանձին կատեգորիաների ընտրովիության աստիճանական ընդլայնման մասին, նորմատիվ ակտեր այն հարցերի շրջանը ընդլայնելու մասին, որոնք կարող են պետական մարմինների կողմից լուծ-



վել համապատասխան հասարակական կազմակերպությունների մասնակցությամբ կամ նախնական համաձայնությամբ միայն, ինչպես նաև մի շարք դեպքերում այդ կազմակերպություններին կառավարչական որոշումների իրականացումը կասեցնելու իրավունք վերապահելու մասին: ՍՍՀՄ Գերագույն սովետի յոթերորդ նստաշրջանը քննարկելու է նաև պաշտոնատար անձանց կողմից քաղաքացիների իրավունքները խախտող ապօրինի գործողությունները դատարանում գանգատարկելու կարգի վերաբերյալ ՍՍՀՄ օրենքի նախագիծը:

Ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման խորացումը ամենից առաջ վերաբերում է էկոնոմիկային՝ հասարակության կյանքի վճռական ոլորտին, որտեղ զբաղված են տասնյակ միլիոնավոր մարդիկ: Ուստի «արտադրությունում դեմոկրատիայի զարգացումն ամբողջությամբ վերցրած սոցիալիստական դեմոկրատիայի խորացման և ընդլայնման կարևորագույն ուղղությունն է» (Նույն տեղը, էջ 36): Այդ կապակցությամբ Մ. Ս. Գորբաչովի զեկուցման մեջ մատնանշվում է, որ անհրաժեշտ է ընդունել օրենք պետական ձեռնարկության մասին, որը նպատակամղված լինի ՍՄԿԿ XXVII համագումարի գլխավոր հիմնադրույթներից մեկի՝ անմիջական դեմոկրատիայի արդյունավետ օգտագործման գծի իրականացմանը: Ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման խորացման պրոցեսի վառ դրսևորումը եղավ հիշյալ օրենքի նախագծի համաժողովրդական քննարկումը:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղաքական զեկուցման վերաբերյալ կուսակցության XXVII համագումարի ընդունած բանաձևում ճիշտ ու ժամանակին է համարված առաջադրել ընտրական պրակտիկայի կատարելագործման հարցը: ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումի որոշման մեջ նշված՞ է. «Հասարակական կյանքի դեմոկրատացման, կադրային քաղաքականության հանգուցային ուղղություններից մեկը սովետական ընտրական սիստեմի կատարելագործումն է: Կարևոր է սովետների դեպուտատության թեկնածուների առաջադրման ու քննարկման պրակտիկան ազատել ձևականության տարրերից, ընտրողին հնարավորություն ընձեռել արտահայտելու իր վերաբերմունքը մեծ թվով թեկնածությունների նկատմամբ, արդյունավետորեն մասնակցելու ընտրական պրոցեսին՝ նրա բոլոր փուլերում» (Նույն տեղը, էջ 110): Քաղաքական առումով դա նշանակում է սովետական ընտրական սիստեմի դեմոկրատիզմի խորացում, ընտրողների ավելի արդյունավետ ու իրական մասնակցություն նախընտրական և ընտրական կամպանիաների բոլոր փուլերում, իսկ գործնական առումով դա հանգում է այն բանին, որ «աշխատավորական կոլեկտիվներում ու ըստ բնակության վայրի տեղի ունեցող ընտրողների ժողովներում, ինչպես նաև նախընտ-կան խորհրդակցություններում, որպես կանոն, քննարկվի մի քանի թեկնածություն, իսկ ընտրությունները անցնեն ավելի խոշոր ընտրական օկրուգներով, որոնցից յուրաքանչյուրում ընտրվեր մի քանի դեպուտատ» (Նույն տեղը, էջ 41):

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումը մատնանշեց, որ անհրաժեշտ է ձեռնարկել լրացուցիչ միջոցներ, որոնք ուղղված լինեն հրապարակայնության ընդլայնմանը, քննադատության և ինքնաքննադատության, հատկապես ներքևից եկող քննադատության զարգացմանը: «Առողջացնելով հասարակական մթնոլորտը,— նշում է Մ. Ս. Գորբաչովը,— անհրաժեշտ է այսուհետև էլ զարգացնել հրապարակայնությունը: Սա մեր կառուցման բոլոր տեղամասերի աշխատանքի բարելավման հզոր լծակն է, համաժողովրդական վերահսկողության գործուն ձևը... Հավանաբար եկել է ժամանակը ձեռնամուխ լինելու հրապարակայնությունն ապահովող իրավական ակտերի մշակմանը: Դրանք պետք է ապահովեն առավելագույն գաղտնազերծություն պետական ու հասարակական կազմակերպությունների գործունեության մեջ, աշխատավորներին ռեալ հնարավորություն ընձեռեն իրենց կարծիքն արտահայտելու հասարակական կյանքի ցանկացած հարցի առթիվ» (Նույն տեղը, էջ 47): Օրենսդրական ակտերի նախապատրաստական աշխատանքների վերը նշված պլանում նախատեսված է ընդունել ՍՍՀՄ օրենք մամուլի և ինֆորմացիայի մասին:

Հասարակական և պետական կյանքի իրավական հիմքը ամրապնդելու համար խնդիր է դրված մոտ ժամանակում ձեռնամուխ լինել նոր քրեական օրենսդրության մշակմանը, այն հաշվով, որ այն առավել համապատասխանի սովետական հասարակության զարգացման ժամանակակից պայմաններին, ավելի արդյունավետորեն պաշտպանի քաղաքացիների շահերն ու իրավունքները, հանգեցնի կարգապահության և իրավակարգի ամրապնդմանը: Անհրաժեշտություն է առաջացել նաև, որ մենք խորհենք ու միջոցներ ձեռնարկենք բարձրացնելու սովետական դատարանի դերն ու հեղինակությունը, խստիվ պահպանելու դատավորների անկախության սկզբ-

թունքը, վճռականորեն ուժեղացնելու դատախազական հսկողությունը, կատարելագործելու քննչական մարմինների աշխատանքը (տե՛ս նույն տեղը, էջ 50):

Ներկայումս իրավաբանական գիտության առջև խնդիր է դրված՝ ՍՄԿԿ XXVII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումի նյութերի, ինչպես նաև մյուս կարևորագույն կուսակցական փաստաթղթերի խոր վերլուծության հիման վրա մշակել ամբողջական ու կոնստրուկտիվ կոնցեպցիա երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման և հասարակական ու պետական կյանքի վերակառուցման՝ ՍՄԿԿ XXVII համագումարի հավանությանն արժանացած ստրատեգիական կուրսի ապահովման համապատասխան իրավաբանական միջոցների մասին: Ընդ որում պետք է հաշվի առնել, որ խոսքը հեղափոխական կարգի շրջադարձի ու միջոցառումների մասին է:

Գիտական ամրակուռ հիմքի վրա պետք է գործնական առաջարկություններ ու հանձնարարականներ մշակվեն գործող օրենսդրության, իրավական համակարգի բոլոր ոլորտների հետագա զարգացման ու կատարելագործման վերաբերյալ:

Ներկայումս անհրաժեշտություն է առաջացել միասնական հետազոտության շրջանակներում իրականացնել սովետական սահմանադրության տեսության, պատմության ու պրակտիկայի բոլոր գլխավոր կողմերի ամբողջական վերլուծում: Դա հնարավորություն կընձեռեր ձևակերպելու և հիմնավորելու մի շարք նոր տեսական դրույթներ, դրանց վրա հիմնված գործնական հանձնարարականներ, որոնք ուղղված են սահմանադրական-իրավական կարգավորման կատարելագործմանը, ՍՍՀՄ, միութենական և ինքնավար հանրապետությունների հիմնական օրենքների իրավաստեղծական պոտենցիալի իրականացման արդյունավետության բարձրացմանը:

Համակարգային մոտեցման դիրքերից հրատապ է սովետական սահմանադրական համակարգի հիմնական պարամետրերի կարևորագույն բնութագրերի վերլուծումը, նրա այնպիսի հատկությունների լուսաբանումը, ինչպիսիք են նրա ամբողջականությունը, կայունությունը՝ դինամիզմի հետ զուգակցված, նրա գործողության հաշվեկշռվածությունն ու հուսալիությունը: Ընդ որում որպես հասարակական հարաբերությունների սահմանադրական-իրավական կանոնակարգման գլխավոր համակարգաստեղծ գործոն հարկավոր է դիտել ցանկալի սահմանադրական իրավակարգը, որն իրեն համապատասխան սահմանադրական-իրավական ռեժիմով հանդերձ, լինելով սովետական սահմանադրական համակարգի գործողության արդյունքը, մարմնավորում է պետական և հասարակական կյանքի հիմնարար հասարակական հարաբերությունների կարգավորվածության ու կազմակերպվածության նորմատիվ մոդելը:

Ելնելով այն բանի ըմբռնումից, որ ինքնակառավարման գաղափարները ներկայումս անչափ ավելի լայնորեն են ներկայացված կուսակցական փաստաթղթերում, իսկ դա նշանակում է, կոնցեպտուալ կերպով նաև սահմանադրականության մեջ, քան սահմանադրություններում, հարկավոր է վերլուծել ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման սահմանադրական հիմունքների հետագա խորացման գլխավոր ուղղությունները: Ընդ որում սովետական սահմանադրական համակարգի բոլոր օղակների նորմաների ամբողջությունը, որոնք վավերագրում են ողջ լիիշխանության պատկանելությունը ժողովրդին և կարգավորում են նրա իրականացման ձևերը, պետք է դիտվեն որպես գլխավոր սահմանադրական հաստատություն, որն իր մեջ ներառում է ժողովրդական իշխանության մյուս հիմնական հաստատությունները, ժողովրդական ներկայացուցչությունը, ողջ ժողովրդի, ինչպես նաև քաղաքացիների, նրանց կոլեկտիվների, կազմակերպությունների և միավորումների անմիջական մասնակցությունը հասարակության և պետության գործերի կառավարմանը՝ նրանց զանազան ենթահաստատություններով հանդերձ: Պետք է նկատի ունենալ նաև, որ ժողովրդական իշխանության հաստատությունը և դրա կազմի մեջ մտնող մյուս սահմանադրական հաստատությունները կազմում են ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման սահմանադրական հիմունքների համակարգը:

Ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման սահմանադրական մոդելի կարևորագույն բաղադրամասերն են ՍՍՀՄ սահմանադրության մեջ և միութենական ու ինքնավար հանրապետությունների սահմանադրություններում վավերագրված՝ ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման գլխավոր օղակի՝ ՍՍՀՄ-ի, միութենական և ինքնավար հանրապետությունների քաղաքական հիմքը կազմող ժողովրդական դեպուտատների սովետների իրավական հիմքերը: Հաշվի առնելով այդ հանգամանքը, ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումում խնդիր դրվեց՝



կուտակված փորձի հիման վրա «... մեկ անգամ ևս ամենայն մանրամասնությամբ խորամուխ լինել սովետական պետական շինարարության հարցերի վերաբերյալ լենինյան ժառանգությանը, այն օգտագործել այսօր հասարակության առջև կանգնած խնդիրների լուծման համար»: Ինչպես նշել է Մ. Ս. Գորբաչովը, «Լենինը սովետական պետության իշխանությունը և ժողովրդի ինքնակառավարումը երբեք չէր հակադրում իրար: Նա սովետները բարձր էր գնահատում այն պատճառով, որ դրանք ներառում են այդ երկու հատկությունները, բանվորների ու գյուղացիների իշխանության մարմիններ են և ապահովում են նրանց միավորումը, համախմբումը, ինքնակառավարումը» (Գորբաչով Մ. Ս. **Մասսաների կենդանի ստեղծագործությունը**: «Հայաստան» հրատ., 1985, էջ 19): Ելնելով սովետների լենինյան ըմբռնումից՝ ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը 1986 թվականի հուլիսի 25-ին ընդունեցին որոշում «ՍՄԿԿ XXVII համագումարի լույսի ներքո սոցիալ-տնտեսական զարգացման արագացման համար ժողովրդական դեպուտատների սովետների դերի հետագա բարձրացման և պատասխանատվության ուժեղացման միջոցառումների մասին»: Այնտեղ նշված է. «Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման՝ ՍՄԿԿ XXVII համագումարի հավանությանն արժանացած ստրատեգիական կուրսի իրականացումը պահանջում է ժողովրդական դեպուտատների սովետների՝ ՍՍՀՄ քաղաքական հիմքի, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման գլխավոր օղակի, աշխատանքի հետագա ակտիվացում: Կարևոր է ուժեղացնել նրանց գործունեությունը սովետական հասարակության առջև ծառացած խնդիրների լուծման համար աշխատավորական լայն մասսաների մոբիլիզացման, մարդկանց պահանջմունքների ու կարիքների բավարարման համար բոլոր հնարավորությունների ավելի լավ օգտագործման նպատակով» (Ведомости Верховного Совета СССР, 1986, № 31, стр. 593).

Մեր կարծիքով, ներկայումս խնդիր է դրված՝ նորացնել ամբողջ ընդհանուր միութենական և հանրապետական օրենսդրությունը ժողովրդական դեպուտատների սովետների մասին, ինչպես նաև մշակել սովետների մասին սահմանադրական օրենսդրության հետագա կատարելագործման տեսական հիմունքները:

Այսպիսով, սոցիալիստական դեմոկրատիայի ծավալումը և ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման խորացումը ընդգծում են սովետական սահմանադրություններում և ամբողջ գործող օրենսդրության մեջ վավերագրված նրանց իրավական հիմքերի հետագա զարգացման ու կատարելագործման անհրաժեշտությունը:

# ՀԱՅ ՄԱՐՔՍԻՍՏ-ԼԵՆԻՆՅԱՆՆԵՐԻ ԱՎԱՆԴԸ ԱՆԴՐԿՈՎԿԱՍՈՒՄ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԳԱՂԱՓԱՐԱՏԵՍԱԿԱՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

**Կ. ՄԵԼՔՈՆՅԱՆ**

**ԱՅՍ ՏԱՐԻ ՄԵՐ ԵՐԿՐԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԸ,** մոլորակի ողջ առաջադեմ մարդկությունը հանդիսավորությամբ են նշում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության՝ 20-րդ դարի գլխավոր իրադարձության, պանծալի 70-ամյակը:

Նոր կյանքի հաստատման համար պայքարում անմնացորդ նվիրումով մասնակցեց հայ մարքսիստ-լենինյանների մի ստվար խումբ: Լենինյան գվարդիայի հայ մարտիկների մեջ հատկապես առանձնանում են Ստեփան Շահումյանի, Բոգդան Կնունյանցի, Սուրեն Սպանդարյանի, Ալեքսանդր Մյասնիկյանի և Սարգիս Կասյանի անունները: Նրանք պատկանում են պրոլետարական հեղափոխականների այն պայծառ համաստեղությանը, որոնց մասին Վ. Ի. Լենինն ասել է. «... առանց «մի տասնյակ» տաղանդավոր (իսկ տաղանդավորները հարյուրներով չեն ծնվում), փորձված, պրոֆեսիոնալ կերպով պատրաստված և ուսուցման երկարատև դպրոց անցած առաջնորդների, առանց հիանալի կերպով միմյանց համամիտ առաջնորդների անհնարին է ժամանակակից հասարակության մեջ որևէ դասակարգի տոկուն պայքարը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 6, էջ 153—154):

Սոցիալիստական հեղափոխության տեսության մասին հայ մարքսիստ-լենինյանների հայացքների ուսումնասիրության հրատապությունը պայմանավորված է նաև նրանով, որ սփյուռքում տակավին չեն դադարել «Հայ հեղափոխական դաշնակցություն» կուսակցության գաղափարական դիվերսիաները սոցիալիզմի, ՍՍՀՄ-ի և Սովետական Հայաստանի դեմ: Իսկ Անդրկովկասում և Հայաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի մասին իրականության աղավաղումները կենտրոնական տեղ են գրավում այդ գաղափարական դիվերսիաների ընդհանուր թեմատիկայի մեջ: Դաշնակցականների այժմյան պարագլուխները, իրենց նախորդների օրինակով, փորձում են ապացուցել, թե Անդրկովկասում և մասնավորապես Հայաստանում սոցիալիստական հեղափոխություն տեղի չի ունեցել, թե իբր Սովետական Ռուսաստանի զորքերը ուղղակի օկուպացրել են այդ երկրամասը: Սփյուռքահայ հետադիմական և մանրբուրժուական մամուլում ուղղակի փորձեր են արվել նսեմացնելու նաև այն գաղափարատեսական ավանդը, որ ներդրել են հայ բոլշևիկները, մասնավորապես Ստ. Շահումյանը և նրա զինակիցները, Անդրկովկասում և Հայաստանում սոցիալիստական հեղափոխության նախապատրաստման և իրականացման գործում:

Հայ մարքսիստ-լենինյանների ստեղծագործական ժառանգության մեջ խորությամբ ու բազմակողմանի լուսաբանված է սոցիալիստական հեղափոխության տեսությունը: Նրանք գիտականորեն հիմնավորել են Անդրկովկասում սոցիալիստական հեղափոխության օբյեկտիվ նախադրյալների հասունացման, սուբյեկտիվ գործոնի ձևավորման, շարժիչ ուժերի, իրականացման ուղիների և ձևերի դրսևորման, դեմոկրատիայի, սոցիալական և ազգային ազատագրության համար մղվող պայքարի հարցերը:

Հայ մարքսիստ-լենինյանները տակավին դարասկզբին գրած իրենց աշխատություններում ապացուցում էին, որ ինչպես Եվրոպայում, այնպես էլ Ռուսաստանում և Անդրկովկասում սոցիալիստական հեղափոխության **օբյեկտիվ նախադրյալները** ստեղծվում են կապիտալիզմի զարգացման բնապատմական օրինաչափ ընթացքով:



Նրանք համոզիչ փաստերով քննադատում էին ռուս լիբերալ նարոդնիկների, լեգալ մարքսիստների և նրանց հայ հետևորդների այն կարծիքները, թե իբր կապիտալիզմը Անդրկովկասում և Հայաստանում զարգանալու հեռանկար չունի, հետևապես սոցիալիզմի և սոցիալիստական հեղափոխության մասին ուսմունքը իր համար ռեալ «հող չի գտնի», ուստի և «կիրառելի չէ»: Հայ մարքսիստները ապացուցում էին, որ Անդրկովկասն ու Հայաստանն արդեն թևակոխել են կապիտալիստական զարգացման օրինաչափ և անխուսափելի ուղին: Նրանք իրենց առաջին ծրագրային փաստաթղթում՝ «Հայ սոցիալ-դեմոկրատների միության մանիֆեստում» գրել են. «Կովկասը Ռուսիայից հետո սկսեց ոտք դնել կապիտալիստական զարգացման ընդհանուր ուղու վրա: Այստեղ, ինչպես և ամենուրեք, կապիտալի դյութական պարը սկսվում է միևնույն, նրա համար բնորոշ ձևերով. կապիտալը ոսկյա հորձանքներով հոսում է դեպի արդյունաբերությունը, հեղեղում է քաղաքները, դուրս է քաշում հյուղերից նրա բնակիչներին, ժողովում է նրանց մի քանի որոշ կենտրոններում, տապալում է մինչ այդ գոյություն ունեցող մի քանի արդյունաբերական հիմնարկությունները, նրանց ավերակների վրա հաստատում է խոշոր ձեռնարկություններ և այդպիսով ամրացնում յուր հետագա զարգացման հիմքերը: Հետզհետե առաջանում են այնպիսի խոշոր արդյունաբերական կենտրոններ, ինչպես են Բաքուն, Թիֆլիսը և Բաթումը» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 1, էջ 43—44):

Նրանք նշում էին, որ կապիտալիզմը թափանցել է նաև անդրկովկասյան և հայկական գյուղը, քայքայում է գյուղական այն համայնքը, որի վրա էին իրենց հույսը դնում ռուս և հայ նարոդնիկները: «Ո՞վ չգիտի, որ հայկական գյուղն էլ ենթարկված է արդեն դրամական տնտեսության և կապիտալիստական արդյունագործական հարաբերությունների ազդեցության: **Հողի** տեղը, որ ամենամեծ ուժն էր գյուղացու կյանքում, որ անսահման իշխում էր գյուղացու վրա, այժմ բռնել է **փողը**»,— գրում էր Շահումյանը 1906 թ. (նույն տեղը, էջ 153): Այնուհետև հայ մարքսիստ-լենինյանները ցույց էին տալիս այն անխուսափելի սոցիալ-քաղաքական հետևանքները, որ բերում էր կապիտալիզմի զարգացումը. «Յուր գործունեությունը կենտրոնացնելով քաղաքներում, կապիտալը մի կողմից ստեղծում է խոշոր կապիտալիստներ, որոնք արտադրության միջոցների սեփականատերերն են, մյուս կողմից էլ ազգաբնակության միջին խավերը դառնում են չունևորներ, որ բացի իրանց ֆիզիկական ուժից ոչինչ չունեն: Կապիտալիստ և բանվոր, բուրժուա և պրոլետար հասկացությունները ստանում են ռեալ գոյություն: Առաջինը կապիտալի ներկայացուցիչն է, երկրորդը՝ աշխատանքի» (նույն տեղը, էջ 44):

Դասակարգային նույն բևեռացումն էր կատարվում նաև գյուղում. այստեղ ևս հասարակությունը բաժանվում էր աշխատանքի և հողային կապիտալի ներկայացուցիչների: Քայքայված գյուղացիների մի մասը հողազրկվելով, շտապում էր քաղաք՝ լրացնելով քաղաքային պրոլետարիատի շարքերը: «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում» գրքում Վ. Ի. Լենինը նշել է, որ Կովկասի քաղաքային բնակչությունը 1863 թվի 350 հազարից 1897 թ. հասավ 900 հազարի (տե՛ս ԵԼԺ, հ. 3, էջ 755): Միայն Բաքվում արդեն ապրում էր 260 հազար մարդ, իսկ կովկասյան հանքարդյունաբերության բանվորների թիվը 1877 թվի համեմատությամբ 1890 թվին աճեց 5 անգամ:

Ռուսաստանում և Անդրկովկասում կապիտալիզմի զարգացման և սոցիալիստական հեղափոխության օբյեկտիվ նախադրյալների ստեղծման հարցերը հանգամանորեն լուսաբանված են Ստ. Շահումյանի «Դասակարգերը ժամանակակից եվրոպական հասարակության մեջ», «Էվոլյուցիոնիզմն ու ռևոլյուցիոնիզմը հասարակական գիտության մեջ», «Կուլտուր-ազգային ավտոնոմիայի մասին», Ս. Սպանդարյանի «Դարձյալ ամնիստիայի մասին», «Գործազրկության մասին», «Բանվորական արհեստակցական միությունների մասին» և մի քանի այլ աշխատություններում ու հոդվածներում: Դրանցում Ստ. Շահումյանը և Ս. Սպանդարյանը հիմնավորում էին այն միտքը, որ կապիտալիզմի ներհակությունները ստեղծում են սոցիալիստական հեղափոխության **սոցիալ-քաղաքական նախադրյալները,** որ կապիտալի կենտրոնացմամբ և համակենտրոնացմամբ սրվում է հակասությունը կապիտալիստական արտադրողական ուժերի զարգացման մակարդակի և արտադրական հարաբերությունների բնույթի միջև, և որ այդ հակասությունների սրումը անխուսափելիորեն տանում է դեպի դասակարգային հակամարտությունների հանգուցալուծում՝ դեպի սոցիալիստական հեղափոխություն:

Կապիտալիստական արտադրությունը բնութագրվում է **«արտադրության հասա-**

**բակական բնույթով և հասարակական արտադրության արդյունքները մասնավոր կերպով, անձնապես (անհատորեն) յուրացնելու բնույթով»,**— գրել է Ս. Սպանդարյանը (Ս. Սպանդարյան, **Ընտիր երկեր**, «Հայաստան» հրատ., 1982, էջ 164): Վ. Ի. Լենինի օրինակով հայ մարքսիստ-լենինյաններն ուսումնասիրեցին և վերլուծեցին իմպերիալիզմի՝ որպես կապիտալիզմի բարձրագույն և վերջին ստադիայի, զարգացման առանձնահատկությունները: Այդ աշխատություններում ցույց է տրված, որ Կովկասը ավելի ուշ ոտք դրեց զարգացման կապիտալիստական ուղին, այն ժամանակ, երբ Եվրոպայում և Ռուսաստանում կապիտալիզմը թևակոխել էր զարգացման իմպերիալիստական փուլը: Ուստի և հենց սկզբից էլ Կովկասին հատուկ էր ռուս, օտարերկրյա և տեղական բուրժուազիային պատկանող խոշոր կապիտալիստական մոնոպոլիստական միավորումների կազմավորումը: Իսկ այդպիսի միավորումներն էլ ավելի էին կենտրոնացնում կապիտալը, ավելի էին բարձրացնում աշխատանքի հանրայնացման և հասարակական կյանքի միջազգայնացման մակարդակը:

Իմպերիալիզմը, նշել է Ս. Սպանդարյանը, խորտակում է ազգային կյանքի պատնեշները, ժողովուրդների կյանքը կախման մեջ դնում միմյանցից, ստացվում է այնպես, որ հասարակական աշխատանքը ընդգրկում է ոչ միայն ամբողջական գյուղեր, քաղաքներ, երկրներ, այլև ամբողջ աշխարհը. ստեղծվում են համաշխարհային վիթխարի արհեստանոցներ, ուր աշխատում են տասնյակ և հարյուր միլիոնավոր մարդիկ՝ ստեղծելով հասարակական բարիքներ, իսկ այդ բարիքները յուրացվում են մի բուռ միլիոնատերերի կողմից: Նրանք գտնում էին, որ հենց այդտեղ է թաքնված կապիտալիստական հասարակարգի բոլոր չարիքների՝ գործազրկության, ընչազրկության, ճգնաժամերի պատճառները: Կապիտալիզմը ցնցվում է «արտադրական վիթխարի ուժերի և ունեցվածքային հարաբերությունների ընդհարման» հետևանքով, այն կաշկանդում է «այդ ուժերը, արգելք հանդիսանում նրանց զարգացմանը» (նույն տեղը, էջ 165): Եվ նման վիճակից դուրս գալու ելքը մեկն է. **«Անհրաժեշտ է արտադրության հասարակական պրոցեսին միացնել նաև նրա արդյունքների հասարակական յուրացումը**՝ այսինքն՝ ոչնչացնել հակասության երկրորդ մասը՝ **յուրացման անձնական ձևը:** Այդ նշանակում է գոյություն ունեցող կապիտալիստական տնտեսությունը փոխարինել ամբողջ տնտեսության հասարակական կազմակերպությամբ, որտեղ հասարակական աշխատանքի արդյունքը պատկանի ամբողջ հասարակությանը» (նույն տեղը, էջ 167): Իսկ դա կարելի է անել միայն ու միայն սոցիալիստական հեղափոխության միջոցով:

Սոցիալիստական հեղափոխության իրականացման համար բավական չէ միայն տնտեսական և սոցիալ-քաղաքական նախադրյալների առկայությունը: Թեև դրանք կազմում են հեղափոխության օբյեկտիվ տնտեսական հիմքը, բայց իրենք իրենց չեն դառնա հեղափոխություն:

Հեղափոխության իրականացման համար անհրաժեշտ են նաև սուբյեկտիվ գործոնի առկայություն և նրա հասունության որոշակի աստիճան: Օբյեկտիվ նախադրյալների և սուբյեկտիվ գործոնի միասնությունը ամեն մի հեղափոխության օրենքն է: Չի կարելի իրարից կտրել և բացարձակացնել դրանցից որևէ մեկը: Ստ. Շահումյանն իր «Էվոլյուցիոնիզմը և ռևոլյուցիոնիզմը հասարակական գիտության մեջ» աշխատությունում (1905 թ.) վճռական հակահարված է տվել թե՛ «էվոլյուցիոնիստներին», որոնք գերագնահատելով աստիճանական զարգացումը, թերագնահատում են հեղափոխությունների՝ որպես որակական թռիչքային անցումների դերը, թե՛ «ռևոլյուցիոնիստներին», որոնք ընկնում էին մյուս ծայրահեղության մեջ, ընդունելով սոսկ թռիչքային զարգացումը և գտնում էին, թե անկախ օբյեկտիվ նախադրյալների առկայությունից ցանկացած երկրում, ցանկացած ժամանակ կարելի է կատարել ցանկացած բնույթի հեղափոխություն:

Շահումյանը ցույց է տալիս, որ «էվոլյուցիոնիզմը» անխուսափելիորեն տանում է դեպի ռեֆորմիզմ, իսկ «ռևոլյուցիոնիզմը» դեպի սուբյեկտիվիզմ, վոլյունտարիզմ «ինքնաբավ, ոչինչ հաշվի չառնող անարխիական «բունտարարություն»» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 1, էջ 122): Կոնկրետացնելով իր միտքը Ռուսաստանում 1905 թ. սկսված հեղափոխության նկատմամբ, Շահումյանն ապացուցում էր, որ ստեղծված օբյեկտիվ նախադրյալներն այն ժամանակ հնարավոր էին դարձնում միայն բուրժուադեմոկրատական հեղափոխության իրականացումը, որի վրայով անհնարին էր թռչել դեպի սոցիալիզմ, ինչպես ցանկանում էին այդ անել գերհեղափոխական «ռևոլյուցիոնիստները»: Ելնելով մարքս-լենինյան ուսմունքից՝ Ստ. Շահումյանը գտնում



էր, որ սոցիալիստական հեղափոխության սուբյեկտիվ գործոնի կարևորագույն տարրերն են՝ 1) բանվոր դասակարգի կազմակերպվածությունն ու գիտակցականությունը, նրա ինքնուրույնությունն ու վճռականությունը պայքարը մինչև վերջ հասցնելու գործում, 2) նրա դաշինքը աշխատավոր գյուղացիության և կիսապրոլետարական մյուս մասսաների հետ և 3) բանվոր դասակարգի ինքնուրույն-քաղաքական կուսակցության առկայությունը: Բանվոր դասակարգի ինքնուրույն քաղաքական կուսակցությունը հայ լենինյանները դիտում էին որպես սոցիալիստական հեղափոխության սուբյեկտիվ գործոնի կարևորագույն տարրը— նրա միջուկը: Այդ նա է կազմակերպվածություն և գիտակցականություն մտցնում բանվոր դասակարգի հեղափոխական շարժման մեջ, մշակում նրա պայքարի ստրատեգիան ու տակտիկան, ղեկավարում հեղափոխական գրոհները:

**«Միայն կազմակերպվելով որպես միասնական, միանգամայն ինքնուրույն կուսակցություն, առանց ազգությունների տարբերության, Ռուսաստանի պրոլետարիատը կարող է դառնալ այն քաղաքական հզոր ուժը, որն ընդունակ կլինի դառնալու երկրի բոլոր հեղափոխական ուժերի իսկական ավանգարդը և ի վերջո խորտակելու ինքնակալությունը»,**— գրել է Բ. Կնունյանցը «Искра»-ի 51-րդ համարում (Բ. Կնունյանց, **Ընտիր երկեր**, «Հայաստան» հրատ., 1978, էջ 95):

Սոցիալիստական հեղափոխության տեսության բաղկացուցիչ մասն է լենինյան ուսմունքը **հեղափոխական իրադրության** մասին, ըստ որի հեղափոխության ծագման համար բավական չէ օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների առկայությունը, անհրաժեշտ է նաև, որպեսզի դասակարգային այդ ներհակությունները հասնեն սրման ծայրագույն աստիճանին, որպեսզի հեղափոխական մասսաների կրքերը եռան, որ նրանք պատրաստ լինեն նետվելու վճռական գրոհի՝ հին կարգերը տապալելու և նոր կարգեր ստեղծելու համար: Հեղափոխության նախօրեին ստեղծված այդպիսի իրավիճակն էլ հենց կոչվում է հեղափոխական իրադրություն: Հայ մարքսիստ-լենինյանները ցույց են տվել, որ այդպիսի հեղափոխական իրադրություն (կամ ինչպես իրենք էին անվանում «հեղափոխական դրություն», «հեղափոխական կացություն») Ռուսաստանում և Անդրկովկասում ստեղծվել էր 1905—1907 թթ. հեղափոխության նախօրեին, 1917 թ. փետրվար-հոկտեմբերին, իսկ Հայաստանում՝ 1920 թ. մայիս-նոյեմբերին:

1908 թ. հոկտեմբերին, անդրադառնալով 1905 թ. հոկտեմբերի 17-ի մանիֆեստի 3-րդ տարեդարձին, Ստ. Շահումյանը «Бакинский рабочий» թերթում գրել է. «Իննհարյուրական թվականները՝ ժողովրդական կարիքի սրման տարիները, կյանքի անկոնտրոլ տերերի տիրապետությամբ ստեղծված հին կարգերի վերջնական կրախի տարիները, ներքին անկարգությունների և արտաքին պարտությունների տարիները, երկիրը կրախի հասցրին... Տարբեր դասակարգերի ու խմբերի պայքարը հասավ ծայրահեղ լարման, ճնշված դասակարգերը պրոլետարիատի գլխավորությամբ ասպարեզ ելան ու տիրաբար պահանջեցին փոփոխել անցյալը» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 2, էջ 101): 1905—1907 թթ. հեղափոխությանը նախորդած ժամանակաշրջանին Ստ. Շահումյանի տրված նման բնութագրումը լիովին համընկնում է հեղափոխական իրադրության լենինյան բնորոշման հետ: Այստեղ ընդգծված են բոլոր այն հանգամանքները, որ Վ. Ի. Լենինը համարում էր հեղափոխական իրադրության նշաններ: Դրանք են՝ 1) տիրապետող դասակարգերի համար իրենց տիրապետությունն անփոփոխ պահելու անհնարինությունը, «վերին խավերի» այս կամ այն ճգնաժամը, այն, որ ոչ միայն ստորին խավերը չեն ուզում ապրել, այլև վերին խավերին էլ չեն կարողանում կառավարել նախկին ձևով, 2) ճնշված դասակարգերի կարիքների ու թշվառությունների սովորականից ավելի սրվելը, 3) մատնանշված պատճառների հետևանքով մասսաների ակտիվության նշանակալի բարձրացումը, մասսաներ, որոնք խաղաղ դարաշրջանում թույլ են տալիս իրենց կողոպտել, իսկ փոթորկահույզ ժամանակներում... ներգրավվում են ինքնուրույն պատմական ելույթի մեջ: Հայ լենինյանները նշում էին. Անդրկովկասում և Հայաստանում հեղափոխական իրադրությունը շատ ավելի էր սրվում այն պատճառով, որ երկրամասի պրոլետարիատը, ենթարկվելով եռակի-քառակի շահագործման՝ ցարական միապետության, ռուսական և օտարերկրյա կապիտալիստների ու տեղական ազգային բուրժուազիայի կողմից, գտնվում էր ծայրահեղ վատթար վիճակում: Այստեղ աշխատավորական մասսաների թշվառություններն ու կարիքները «սրվել էին սովորականից ավելի»: Բացի այդ, դիմելով «բաժանիր, որ տիրես» վաղուց փորձված միջոցին, ցարական կառավարությունը հրահրում էր ազգամիջյան կոնֆլիկտներ:

«Նոյեմբերյան հեղափոխությունը Հայաստանում» հոդվածում Ս. Կասյանը

ցույց է տվել, որ ներքին և արտաքին պայմանները «հեղափոխական ճգնաժամային կացություն» էին ստեղծել Հայաստանում 1920 թ. աշնանը: Անբավականությունն ու դժգոհությունը դաշնակցական կառավարությունից հասել էին գագաթնակետին ոչ միայն բանվորների ու գյուղացիների, այլև հասարակության բոլոր խավերի շրջանում: Դրան գումարվել էին իմպերիալիստական տերությունների՝ Թուրքիայի, Գերմանիայի և Անտանտի երկրների ոտնձգությունները Կովկասի և Հայաստանի նկատմամբ, որոնք ավելի էին սրում իրադրությունը: Ստեղծվել էր այնպիսի վիճակ, որ «պետք էր մի հուսահատական ճիչ, մի պայթյուն, որպեսզի հօդս ցնդեր ամբողջ պետությունը որպես օդային ամրոց...» (Ս. Կասյան, **Ընտիր երկեր,** էջ 205): Ահա այդպիսի իրադրության մեջ պայթեց նոյեմբերյան ապստամբությունը, որը հասցրեց Հայաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակին: Ս. Կասյանի այս վկայությունները մի վճռական հակահարված են «դաշնակցության» պարագլուխներին, որոնք հետին թվով ուզում էին և ուզում են ապացուցել, թե իբր Հայաստանում 1920 թ. ո՛չ հեղափոխական իրադրություն էր ստեղծվել, ո՛չ սոցիալիստական հեղափոխություն է տեղի ունեցել, այլ սովետական կարգերը հաստատվել են Սովետական Ռուսաստանի «արտաքին բռնությամբ», պարզապես կատարվել է «սովետիզացիա»:

Մեծ Հոկտեմբերից հետո տեղի ունեցած սոցիալիստական և ազգային ազատագրական հեղափոխությունները վերստին հաստատեցին, որ առանց օբյեկտիվ տնտեսական և սոցիալական-քաղաքական նախադրյալների հասունացման, առանց հեղափոխության սուբյեկտիվ գործոնի՝ հեղափոխական մասսաների ու նրանց պայքարը ղեկավարող քաղաքական կուսակցության ակտիվ գործունեության և առանց հեղափոխական իրադրության ստեղծման անհնար է ամեն մի սոցիալական հեղափոխություն:

Սոցիալիստական հեղափոխության մարքս-լենինյան տեսության մեջ կենտրոնական տեղ է զբաղեցնում ուսմունքը **հեղափոխության շարժիչ ուժերի մասին:** «Մարքսի ուսմունքում գլխավորը պրոլետարիատի, որպես սոցիալիստական հասարակության կերտողի, համաշխարհային-պատմական դերի պարզաբանումն է»,— գրել է Վ. Ի. Լենինը (ԵԼԺ, հ. 23, էջ 1): Ելնելով իմպերիալիստական դարաշրջանում Ռուսաստանում ստեղծված առանձնահատուկ պայմաններից՝ Վ. Ի. Լենինը և նրա զինակիցները գտնում էին, որ պրոլետարիատին վիճակված է հեգեմոն դեր կատարելու ոչ միայն սոցիալիստական, այլև բուրժուադեմոկրատական հեղափոխության մեջ: Հատկանշական է, որ հայ սոցիալ-դեմոկրատները պրոլետարիատի այդ երկակի միսիան ընդգծել են տակավին 1902 թ. գրված «Հայ սոցիալ-դեմոկրատների միության մանիֆեստում», որտեղ մասնավորապես ասվում է. «Ղեկավարել պրոլետարիատի այդ քաղաքական ու տնտեսական կռիվները, դաստիարակել նրան սոցիալիզմի ոգով, կազմակերպել մեկ ընդհանուր համաշխարհային բանակ բանվորական դասակարգի ծայրագույն նպատակին հասնելու համար— ահա սոցիալ-դեմոկրատիայի նպատակը ընդհանրապես և մերը՝ մասնավորապես» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 1, էջ 47): Բայց դրա հետ միասին Մանիֆեստը ընդգծում էր, որ բանվոր դասակարգը նախ և առաջ ընդհարվում է ցարական միապետության հետ, առանց որի վերացման անհնար է առաջ շարժվել դեպի վերջնական նպատակը՝ դեպի սոցիալիզմ:

1905—1907 թթ. հեղափոխության տարիներին հայ մարքսիստ-լենինյանները հենց սկզբից կողմնորոշվեցին դեպի բուրժուադեմոկրատական հեղափոխության բոլշևիկյան ստրատեգիան: Քննադատելով ռուս և կովկասյան մենշևիկներին՝ նրանք գրում էին, որ թեև Ռուսաստանի հեղափոխությունը ևս եվրոպական նախորդ հեղափոխությունների նման բուրժուական է, սակայն նրանում ղեկավար դերը կարող է խաղալ և պետք է խաղա ոչ թե բուրժուազիան, այլ միայն ու միայն պրոլետարիատը: «Իր դասակարգային շահերը գիտակցած, բուրժուազիայի խնամակալության տակից դուրս պրծած, միջազգային սոցիալ-դեմոկրատիայի դրոշի տակ որպես ինքնուրույն դասակարգային կուսակցություն կազմակերպված Ռուսաստանի պրոլետարիատը ոչ միայն արյուն է թափում, այլև ներկա հեղափոխությունում հանդես է գալիս որպես տեր ու տիրական» (նույն տեղը, էջ 133),— գրում է Ստ. Շահումյանը 1905 թ.: Շահումյանն այն համոզմանն էր, որ դա ռուսական հեղափոխության հսկայական առավելությունն է եվրոպական հեղափոխությունների նկատմամբ, քանի որ Ռուսաստանի պրոլետարիատը, մի կողմից, ապահովում է, որպեսզի բուրժուադեմոկրատական հեղափոխությունը հասցվի մինչև վերջ, որը չէր ցանկանում և չէր կարող անել



ամեն բանում կիսակատար բուրժուազիան, մյուս կողմից, հնարավորություն էր ընձեռում անցնելու հեղափոխության մյուս՝ սոցիալիստական փուլին: Բուրժուադեմոկրատական հեղափոխության մեջ պրոլետարիատի դաշնակիցը ամբողջ աշխատավոր գյուղացիությունն է, սոցիալիստական հեղափոխության մեջ նրա հավատարիմ դաշնակիցը չքավոր գյուղացիությունն է և քաղաքի կիսապրոլետարական խավերը: Պրոլետարիատի, հեղափոխության ղեկավարի դերը պայմանավորված է նրանով, որ նա որոշիչ տեղ է զբաղեցնում կապիտալիստական արտադրողական ուժերի մեջ՝ հանդիսանալով ամենակազմակերպված, ամենագիտակից, սոցիալիստական հեղափոխության հաղթանակի մեջ ամենաշահագրգռված դասակարգը:

Ռուսաստանում և Անդրկովկասում գյուղացիությանը վիճակված էր զգալի դեր խաղալու հեղափոխության մեջ ոչ միայն նրա համար, որ ազգաբնակչության մեջ գյուղացիությունը մեծ տոկոս էր կազմում, այլև այն բանի համար, որ այստեղ իրար էին խառնված կապիտալիստական ու կիսաճորտատիրական հարաբերությունները, որոնց վերացման հարցում ամենից շատ շահագրգռված էր գյուղացիությունը: Իսկ գյուղացիությունն ինքը, որքան էլ ստվար լինի և շահագրգռված, չի կարող կազմակերպվել որպես ինքնուրույն հեղափոխական ուժ ու հանդես գալ իր շահերի պաշտպանության համար կռվում: Նա կարող է լինել և պետք է լինի միայն պրոլետարիատի դաշնակիցը, միայն այդ դեպքում նա կարող է ստանալ **«ամբողջ հողն ու ամբողջ ազատությունը, հողն առանց որևէ վճարի, ազատությունն՝ առանց որևէ սահմանափակումի»,**— գրում էր Ս. Սպանդարյանը (**Ընտիր երկեր,** «Հայաստան» հրատ, 1982 թ. էջ 55):

Տակավին չեն կարոցրել իրենց արդիական նշանակությունը նաև հայ մարքսիստ-լենինյանների հայացքները դեմոկրատիայի, սոցիալական և ազգային ազատագրության համար պայքարը հանուն սոցիալիզմի մղվող պայքարի հետ զուգակցելու մասին: Նրանք իրենց գործունեության հենց սկզբից էլ հանդես են եկել հանուն «սոցիալիզմի թագավորության» բանվոր դասակարգի հետևողական հեղափոխական պայքարը ժողովրդի լայն խավերի համար տնտեսական, սոցիալական և դեմոկրատական ազատություններ ձեռք բերելու համար մղվող պայքարի հետ զուգակցելու դիրքերում: Հեղափոխության համար պայքարող ուժերին նրանք հաճախ կոչել են մեկ հավաքական անունով՝ «դեմոկրատիա»: Ս. Սպանդարյանը և Ստ. Շահումյանը բազմիցս նշել են, որ ցարիզմի և բուրժուազիայի դեմ մղվող կռվում պրոլետարիատը մենակ չի կարող հաղթել, այս պատճառով էլ պետք է միանալ ամբողջ ժողովրդի հետ, որպեսզի կարողանալ «հակադրել իր հավաքական ուժը հակառակորդի ուժին»: Նրանք անողոք կերպով մերկացրել են հայ բուրժուական և մանրբուրժուական կուսակցությունների՝ մասնավորապես դաշնակցականների և էսէռների կեղծ-դեմոկրատական քարոզները, թե իբր իրենք արտահայտում և պաշտպանում են «ամբողջ ազգի», «ամբողջ աշխատավոր ժողովրդի» շահերը, մինչդեռ բոլշևիկները հանդես են գալիս իբր միայն պրոլետարիատի նեղ դասակարգային շահերի պաշտպանությամբ:

«Աշխատավոր ժողովուրդը, որի մասին խոսում են սոցիալիստ-հեղափոխականները և դաշնակցականները, մենք պաշտպանում ենք, քանի որ պրոլետարիատի շահերի մեջ են պարփակվում ամբողջ ազգաբնակության շահերը»,— գրել է Ստ. Շահումյանը (ԵԼԺ, հ. 1, էջ 390): Սակայն, նշելով, որ պրոլետարիատը միշտ հեղափոխության մեջ է, որ նա պաշտպանում է ամբողջ ժողովրդի «ամբողջ դեմոկրատիայի շահերը», հայ մարքսիստները բացեիբաց ընդգծում էին. «Բայց ամենից առաջ մենք պրոլետարիատի կուսակցություն ենք, մենք նրան կազմակերպում ենք առանձին, սակայն այս բանը չի խանգարում բոլոր դասակարգերին միասին դուրս գալ ընդհանուր թշնամու դեմ» (նույն տեղը, էջ 390): Ազգային հարցի մարքս-լենինյան տեսությունը բավականին ծավալուն տեղ է զբաղեցնում հայ լենինյանների տեսական ժառանգության մեջ: Ազգային հարցի լուծումը նրանք սերտորեն կապել են սոցիալիստական հեղափոխության մարքս-լենինյան տեսության հետ, այն քննել անդրկովկասյան իրականության առանձնահատկությունների մեկնակետից:

Իրենց աշխատություններում մարքսիստ-լենինյանները զարգացրել են այն միտքը, որ հեղափոխության ուղիների ընտրության հարցը պայմանավորված է ոչ թե պրոլետարիատի կամ նրա կուսակցության կամքով ու ցանկությամբ, այլ այն բանով, թե ինչպիսի դիմադրություն ցույց կտան կործանվող իշխանությունները. եթե նրանք բանվոր դասակարգի դեմ կհանեն զինված ուժեր և կցանկանան զենքով ու զորքով ճնշել հեղափոխությունը, ապա այդ դեպքում բանվոր դասակարգը ևս նրանց դեմ

հանդես կգա իր զենքով ու զորքով, կդիմի զինված ապստամբության, քանզի «նյութական ուժերը կարելի է ճնշել միայն նյութական ուժով»: Իսկ եթե երկրում կստեղծվեն այնպիսի դեմոկրատական կարգեր, որոնք հնարավորություն կտան աշխատավոր ժողովրդին «ընդհանուր, հավասար, ուղղակի և գաղտնի քվեարկության» իրավունքի իրականացմամբ իր ներկայացուցիչներն ունենալ դեմոկրատական պառլամենտում և այդպիսով հասնել մեծամասնության և իշխանությունը վերցնել իրենց ձեռքը, ապա նախընտրելի է հեղափոխության իրականացման խաղաղ ձևը:

Պատմությունն իր ընթացքով հաստատել է սոցիալիստական հեղափոխության խաղաղ և ոչ խաղաղ ձևերի կիրառման մասին մարքս-լենինյան ուսմունքի ճշմարտացիությունը:

Հայ մարքսիստ-լենինյաններն իրենց ծանրակշիռ ավանդն են ներդրել Ռուսաստանում և Անդրկովկասում սոցիալիստական հեղափոխության գաղափարական-տեսական նախապատրաստության գործում և պայքարել այդ գաղափարների իրականացման համար: Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Բ. Կնունյանցը, Ալ. Մյասնիկյանը, Ս. Կասյանը, ինչպես և մյուս հայ բոլշևիկները հեղափոխության սոսկ տեսաբաններ չէին, այլև ակտիվ կուսակցական և հեղափոխական գործիչներ և եռանդուն գործունեություն են ծավալել գիտական կոմունիզմի գաղափարների իրականացման համար, իրենց գիտակցական ողջ կյանքը նվիրել մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթանակի համար մղվող պայքարին:

---

# ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍՈՎԵՏՆԵՐՈՒՄ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՆԱԽՕՐԵԻՆ

**Ա. ՄԱՐԳԱՐՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ**

**ՄՈՏԵՆՈՒՄ Է ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ** 70-ամյակը, որը դարձավ մասսաների պատմական ստեղծագործության անօրինակ խոյանքի ակիզբը, մարդկության շրջադարձը դեպի սոցիալիզմ: ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Սովետական ժողովրդին» դիմումում նշված է. «Ձեն խամրի ռուսական երեք հեղափոխությունների մասնակիցների անունները ու կերպարները, նրանց, ովքեր 1917 թվականի հոկտեմբերին կործանեցին կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը»: Մեծ Հոկտեմբերի նախօրեն հարուստ է նշանակալից պատմական իրադարձություններով:

Աշխատավորների հեղափոխական պայքարում հատուկ դեր են խաղացել բանվորների, զինվորների ու գյուղացիների դեպուտատների սովետները, որոնք 1917 թվականի մարտ-ապրիլի ընթացքում առաջացան Ռուսաստանի ամբողջ տարածքում, այդ թվում նաև նրա ազգային ծայրամասերից մեկում՝ Հայաստանում: Ժողովրդական իշխանության այդ մարմինների ստեղծման նախաձեռնությունը հիմնականում պատկանում էր տեղական բոլշևիկներին: Սակայն տակտիկական մի շարք սխալները և, առաջին հերթին, մենշևիկների հետ կազմակերպչորեն միանալը, անշուշտ, արգելակում էին աշխատավոր մասսաների շրջանում իր ազդեցությունն ընդլայնելու կուսակցության ամենօրյա աշխատանքը:

Զինվորների դեպուտատների Երևանի սովետն ստեղծվեց մարտի 11-ին: Նրա կազմի մեջ մտավ ընդամենը մեկ բոլշևիկ՝ Կարապետյանցը: Բայց նույնիսկ սովետի նման համաձայնողական կազմը ստիպված էր որոշում կայացնել ոստիկանության և ժանդարմերիայի զինաթափման վերաբերյալ, վերահսկողություն սահմանել քաղաքում կարգ ու կանոնի նկատմամբ: Երևանի բանվորները, որոնք դեռևս իրենց կազմակերպությունը չունեին, ի դեմս զինվորների սովետի տեսնում էին իրենց շահերի պաշտպանին: Բանվոր դեպուտատների սովետն ստեղծվեց միայն ապրիլի 26-ին: Իսկ մեկ ամիս անց ընտրվեց նրա գործադիր կոմիտեն, որի կազմի մեջ ի թիվս հինգ սոցիալ-դեմոկրատների մտան երեք բոլշևիկներ՝ Ա. Ղազարյանը, Պ. Մակինցյանը և Լ. Տեր-Օսիպովը:

Երևանի բոլշևիկները, չնայած սովետներում փոքրամասնություն էին կազմում, ամեն կերպ ձգտում էին այդ մարմինները ծառայեցնել ժողովրդի շահերին: Սովետների համառուսաստանյան I համագումարում Երևանի պատգամավորը նշեց, որ սովետը հանախ ոչ իր նախաձեռնությամբ, ստիպված է միջամտել «քաղաքի քաղաքական, ռազմական ու տնտեսական գործերին»*: Այս փաստը վկայում է այն մասին, որ սովետներն իրենց հերթին ենթարկվում էին հեղափոխական մասսայի ճնշմանը, որը նրանց ստիպում էր վերափոխություններ կատարել: Նման միջոցառումների թվին էին պատկանում ութժամյա բանվորական օրվա մասին օրինագծի ընդունումը, թանկության դեմ պայքարի հանձնաժողովի ստեղծումը, սպեկուլյանտներից մթերքների ավելցուկի բռնագրավումը, սննդամթերքների և առաջին անհրաժեշտության ապրանքների սակագնի հաստատումը: Սովետները պատրաստում էին պրո-

* ЦГАОР, ф. 6978, оп. 1, д. 322а, л. 9.

պագանդիստական կադրեր, որոնք մեկնում էին գյուղերը՝ գյուղացիների դեպուտատների սովետներ ստեղծելու նպատակով: Եվ արդեն մայիսի 23-ին Երևանի նահանգի գյուղացիների դեպուտատների սովետը հայտարարեց իր գործունեությունն սկսելու մասին:

Մարտի 8-ին ստեղծվեց Ալեքսանդրապոլի կայազորի դեպուտատների սովետը, որը Հայաստանում առաջիններից մեկն էր: Չնայած համաձայնողական մեծամասնությանը, սովետի 18 մարդուց բաղկացած գործկոմի կազմի մեջ մտան ընդամենը երկու բոլշևիկ՝ Պ. Արվելաձեն և Ն. Ենուկիձեն: Սովետն իրականացրեց մի շարք վճռական քայլեր. միջոցներ ձեռնարկեց կարգապահական զանցանքների համար դատապարտված զինվորներին անմիջապես ազատելու նպատակով, ստանձնեց քաղաքում և գավառում կարգուկանոնի վերահսկումը: Նրա որոշումով նշանակվեցին միլիցիայի կոմիսարը, գավառի կոմիսարները: Հեղափոխական զինվորներից ստեղծվում էին քաղաքում կարգուկանոնի պահպանման պարեկություններ:

Իր բոլոր միջոցառումներում սովետը զանց էր առնում համաձայնողական ղեկավարության սահմանած շրջանակները: Վերացվեց քաղաքի և գավառի ոստիկանությունը, նախկին ոստիկաններին ու ժանդարմներին սկսեցին ռազմաճակատ ուղարկել: Սովետը վերահսկողություն սահմանեց զենքի նկատմամբ, իր ձեռքը վերցրեց գործավարությունը, միջոցառումներ անցկացրեց պարենի մատակարարման և առևտրի կարգավորման նպատակով: Հարց դրվեց զարգացնել ժողովրդական կրթությունը:

Սակայն այս բոլոր միջոցառումները չեն կարող արդարացնել այն փաստը, որ Ալեքսանդրապոլի կայազորի դեպուտատների սովետը, իսկական տեր լինելով քաղաքում և գավառում, մարտի 16-ի նիստում որոշում ընդունեց քաղաքի իշխանությունն ու կառավարումը հանձնել հասարակական անվտանգության քաղաքային գործկոմին («Солдат», № 2, 20 марта, 1917 г.): Սովետի էսէռամենշևիկյան վերնախավը, հավատարիմ իր օպորտունիստական էությանը, կամավոր կերպով իշխանությունը հանձնեց բուրժուական մարմնի ձեռքը: Եվ եթե հեղափոխության առաջին օրերին առկա էր սովետի մենիշխանությունը, ապա տվյալ որոշումի ընդունումից հետո Ալեքսանդրապոլում երկիշխանություն գոյացավ:

Սակայն հետագա ամիսներին Ալեքսանդրապոլի սովետում ավելի ու ավելի էր ուժեղանում բոլշևիկյան ֆրակցիայի ազդեցությունը: Վերջինիս նախաձեռնությամբ քաղաքում և գավառում կարգավորվեց պարենային հարցը, պայքար ծավալվեց ութժամյա բանվորական օրվա համար, տեղի ունեցավ բանվորների և զինվորների սովետների միավորումը: Միավորված սովետի կազմի մեջ մտած բոլշևիկներ Պ. Արվելաձեի, Բ. Ղարիբջանյանի, Ն. Լեժավայի և մյուսների պնդմամբ սովետին կից ստեղծվեց գյուղացիների դեպուտատների սովետների կազմակերպման հատուկ հանձնաժողով, որը ստանձնեց գավառի գյուղացիների համագումարի հրավիրման խնդիրը:

Հայաստանի գյուղական վայրերում հեղափոխության առաջին օրերին դրությունը քիչ բանով փոխվեց: Մինչև մարտի վերջը իրենց պաշտոնները պահպանեցին ցարական ավագները: Այդուամենայնիվ բազմաթիվ, հատկապես Լոռվա և Զանգեզուրի գյուղերում առաջանում են գյուղացիների դեպուտատների սովետներ: Իսկ բանվորական կենտրոններում ձևավորվում են բանվորների դեպուտատների սովետներ:

Առաջանալով հեղափոխության առաջին օրերին՝ սովետները դարձան հիրավի ժողովրդական իշխանության մարմիններ, որին չէր կարող խանգարել նույնիսկ սովետների գլուխ կանգնած համաձայնողական վերնախավը: Իրենց հեղափոխական ծագման շնորհիվ սովետները տեղերում այնքան կարևոր դեր խաղացին, որ ժամանակավոր կառավարության մարմինները չէին կարող որևէ որոշում կայացնել՝ առանց հաշվի առնելու նրանց կարծիքը:

Հեղափոխության առաջին ամիսը աշխատավոր մասսաներին շատ բան սովորեցրեց: Նրանք դասակարգային դաստիարակության դասեր ստացան, համոզվեցին, որ բուրժուազիայի հետ համաձայնողականության քաղաքականությունն անպտուղ է. սովորեցին տեսնել ու հասկանալ հեղափոխության հիմնական հարցերի նկատմամբ բոլշևիկների և մենշևիկների մոտեցումների տարբերությունը: Այդ օրերին Վ. Ի. Լենինը բացատրում էր կուսակցական կազմակերպություններին. «Ի՞նչ անել, եթե բանվորների դեպուտատների սովետն իր մեծամասնությամբ կանգնած է պաշտպանողական տեսակետի վրա: Ոչինչ չես կարող անել: Մեզ միայն մնում է համբերությամբ, համառորեն, սիստեմատիկորեն պարզաբանել նրանց տակտիկայի սխալ լինելը: Քանի դեռ մենք փոքրամասնություն ենք կազմում, մենք քննադատելու աշ-



խատանք ենք տանում, որպեսզի մասսաներին ազատենք խաբեությունից: Մենք չենք ուզում, որ մասսաները խոսքով հավատան մեզ: Մենք շառլատաններ չենք: Մենք ուզում ենք, որ մասսաները **փորձով** ազատվեն իրենց սխալներից» (**ԵԼԺ**, հ. 31, էջ 129—130):

Բոլշևիկյան կազմակերպություններն ուղղություն էին տալիս մասսաների հեղափոխական ստեղծագործությանը: Նրանք մատնանշում էին սովետների գործունեության կոնկրետ ուղիները, հատուկ ուշադրություն նվիրելով նրանց միավորմանը, աշխատավորների կենսական պահանջների կատարման աշխատանքի կոորդինացմանը, սովետների իշխանության համար մղվող պայքարում միասնական ճակատի ստեղծմանը:

Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության ակտիվացմանը մեծապես նպաստեցին ՌՍԴԲ(բ)Կ յոթերորդ (ապրիլյան) կոնֆերանսի որոշումները, որոնք նպատակամղվեցին ինքնուրույն կուսակցական կազմակերպությունների ստեղծմանը:

Զարգացած արդյունաբերություն ունեցող շրջաններում, օրինակ՝ Մանեսում (այժմ՝ Ալավերդի) և Ղափանում, բանվորների դեպուտատների սովետները հույժ կարևոր դեր էին խաղում: Դա կարելի է բացատրել, առաջին հերթին, նրանց կազմում ամուր բոլշևիկյան ֆրակցիաների առկայությամբ:

Մանեսի բանվորների դեպուտատների սովետը ներկայացնում էր 700 տեղական բանվորների: Նրա կազմում, համաձայնողական կուսակցությունների ներկայացուցիչների կողքին, մտնում էին բոլշևիկներ Ս. Էվոյանը, Մ. Ամիրխանյանը, Ն. Խաչատրյանը, Խ. Դավթյանը, Մ. Մանավարիանին, Տ. Թադևոսյանը: Հենց նրանց պահանջով սովետի առաջին նիստերից մեկում քննարկվեցին ութժամյա բանվորական օրվա, բանվորների աշխատավարձի բարձրացման, նրանց բնակարանային պայմանների բարելավման հարցերը: Սովետը չէր պարփակվում իր ավանի շրջանակներում: Նա սերտ կապ հաստատեց շրջակա հանքերի, երկաթուղու բանվորների և մերձակա գյուղերի գյուղացիների հետ: Բազմաթիվ միտինգներն ու ցույցերը հաճախ անցկացվում էին բոլշևիկյան լոզունգների ներքո: Աշխատավորները պահանջում էին դադարեցնել պատերազմը և առանց անեքսիաների ու կոնտրիբուցիաների հաշտություն կայացնել:

Տեղական բոլշևիկները հատուկ ուշադրություն էին դարձնում աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությանը: Դրա անհրաժեշտությունը պայմանավորված էր այն բանով, որ հետադիմությունն ամեն կերպ փորձում էր գժտություն սերմանել տարբեր ազգությունների բանվորների միջև: Կուսկազմակերպությունը հաճախ դիմում էր «Кавказский рабочий» թերթի խմբագրությանը՝ խնդրելով ուղարկել «փորձառու ընկերների՝ մեկ հայի և մեկ մահմեդականի» տեղական բնակչության շրջանում աշխատելու համար (տե՛ս ««Кавказский рабочий», № 27, 15 апреля 1915 г.):

Ավելի ամուր էին բոլշևիկների դիրքերը Ղափանում: Տեղական բոլշևիկներ Լ. Ղազարյանը, Ս. Համբարձումյանը, Ա. Փիրալյանը, Հ. Սուլթանովը և ուրիշներ դեռևս պատերազմի տարիներին մեծ աշխատանք էին տանում պրոլետարիատի քաղաքական և ինտերնացիոնալ դաստիարակության նպատակով: Հենց այդ բազմակողմանի աշխատանքով էր մեծապես պայմանավորված, որ Ղափանի բանվորների դեպուտատների սովետի մարտի 19-ին ընտրված 36 դեպուտատներից 25-ը բոլշևիկյան կուսակցության կողմնակիցներ էին (տե՛ս «Коммунист», № 208, 3 сентября 1917 г.; Մ. Նիկողոսյան, **Սովետները Հայաստանում**, «Հայաստան» հրատ. 1968, էջ 25): Ղափանի բանվորների դեպուտատների սովետի առաջին նախագահ ընտրվեց բոլշևիկ Լ. Ղազարյանը, նախագահի տեղակալ՝ Ա. Փիրալյանը, իսկ քարտուղար՝ Ս. Համբարձումյանը: Սովետի նախագահության կազմում ընտրվեց 9 հոգի, որոնցից հինգը՝ Լ. Ղազարյանը, Ա. Փիրալյանը, Ս. Համբարձումյանը, Հ. Սուլթանովը, Չալաբը, բոլշևիկներ էին (տե՛ս **Հին բոլշևիկների հիշողությունները**, Ե., 1961, էջ 601—602):

Բոլշևիկների պահանջով սովետի առաջին իսկ նիստում քննարկվեց բանվորների նյութական ու կենցաղային պայմանների բարելավման հարցը: Չնայած տեղական էսէռների ու դաշնակցականների համառ դիմադրությանը, բոլշևիկներին հաջողվեց հանքերում սահմանել ութժամյա բանվորական օր, հասնել բանվորների աշխատավարձի ավելացման 30—50 տոկոսով, նրանց բնակարանային պայմանների բարելավման:

Բոլշևիկների դիրքերն առավել ուժեղացան ապրիլի 8-ից հետո՝ Լ. Ղազարյանի գլխավորությամբ ՌՍԴԲ(բ)Կ Ղափանի կոմիտեի ստեղծմամբ: Կոմիտեն, իր նիստում քննարկելով Ապրիլյան թեզիսները, մշակեց բոլշևիկյան կազմակերպության և սովետի բոլշևիկյան ֆրակցիայի գործունեության ծրագիրը: Իսկ արդեն մայիսի 18-ի նիստում, բոլշևիկյան ֆրակցիան առաջարկեց սովետին իր ամբողջ գործունեությունում ելնել Ապրիլյան թեզիսների դրույթներից: Բոլշևիկների առաջարկությունը հավանության արժանացավ: Քվեարկության նման ելքից հուսահատ համաձայնողական դեպուտատները լքեցին սովետի նիստը, որն ընդունեց բոլշևիկների առաջարկությունը՝ իր հետագա գործունեությունում լիովին ղեկավարվել ՌՍԴԲ(բ)Կ որոշումներով:

ՌՍԴԲ(բ)Կ դրոշի ներքո կանգնելու վերաբերյալ Ղափանի սովետի որոշումը մեկ անգամ ևս ակնհայտորեն ցուցադրեց տեղական բանվորների աճած դասակարգային ինքնագիտակցությունը: Պատահական չէ, որ դա այնքան բարձր գնահատեց Բաքվում լույս տեսնող բոլշևիկյան «Սոցիալ-դեմոկրատ» թերթը. «Ղաթարի հանքերի բանվորությունը վճռել է կազմակերպվել Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության մեջ. սա կովկասյան կյանքի մեջ մի խոշոր դրական նշան է հատկապես արևելյան Կովկասի կյանքում, երբ բանվորությունը վճռում է կազմակերպվել զուտ իր դասակարգային կուսակցության շուրջը: Զանգեզուրի բանվորների վճիռը խրախուսելի է, ողջունելի...» («Սոցիալ-դեմոկրատ», № 7, 17 հուլիսի 1917 թ.):

Բայց աստիճանաբար իրադրությունը գավառում ավելի ու ավելի էր սրվում: Բոլշևիկների տակտիկական սխալները հանգեցրին տեղական կազմակերպության փաստական քայքայմանը:

Ոչ պակաս ակտիվ գործունեություն ծավալեցին Սարիղամիշի բանվորների ու զինվորների դեպուտատների սովետի կազմի մեջ մտնող բոլշևիկները: Նրանք ամուր դիրքեր էին գրավում Քաղաքների տեղական միությունում, որտեղ աշխատում էր Ս. Ալավերդյանը: Հենց նրա նախաձեռնությամբ միությունը վերակառուցվեց դեմոկրատական հիմունքներով: Ընդ որում, ինչպես վկայում են ականատեսները, Քաղաքների միության ընտրությունները մեկ անգամ ևս ցույց տվեցին մարքսիզմի գաղափարների տարածվածությունը զինվորների և տեղական բնակչության շրջանում: Սովետում բոլշևիկյան ազդեցությունը հանգեցրեց մերձակա գյուղերի հետ սերտ կապ հաստատելուն: Այդ աշխատանքը, անշուշտ, իր պտուղները տվեց, բայց ավելի ուշ շրջանում, այն է՝ 1917 թվականի երկրորդ կեսին, երբ սովետը վերջնականապես կանգնեց բոլշևիկյան դիրքերի վրա:

Սովետներն ազդեցիկ ուժ էին ոչ միայն քաղաքներում: Բազմաթիվ գյուղական շրջաններում նրանք փաստորեն կատարում էին տեղական իշխանության դեր: Հատկապես Լոռիում, որը նաև համեմատաբար խոշոր արդյունաբերական կենտրոն էր: Հեղափոխական բանվորների ազդեցությունը տարածվեց նաև գյուղացիների վրա, որոնք իրենց ծանր տնտեսական դրության հետևանքով հաճախ ստիպված էին մեկնելու վաստակի և, շփվելով բանվորների առաջադեմ ներկայացուցիչների հետ, ընդօրինակում էին նրանց հեղափոխական գաղափարները:

Սովետների ազդեցության աճը հիմնականում որոշվում էր նրանով, թե ինչպիսին էր նրանցում բոլշևիկների դիրքը: Ա. Ի. Միկոյանի վկայությամբ, Հաղպատի և Ալավերդու տեղական ինքնավարության օրգաններում բոլշևիկները հինգ անգամ ավելի էին, քան դաշնակցականները (տե՛ս «Кавказский рабочий», № 169, 10 октября 1917 г.):

Բազմակողմանի կազմակերպչական և գործնական աշխատանք էին կատարում նաև Ջալալօղլիի բոլշևիկները: Նրանցից շատերը մտնում էին ժամանակավոր գործկոմի և ժողովրդական միլիցիայի մեջ: Գյուղերում ստեղծվում էին բոլշևիկյան կոմիտեներ, որոնք գլխավորում էին պայքարը հանուն կալվածատերերի և կուլակների հողերի բռնագրավման ու բաժանման: Գործողությունների կոորդինացման նպատակով Վորոնցովկա գյուղում (այժմ՝ Կալինինո) հրավիրվեց Լոռվա գյուղացիության ներկայացուցիչների խորհրդակցություն, որտեղ որոշում կայացվեց չճանաչել դաշնակցական կոմիտեների իշխանությունը, շարունակել կալվածատերերի և կուլակների հողերի բռնագրավումն ու բաժանումը: Հիմնականում խորհրդակցության ամբողջ աշխատանքն անցավ բոլշևիկյան լոզունգների ներքո (տե՛ս **Հին բոլշևիկների հիշողությունները**, հ. 2, էջ 668):

Բոլշևիկյան ֆրակցիաները պակաս դեր չխաղացին նաև զինվորների սովետներում, որոնք ստեղծվեցին Հայաստանի շատ քաղաքներում և ռուսական բանակի



գրաված տարածքում: Ակտիվ գործունեություն ծավալեց 5 հոգուց բաղկացած բոլշևիկյան խումբը Կարսի զինվորների սովետում, որն ստեղծվել էր մարտի 6-ին: Հենց նա նպաստեց ութժամյա բանվորական օր սահմանելուն առողջության համար վտանգավոր և վնասակար ձեռնարկություններում, ինչպես նաև այնտեղ, ուր օգտագործվում էր կանանց և երեխաների աշխատանքը: Սովետը սակագին նշանակեց առաջին անհրաժեշտության մթերքների վրա: Ավելացան նաև զինվորների ռոճիկները, սննդադրամն ու օրապահիկը: Սովետում համաձայնողականների գերակշռությունը հանգեցրեց այն բանին, որ շատ կարևոր որոշում կայացնելով արքունի, վանքերի ու եկեղեցիների հողերի անհապաղ բռնագրավման մասին, նա դրա հետ միասին տվյալ պրոբլեմի վերջնական լուծումը հետաձգեց մինչև Սահմանադիր ժողովի հրավիրումը:

Բայց համենայն դեպս քաղաքում և երկրում տեղի ունեցող դեպքերից սովետը հեռու պահելու համաձայնողականների փորձերը հիմնական հաջողություն չունեցան: Բոլշևիկ դեպուտատներն անխոնջ աշխատանք էին տանում բանվորների և զինվորների շրջանում՝ նրանց կոչ անելով համատեղ պայքարի ընդդեմ ցարիզմի մնացորդների, համակողմանի օգնություն ցույց տալով բանվորների դեպուտատների սովետին:

Ամբողջությամբ զինվորների դեպուտատների սովետը կանգնած էր առավել հեղափոխական դիրքերում, քան բանվորների դեպուտատների սովետը: Դա առաջին հերթին բացատրվում է զինվորների դեպուտատների սովետի կազմում լավ կազմակերպված բոլշևիկյան խմբի առկայությամբ, որն ամեն ջանք գործադրում էր, որպեսզի սովետին հեղափոխական բնույթ հաղորդեր: Իսկ բանվորների սովետի թուլությունը, անշուշտ, բխում էր Կարսի բանվոր դասակարգի փոքրաթվությունից:

Կարսի բոլշևիկների ակտիվ գործունեությունն ավելի ու ավելի էր բարձրացնում նրանց հեղինակությունը: Զինվորների սովետի վրա նրանց ազդեցությունն արտահայտվեց այն բանում, որ սովետը եռանդուն քայլեր ձեռնարկեց զինվորների և նրանց ընտանիքների կենցաղի բարելավման հարցերի լուծման համար, պահանջեց ավելացնել զինվորների ռոճիկը, օրապահիկը, նրանց կանանց իրավունքները հավասարեցնել սպաների կանանց իրավունքներին: Բազմիցս քննարկելով բանվորների դրության վերաբերյալ հարցը՝ սովետը ժամանակավոր կառավարությունից պահանջեց դեկրետ ութժամյա բանվորական օր մտցնելու, աշխատավարձի մինիմում սահմանելու, գործազրկության դեպքում և ծերության ժամանակ բանվորներին ապահովագրելու վերաբերյալ: Եվ որ ամենագլխավորն է, նա պահանջում էր, որպեսզի «ժամանակավոր կառավարության բանվորական քաղաքականությունը գտնվեր ինչպես տեղական, այնպես էլ համառուսաստանյան բանվորական կազմակերպությունների հսկողության ներքո»*:

Բոլշևիկների ազդեցության ուժեղացման պրոցես նկատվում էր նաև մի շարք այլ կայազորներում, թեպետև նրանցում ղեկավարությունը չէր գտնվում անմիջապես բոլշևիկների ձեռքին, սակայն նրանք մեծ հեղինակություն և ազդեցություն ունեին: Դրանց թվին կարելի է դասել Ղազվինի, Խոյի, Տրապիզոնի և մի շարք այլ վայրերի զինվորների դեպուտատների սովետները: Վերլուծելով նրանց գործունեությունը, կարելի է պատկերացում կազմել ամբողջ Կովկասյան բանակում տեղի ունեցող պրոցեսների մասին:

Այսպես, Ղազվինի զինվորների դեպուտատների սովետն առաջացավ հեղափոխության առաջին օրերին՝ մարտի 10-ին: Նրա գործկոմի կազմում բոլշևիկներ Բ. Մդիվանու, Ս. Ծահնազարովի, Ս. Չեռնոմորդիկի (Պ. Լարինով), Ս. Ծախովի, Ա. Ծահնազարովի, Ն. Մեբուրաշվիլու, Ս. Մարգարյանի, Ֆ. Սերաֆիմովի և մյուսների հետ միասին մտնում էին համաձայնողական կուսակցությունների ներկայացուցիչներ, ինչպես նաև անկուսակցականներ: «Սովետն անմիջապես հեղափոխական գիծ վերցրեց», հետագայում գրել է Ս. Չեռնոմորդիկը («Пролетарская революция», № 10, 1922, с. 446): Դա, իհարկե, նրա կողմն էր գրավում կայազորի զինվորների մեծամասնության համակրանքը: Սովետն իր առաջադիմական քաղաքականության շնորհիվ վերածվեց ղեկավար կենտրոնի, որը միավորում էր ռազմաճակատի Իրանի հատվածի հեղափոխական զորամասերը:

Բոլշևիկների առաջարկությամբ սովետն անցկացրեց առաջին առավել կարևոր միջոցառումներից մեկը՝ հասավ այն բանին, որ իր տնօրինությանը հանձնվի բանակի տպարանը, դրանով իսկ հնարավորություն ստանալով հրատարակելու իր օր-

* *ՄԼԻ Հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 4033, ց. 1, գ. 536, թ. 2:*

զանը՝ «Известия Совета солдатских депутатов Казвина», որի խմբագիրը դարձավ բոլշևիկ Ս. Ծախուրը: Բոլշևիկյան ղեկավարության շնորհիվ, թերթն առաջին իսկ համարից սկսած կանգնեց հեղափոխական նվաճումների պաշտպանության դիրքերի վրա, անհաշտ պայքար ծավալեց ռեակցիայի մեքենայությունների դեմ:

Զինվորների կյանքի ոչ մի ասպեկտ տեսադաշտից դուրս չմնաց: Ստեղծվեցին զինվորական ակումբ, մասսայական ընթերցարան-գրադարան, որտեղ պարբերաբար դասախոսություններ էին կազմակերպվում՝ նվիրված կուսակցության տեսության հարցերին, հասարակական-քաղաքական թեմաներով, որն, անշուշտ, բարձրացնում էր զինվորական մասսայի դասակարգային ինքնագիտակցության մակարդակը:

Սովետի շուրջն ավելի ու ավելի էին համախմբվում տեղական կայազորի առավել առաջավոր ուժերը: Սակայն Պետրոգրադ և Թիֆլիս էին ուղարկվում գաղտնի զեկուցագրեր, որոնցում սովետին ամբաստանում էին անարխիզմի և թալանների, Պարսկաստանում Ռուսաստանի հեղինակությունը վարկաբեկելու, բանակը քայքայելու, զինվորներին սպաների դեմ գրգռելու մեջ: Հետադիմությունն իր կամակատարների ձեռքով՝ հանձինս էսէռների և մենշևիկների, փորձում էր վերակազմավորել սովետը, նրա մեջ անցկացնել ժամանակավոր կառավարության համար ձեռնտու անձանց: Բայց Ղազվինի սովետը շարունակում էր իր հեղափոխական քաղաքականությունը: Իսկ շուտով նրա նախագահ ընտրվեց բոլշևիկ Ս. Ծախուրը:

Այսպիսով, Հայաստանի սովետները, իրենց կազմի մեջ մտնող բոլշևիկների ազդեցության ներքո, հաճախ կատարում էին ժողովրդապետության ֆունկցիաներ՝ քննարկելով քաղաքական ու տնտեսական բնույթի պրոբլեմներ: Հենց նրանք հանդես եկան որպես ութժամյա բանվորական օրվա, աշխատավարձի բարձրացման, աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման և այլ խնդիրների համար պայքարի նախաձեռնողներ: Առավել նշանակալից էր աշխատանքն այն սովետներում, որոնցում բոլշևիկյան ֆրակցիան ավելի ուժեղ էր կամ տիրապետող, ինչպես դա երևաց Ղափանի բանվորների դեպուտատների սովետի օրինակով: Բոլշևիկյան ֆրակցիաները սովետներում բուն այն ուժն էին, որ ձգտում էին վերջիններս վերածել ժողովրդական իշխանության մարմինների, նրանց հնարավորություններն օգտագործել սոցիալիստական հեղափոխությանն անցման այդ բարդ փուլում:

---

## Կուսակցական աշխատանքի պրակտիկա

# ԿՈԼԵԿՏԻՎԸ ՎՍՏԱՀՈՒՄ Է ԵՎ ՀՍԿՈՒՄ

**ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՇՐՋԿՈՄԻ** կազմբաժնի հրահանգիչ Բենիամին Մարկոսյանը լարված ու անհանգիստ օրեր էր ապրում: Նա պետք է շրջկոմում ծավալած իր գործունեության և հետագա անելիքների մասին հաշվետվությամբ հանդես գար այն կոլեկտիվում, որտեղից առաջ էր քաշվել կուսակցական աշխատանքի: Հաշվետվությունը՝ հաշվետվություն, սակայն մտահոգողը այն էր, որ ոչ միայն ինքը, այլև շրջկոմում ընդհանրապես որևէ մեկը դեռևս այդպիսի հաշվետվությամբ հանդես չէր եկել, իսկ փորձի պակասը, ինչպես ամեն մի այլ գործում, այստեղ էլ իր հոգսերն է ստեղծում: Երևանի պոլիտեխնիկականն ավարտելուց հետո Մարկոսյանը աշխատել է նաև «Հայէլեկտրալույս», ապա տեխնոլոգիական սարքավորումների արտադրամիավորումներում: Նրա մասնագիտական ինքնահաստատման մեջ որոշակի հետք է թողել հատկապես վերջինս, ուր նա աշխատում էր որպես թվածրագրային հաստոցների բյուրոյի ինժեներ: Երիտասարդ մասնագետն իրեն լավ դրսևորեց ոչ միայն մասնագիտության ոլորտում, այլև հասարակական աշխատանքում, ընտրվեց կուսբյուրոյի անդամ, բյուրոյի քարտուղարի տեղակալ: Ակտիվ էր, նախաձեռնող: Նկատեցին այդ և նպատակահարմար գտան տեղափոխել կուսշրջկոմ:

Անցել է շուրջ երկուսուկես տարի: Անկախ արտադրամիավորումում ունեցած հասարակական պարտականություններից՝ կուսշրջկոմում աշխատանքի բնույթը, ծավալն ու մասշտաբները կտրուկ փոխվում են և նեղ, որոշակի գործնական աշխատանքից մարդը միանգամից հայտնվում է անհամեմատ բազմաբնույթ խնդիրների ոլորտում: Եվ Բ. Մարկոսյանի գործունեության շրջանակը լայնացավ: Նա մասնակցել է շրջկոմի բյուրոյում քննարկվելիք մի շարք հարցերի նախապատրաստմանը: Դրանք վերաբերել են շինարարական կազմակերպություններում և արդյունաբերական ձեռնարկություններում բրիգադային աշխատանքի նոր ձևերի ներդրմանը, կուսակցական միջուկի ամրապնդմանը, ժողվերահսկողության շրջկոմի կողմից ԲՕՏ-ների խմբերին ցույց տրվող օգնությանը, մեխանիկական գործարանի արհմիութենական կոմիտեի աշխատանքին և այլն: Կուսշրջկոմի ընդհանուր բաժնի, կուսհանձնաժողովի հետ միասին մի քանի անգամ ուսումնասիրել է քաղաքացիների նամակների ու դիմումների հետ տարվող աշխատանքի վիճակը շրջսովետի գործադիր կոմիտեում և գործարաններում: Հիդրոապարատների գործարանում եղել է 15—20 օր, օգնել սկզբնական կուսկազմակերպությանն ու դիրեկցիային, ուսումնասիրության արդյունքների մասին կազմել հիմնավոր տեղեկանք ու արել գործնական առաջարկներ, շրջանային կազմակերպությունների միջոցով բազմաթիվ երիտասարդ մասնագետներ գործուղել այդ դժվարին տեղամասը:

Հրահանգչի գործունեության անբաժանելի և զգալի մասը կազմել են աշխատավորներից ստացված նամակների ու դիմումների ուսումնասիրությունն ու քննարկումը տեղում: Այդ նույն հիդրոապարատների գործարանի բանվորուհի Ս. Խաչատրյանից, օրինակ, շրջկոմում ստացվել էր գանգատ այն մասին, որ անօրինականություն է տեղի ունեցել իր բնակարանային հարցը վճռելիս: Բ. Մարկոսյանի ղեկավարած հանձնաժողովը պարզեց, որ բանվորուհու բողոքը ճիշտ է. սխալը շտկվեց, բանվորուհին բնակարան ստացավ, իսկ գործարանի բնակհանձնաժողովի և արհկոմի նախագահները պատժվեցին: Հրահանգիչ Բ. Մարկոսյանի միջամտությամբ «Հայարդկապ» արտադրամիավորման բանվորուհի Մ. Դավթյանի բնակարանի հարցը ևս վճռվեց հօգուտ դիմողի: Հարցի քննարկումը կազմակերպվեց հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ, միավորման բանվորուհի Լ. Եփրեմյանի հետ միասին:

Կուսշրջկոմի հրահանգիչը նամակներ ու դիմումներ է ուսումնասիրել նաև ընդ-

համար հիգիենայի և պրոֆեսիոնալ հիվանդությունների գիտահետազոտական ինստիտուտում և ուրիշ կազմակերպություններում՝ ամենուր դրսևորելով բարեխղճություն, օբյեկտիվություն ու անաչառություն...

Անելիք կարծես թե կա, բայց և այնպես հուզվում էր, ինչպես ուսանողական տարիների՝ ամենադժվար քննությունից առաջ: Բայց ո՜չ, այստեղ շատ ավելի դժվար է, այստեղ խոսքը կյանքի քննության է վերաբերում, որ պիտի տաս քո հարազատ բանվորական կոլեկտիվին... Մարդիկ համոզիչ պատասխան են սպասում. որպես կուսակցական աշխատող և բանվորական կոլեկտիվում կոփվածք ստացած ինժեներ, ի՞նչ ես արել դու քո սպասարկած 41 կազմակերպություններում, գործարաններում ու գիտահետազոտական ինստիտուտներում, փոքրաթիվ կոլեկտիվներ ունեցող հիմնարկ-ձեռնարկություններում աշխատանքը ժամանակակից պահանջներին համապատասխան վերակառուցելու, կուսակցության արագացման ստրատեգիան կյանքի կոչելու համար:

Ամենախիստ դատախոսից ու հանձնաժողովից դրական գնահատական ստանալն այնքան դժվար չէ, որքան սեփական աշխատանքային կոլեկտիվից, և շրջկոմի հրահանգիչ Բ. Մարկոսյանը նորից մտովի վերլուծում էր այն ամենը, ինչ կարող էր, կարելի էր անել, բայց չի արել, չի հասցրել: Միավորման հասարակական ակտիվ աշխատող Իշխան Մարգարյանը հենց այդպես էլ ասաց. «Քանի՞ մարդու ես օգնել, քանի՞ հասարակ աշխատողի դատ ես պաշտպանել հօգուտ արդարության ու ճշմարտության»: Գուրգեն Սարգսյանը, Սեմիկ Գրիգորյանը, օպերատոր-կարգավորող Լեոնիդ Երմակովը, գործիքագործ-փականագործ Անդրանիկ Այրունցը ևս պարզ ու հստակ պատասխաններ պահանջող մարդիկ են և գեղչով, կիսատ-պռատ ասված բանը չեն հանդուրժի, այդպես էլ կասեն. «Եթե չես գտել տեղդ, ավելի լավ է ետ արի, որքան շուտ՝ այնքան լավ»:

ՀԿԿ շրջկոմը կազմակերպել է նաև կազմակերպական բաժնի հրահանգչուհի Անժելա Ներսիսյանի հաշվետվությունը իր նախկին կոլեկտիվի՝ ռադիոֆիզիկական չափումների գիտահետազոտական ինստիտուտի կոլեկտիվի առջև: Այնտեղ նա ութ տարի եղել է կրտսեր գիտաշխատող և ԼԿԵՄ կոմիտեի քարտուղար: Ո՞րն էր բնորոշը այդ հաշվետվության մեջ՝ ակտիվ գործունեությունը շրջկոմում և սերտ կապը նախկին կոլեկտիվի հետ:

Ա. Ներսիսյանին ավելի շատ մտահոգում էր այն հարցը, թե որքանով է արդարացրել այդ հեղինակավոր, լավ ավանդույթների տեր կոլեկտիվի վստահությունը: Նույն օրը, նույն ժողովում իրենից հետո հաշվետվությամբ հանդես եկավ կոմերիտական կազմակերպության այժմյան քարտուղարը: Իր հերթին ինստիտուտի կուսկազմակերպությունը խելացիորեն էր օգտագործել միջոցառումը երիտասարդ կադրերին դաստիարակելու և նպատակամղելու համար: Ժողովում պահանջվեց կապը ինստիտուտի հետ ավելի ամրապնդել:

Կուսշրջկոմը նախատեսել է առաջիկայում կազմակերպել նաև կուսակցական ու կոմերիտական շրջկոմների, շրջսովետի գործկոմի ապարատների աշխատողների հաշվետվությունների ունկնդրումը իրենց նախկին կոլեկտիվներում: Առաջիկայում պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրահանգիչ Մկրտիչ Խաչանյանը այդպիսի հաշվետվությամբ հանդես կգա պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտում, ՀԼԿԵՄ շրջկոմի առաջին քարտուղար Արսեն Թաթոյանը՝ տեխնոլոգիական սարքավորումների արտադրամիավորումում:

Այդպիսի հաշվետվությունների քննարկման կազմակերպումն ունի մի շարք առանձնահատկություններ: Նախ՝ յուրաքանչյուր կոլեկտիվ գիտակցում, զգում է, որ կուսշրջկոմը հաշվի է նստում իր հետ, նման հանդիպումներով ապահովվում է կոլեկտիվից առաջ քաշված մարդկանց գործունեության հրապարակայնությունը. յուրաքանչյուր բանվոր-ծառայող հնարավորություն է ունենում հանդես գալ և իր դիտողությունները ու առաջարկությունները անել շրջկոմի ներկայացուցչի աշխատանքի ոճի կատարելագործման վերաբերյալ: Երկրորդ՝ շրջկոմի քարտուղարները, մասնակցելով կազմակերպվող հաշվետվություններին, անմիջականորեն կապի մեջ են մտնում տվյալ կոլեկտիվի հետ, իրենց հերթին ևս պատասխանատվություն կրում բարձրացված հարցերին ու առաջարկություններին ընթացք տալու համար:

Կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ հասկանում է, որ աշխատանքային կոլեկտիվով է սկսվում իր ձևավորման և, ինչու՞ չէ, նաև առաջքաշման գործը, ուրիշ կերպ է գնահատում, արժեքավորում այդ զորեղ մարմնի կարողությունները, նրա գործունեության բովանդակության խորացման համար չի խնայում ջանք ու եռանդ: Հաշվետու



լինողը նաև զգում է, որ, առաջ քաշվելով շրջանային մասշտաբի ղեկավար աշխատանքի, ինքն ամենևին էլ չի ազատվում իր նախկին կոլեկտիվին հաշվետու լինելու պատասխանատվությունից, որ գտնվում է այդ կոլեկտիվի ուշադրության կենտրոնում, և վերջինս կարող է սկզբունքային խոսք ասել իր նախկին աշխատակցի գործունեության մասին: Այդ ամենի գիտակցումը խորապես նպաստում է կադրերի դաստիարակության բարելավմանը և նրանց պատասխանատվության բարձրացմանը: Հաշվետվություններով հանդես գալու պրակտիկան ստիպում է նրանց կատարելագործել աշխատանքի ոճը, այն դարձնել ավելի արդյունավետ:

ՍՄԿԿ XXVII համագումարից հետո, իսկ ավելի ճիշտ՝ 1986 թ. մայիս-հունիս ամիսներից, առանձնակի ուշադրություն է նվիրվում նոր կադրերի առաջքաշման ու դաստիարակության գործում կոլեկտիվների դերի բարձրացման հարցերին: Այսպես, շրջսովետի գործկոմի կազմակերպական բաժնի վարիչի հաստիքը թափուր էր: Ներկայացվել էին մի շարք ընկերների, այդ թվում և գործադիր կոմիտեի ապարատի աշխատողների թեկնածություններ, սակայն նախապատվությունը տրվեց բանվորական կոլեկտիվում երկար ժամանակ աշխատած, մասնագիտությամբ իրավաբան, «Սպորտ» արտադրամիավորման կուսբյուրոյի քարտուղար Սերգեյ Խալաֆյանին: Նախապատվությունը՝ նախապատվություն, բայց անհրաժեշտ էր հաշվի նստել կոլեկտիվի անդամների հետ, լսել նրանց կարծիքը, ստանալ նրանց երաշխավորությունը, ունկնդրել նրանց դիտողություններին: Եվ շրջսովետի գործկոմի կազմբաժնի վարիչի համար կուսբյուրոյի քարտուղար Ս. Խալաֆյանի թեկնածության հարցը քննարկվեց իր իսկ կոլեկտիվի ժողովում: Միավորման կոմունիստները ու անկուսակցականները այդ քննարկումն ընդունեցին ներքին բավականությամբ, բանվորական արժանապատվության գիտակցումով, իրենց կարծիքի ու երաշխավորության հետ կուսշրջկոմի կողմից հաշվի նստելու բուն իրողության պատասխանատվության գիտակցմամբ: Հենց դրանով պետք է բացատրել այն ակտիվությունը, որ նկատվեց կոլեկտիվում. եղան և՛ հարցեր, և՛ ելույթներ, և՛ առաջարկներ, որոնց ժամանակ մարդիկ գոհունակություն էին հայտնում իրենց կոլեկտիվից առաջքաշման փաստի և իրենց կարծիքը հաշվի առնելու համար: Ելնելով ապագայի հետ առնչվող խնդիրներից՝ նրանք Ս. Խալաֆյանի հասցեին ուղղում էին նաև քննադատական խոսք, նշում, որ բնավորության այս կամ այն թերությունը չվերացնելու դեպքում շրջանային ծավալի աշխատանքի մեջ դրանք կարող են զգալ տալ իրենց և խանգարել ընդհանուր գործին:

Շրջսովետի գործկոմի կազմբաժնի վարիչ Ս. Խալաֆյանը անցավ ու հաստատվեց շրջանային ու քաղաքային մարմինների սահմանված ատյաններով, սակայն, չնսեմացնելով որևէ օղակի կարևորությունը, նրա համար հարազատ կոլեկտիվում իր երաշխավորության քննարկումը պիտի մնա թերևս ամենապարտավորեցնողն ու կարևորը:

Կադրերի ընտրության և առաջքաշման աշխատանքը կայուն հունի մեջ դնելու համար կուսշրջկոմի նոր աշխատակարգով այդպես էլ ընդունվել է, որ մինչև շրջկոմի բյուրոյի հաստատումը կադրերի առաջքաշման հարցը քննարկվում է տվյալ կոլեկտիվի ժողովում և այդ մասին նշվում բյուրոյի նիստին ներկայացվող որոշման նախագծում:

Կուսակցության ժամանակակից պահանջներից բխող այս հրապարակայնությունը օգնում է ոչ միայն ճիշտ ընտրություն կատարել, ոչ միայն բարձրացնել կոլեկտիվների պատասխանատվությունը կադրերի ընտրության ու առաջքաշման գործում, այլև դաստիարակչական մեծ նշանակություն է ունենում ինչպես տվյալ անձնավորության, այնպես էլ՝ ողջ կոլեկտիվի համար. հիմնականում բացառվում են ընտրության գործում պատահականությունները ու կամայական մոտեցումները:

Թեև կուսշրջկոմի բյուրոյի նիստերում, պլենումներում, ինչպես նաև շրջսովետի գործկոմի նիստերում ու նստաշրջաններում ղեկավար կադրերի հաշվետվությունների քննարկումը հաստատուն պրակտիկա է դարձել, այդուհանդերձ, շրջկոմն այժմ նորովի մոտեցում է ցուցաբերում այդ հարցին: Իսկ ինչու՞ չընդլայնել դրա շրջանակները: Դրա համար ելակետ է ծառայում ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում ընկ. Մ. Ս. Գորբաչովի արտահայտած այն միտքը, որ հասել է ժամանակը անշեղորեն կատարելու ընտրվող և նշանակվող բոլոր պաշտոնատար անձանց կողմից աշխատավորական կոլեկտիվների ու բնակչության առջև սիստեմատիկ հաշվետվության կանոնները: Պլենումը պահանջեց, որպեսզի այդպիսի ամեն մի հաշվետվություն ուղեկցվի կենդանի և սկզբունքային քննարկումով, քննադատությամբ և

ինքնաքննադատությամբ, գործարար առաջարկություններով և ավարտվի հաշվետվությամբ հանդես եկողի գործունեության գնահատումով: Հենց այս ոգով են այժմ շրջանային ղեկավար աշխատողների հաշվետվությունները քննարկվում աշխատավորական կոլեկտիվներում:

Աղի կոմբինատի կոլեկտիվը, որ շրջանում հայտնի է աշխատանքային իր լավ ավանդույթներով, հավաքվել էր՝ քննարկելու ժողովրդական վերահսկողության Սովետական շրջկոմի նախագահ Ս. Կարապետյանի հաշվետվությունը: Ներկաները հիմնականում գաղափար կազմեցին շրջկոմի, նրա խմբերի ու պոստերի և շուրջ երեք հազար հասարակական վերահսկիչների աշխատանքի մասին: Էականն այն է, որ շրջկոմն իր գործունեությունը ծավալել է կուսակցական, սովետական մարմինների, շրջսովետի մշտական հանձնաժողովների, «Կոմերիտական լուսարձակի», իրավապահպան մարմինների հետ միասին, մի հանգամանք, որը ոչ միայն բարձրացրել է հարցերի ուսումնասիրության ու քննարկման արդյունավետությունը, այլև կանխել միևնույն ձեռնարկությունում միևնույն նպատակով տարբեր օղակների կողմից կատարվող ստուգումները, որոնք հաճախ բացասաբար են անդրադառնում գործերի վիճակի վրա: Համատեղ կատարված այդպիսի չորս ուսումնասիրության արդյունքները քննարկվել են կուսշրջկոմի բյուրոյի, երեքինը՝ շրջսովետի գործկոմի նիստերում: Վերջին երկու տարիներին ժողվերահսկողության շրջկոմը անցկացրել է տարբեր բնույթի ավելի քան 130 ստուգում: Ուսումնասիրության արդյունքներով ավելի քան 160 պաշտոնատար անձինք ենթարկվել են պատասխանատվության, կատարվել է հազարավոր ռուբլիների տույժագրում:

Կոմբինատի մարդիկ անաչառ ձևով վերլուծեցին ժողվերահսկողության շրջկոմի աշխատանքը: Ապարատավար Էլմիրա Այվազյանը, արտադրության մեխանիկ Սերժ Սահակյանը, հորատող բանվոր Նարվիկ Քարամյանը, կոմբինատի դիրեկտոր Ծահեն Մինասյանը, ժողվերահսկողության խմբի նախագահ Սեյրան Առաքելյանը և ուրիշներ նշեցին այն դանդաղկոտությունը, որ առկա է վերակառուցման իրականացման ճանապարհին, սպասարկման ոլորտում, առևտրի ցանցում շարունակվում են գների խախտումները, վատնում-չարաշահումները, ցածր է կուլտուրան, իսկ այդ ամենը հանդուրժվում է, թույլ է դրանց դեմ մղվող պայքարը: Քննադատական սուր խոսք ասվեց այն մասին, որ վերահսկողության մարմիններն անբավարար են պայքարում հատկապես սննդի ու թեթև արդյունաբերության ձեռնարկություններում կատարվող խախտումների և չարաշահումների դեմ, խիստ ցածր է, օրինակ, № № 4, 5 գործարաններում թխվող հացաբուլկեղենի որակը:

Կոմբինատի աշխատավորները մի շարք գործնական առաջարկներ արեցին վերահսկողության շրջկոմի և հիմնարկ-ձեռնարկությունների խմբերի ու պոստերի աշխատանքն իրոք ժամանակակից պահանջներին համապատասխան վերակառուցելու համար:

«Արագած» բամբակագործվածքային արտադրամիավորման կոլեկտիվի առջև հաշվետվությամբ հանդես եկավ շրջանի դատախազ Ի. Արշակյանը: Հանդիպումը վերածվեց վերակառուցման ոգով իրավապահպան մարմինների գործունեության էական բարելավման, այդ ասպարեզում հասարակայնության դերի բարձրացման շուրջ գործնական խոսակցության:

Բավորական կոլեկտիվին մտահոգում են հասարակական և անձնական ունեցվածքի պահպանությունը, բնակարանային գողությունների կանխումը և այդ հարցերի արմատական կարգավորումը: Բանն այն է, որ 1986 թ., նախորդ տարվա համեմատությամբ, բնակարանային գողության դեպքերը ոչ միայն չեն նվազել, այլև աճել են: Դատախազությունը ուսումնասիրեց դրա պատճառները և մշակեց գործնական ծրագիր, ապա անցավ դրա իրականացմանը: Ձեռնարկված միջոցների շնորհիվ, ընթացիկ տարվա անցած երեք ամիսներին, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, նվազել են անձնական ունեցվածքի և բնակարանային գողությունների դեպքերը:

Ինչպես շրջանի դատախազը, այնպես էլ ֆաբրիկայի մի խումբ բանվոր-ծառայողներ արծարծեցին հրատապ լուծում պահանջող մի շարք դժվարին խնդիրներ, որոնց մասին թեև երկար ժամանակ է խոսվում, բայց գործը տեղից չի շարժվում: Բանն այն է, որ ձեռնարկությունը չունի պահեստային անհրաժեշտ տնտեսություն, դրա հետևանքով հումքը պահեստավորվում է ոչ նպաստավոր տեղում, իսկ ավելի հաճախ՝ բաց երկնքի տակ: Պետական ունեցվածքը, որի մասին այնքան գրվում ու խոսվում է, բոլորի աչքի առջև փոշիանում կամ կորցնում է որակը, իսկ ցածրորակ



հումքից բարձրորակ արտադրանք չես ստանա: Ահա թե ինչու արտադրանքի զգալի մասը ցածրորակության պատճառով հետ է վերադարձվում, որի համար հարկ է լինում մեծ տուգանք վճարել: Մինիստրությունն այս հարցում չի օգնում, իսկ ձեռնարկության ղեկավարությունը վիճակից դուրս գալու կոնկրետ քայլեր չի անում:

Արհկոմի նախագահ Այծեմիկ Զանազյանը խոսեց աշխատանքային ցածր կարգապահության և առանձին բանվորների կողմից պետական ունեցվածքը գողանալու փաստերի մասին: Որոշ միջոցներ ձեռնարկվում են այդ խայտառակ երևույթները վերացնելու համար, սակայն ո՛չ ղեկավարությունը, ո՛չ էլ հասարակական կազմակերպությունները կյանքի չեն կոչում մարդկանց վրա հրապարակայնորեն ներազդելու միջոցները՝ պատի թերթերը, «Կայծակ» թերթը, ռադիոխմբագրությունը, «Կոմերիտական լուսարձակ» շտաբը և այլն:

Ֆաբրիկայի աշխատողներին ոչ քիչ հոգս է պատճառում արտադրանքի հուսալի առաքման հարցը: Հաճախ պատվիրատուից ոչ թե «շնորհակալություն», այլ ակտեր են ստացվում այն մասին, որ արտադրանքը չի համապատասխանում փաստաթղթերում նշված քանակին: Ձեռնարկությունում իրավասու հանձնաժողովները, թվում է, ամենայն բարեխղճությամբ պատվիրատուին են առաքում արտադրանքը, տեղում առևտրական կազմակերպությունները բացում են անվնաս ծրարները և... գրվում են ակտերը: Իսկ թե ի՞նչ է կատարվում ճանապարհին, առայժմ պարզ չէ:

Շրջանի դատախազը կոնկրետ փաստերով համոզում էր մարդկանց, որ միայն հասարակայնության օգնությամբ կարող են իրավապահպան մարմինները հասնել պետական ունեցվածքի և սոցիալիստական օրինականության պահպանման ցանկալի արդյունքի: Իրենց հերթին բանվոր-ծառայողները նշում էին վարչական մարմինների աշխատանքում տեղ գտած թերությունները, նրանց աշխատանքում ամուր տեղ գտած հին գործելակերպը, իսկ այդ ամենը լրջորեն խոչընդոտում է բացասական երևույթների դեմ պայքարում հասարակայնության ակտիվ ներգրավմանը: Շրջանի դատախազը հաշվետվությամբ հանդես է եկել նաև «Ալմաստ» գործարանում:

Հաշվետվությունների կազմակերպումը Սովետական շրջանում լայն ու գործնական բնույթ է ստացել: Կուսշրջկոմի բյուրոն վերջերս հաստատեց շրջկոմի ինֆորմացիոն զեկուցումը և գրաֆիկը, որի համաձայն շրջկոմի քարտուղարները և բյուրոյի անդամները զեկուցումներով հանդես են գալու խոշոր սկզբնական կուսկազմակերպությունների դռնբաց ժողովներում:

Աշխատանքի այսպիսի հրապարակայնությունը, արտադրական կոլեկտիվներում հաշվետվությունների քննարկումները ոչ միայն նպաստում են թերությունների վերացմանն ու դժվարությունների հաղթահարմանը, այլև անմիջական շփումների միջոցով հնարավորություն են ընձեռում բարելավել կադրերի դաստիարակության գործը, համարձակորեն բացահայտել ու հաղթահարել թերությունները:

**ՅՈՒ. ՍԱՀԱԿՅԱՆ**

# ՇՐՋԱԿԱ ԲՆԱԿԱՆ ՄԻՋԱՎԱՅՐԻ ՊԱՀՊԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԻՆՏԵՆՍԻՎԱՑՄԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

**Մ. ՄԿՐՏՉՅԱՆ**
**Տնտեսագիտության թեկնածու**

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ արդի փուլում արդյունաբերության ինտենսիվ զարգացման շահերը պահանջում են բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործում և խնայողություն: Եթե հողը, ջուրը, անտառները, կենդանական աշխարհը այս կամ այն կերպ վերականգնելի են, ապա հանքահումքային ռեսուրսների արտադրության գործընթացում սպառվում են, դրանք վերարտադրելի, վերականգնելի չեն: Այդ հանգամանքը, ավելի բարդացնելով մարդու և շրջակա բնական միջավայրի փոխհարաբերությունները, միաժամանակ անհամապատասխանություն է առաջացնում բնության տարրերի միջև՝ հասցնելով անգամ նրա դինամիկ հավասարակշռության խախտումների:

Առանձին հետազոտողներ շրջակա բնական միջավայրի արդի վիճակը փորձում են ներկայացնել իբրև հասարակության սոցիալ-տնտեսական և, առաջին հերթին, գիտատեխնիկական առաջադիմության հետևանք ու այդ հիման վրա կատարում հոռետեսական հետևություններ կենսոլորտի հետագա անխուսափելի քայքայման մասին: Նման մոտեցման հետ չի կարելի համաձայնել, և այստեղ է, որ իր խոսքը պետք է ասի նոր մտածելակերպը, երևույթներին, պատճառներին ու հետևանքներին իրատեսական, իրոք գիտական մոտեցումը, ինչպես որ դա պահանջում է այսօր կուսակցությունը: Միանգամայն ակնհայտ է, որ արդյունաբերական արտադրության և բնական ռեսուրսների փոխներգործությունից առաջացած շրջակա բնական միջավայրի աղտոտումն ու վատթարացումը գիտատեխնիկական զարգացման անխուսափելի հետևանքներ չեն, քանի որ հենց այդ առաջընթացն է նախադրյալներ ստեղծում արտադրության անցանկալի ներգործությունը կանխելու և վերացնելու համար: Այսպես, ԳՏՀ-ի արդի պայմաններում հնարավորություն է ստեղծվում հայտնաբերել էներգիայի նոր աղբյուրներ, որոնք հիմնարար նշանակություն կունենան սկզբնական էներգիայի բնահումքի արդյունահանումը կրճատելու կամ նախապես արված հատկություններով այնպիսի նյութեր ստանալու գործում, որոնք կփոխարինեն բնահումքից ստացվող ավանդական նյութերին: Ստեղծվում են փակ տեխնոլոգիական համակարգեր, որոնց զանգվածային օգտագործմամբ իրականացվում են կուտակված թափոնների վերամշակումը, անթափոն արտադրությունների կազմակերպումը: Երկրորդային հումքի օգտագործումը դառնում է հասարակական արտադրության պահանջմունքների բավարարման գլխավոր միջոցներից մեկը: Այսպիսով, արդի գիտատեխնիկական առաջադիմությունն իր բոլոր հիմնական ուղղություններով վճռական ներգործություն է ունենում բնօգտագործման պրոբլեմի համալիր լուծման և շրջակա միջավայրի պահպանության վրա:

Միջավայրի աղտոտվածությունն այսօր պայմանավորված է ոչ միայն բնական ռեսուրսների, այլև արտադրության թափոնների ոչ ռացիոնալ օգտագործմամբ: Թափոնների առավելագույն կրճատման, դրանց հնարավոր լրիվ վերացման նպատակով անհրաժեշտ է դարձել արմատապես վերանայել արդյունաբերության շատ ճյուղերի տեխնոլոգիական պրոցեսները: Այդ գործի հաջողության նախապայմանը անթափոն տեխնոլոգիաների մշակումն է, տեխնիկայի և տեխնոլոգիայի ռեսուրսախնայողական տեսակների արմատավորումը, հումքի կոմպլեքսային օգտագործումը, արտադրական սպառման մեջ բնական շատ նյութեր սինթետիկներով փոխարինելը, հումքի և նյութերի կորուստների կրճատումը, երկրորդային ռեսուրսների օգտագործման բարելավումը: Հիշյալ կոմպլեքսային միջոցառումների կենսագործմամբ են պայմանավորված աշխատանքի արտադրողականության, ռեսուրսների օգտագործման արդյունավետության բազմապատիկ բարձրացումը և արտադրանքի նյութատարության նվազեցումը: Դրանք առավել հրատապ և անհետաձգելի են մեր հանրապետության սոցիալ-տնտեսական հետագա առաջընթացի համար: Այստեղ արդյունաբերության զարգացումն ու մասնագիտացումը մեծապես հենվում են տեղական հումքային ռեսուրսների օգտագործման վրա, այսինքն պայմանավորված են դրանց, ինչպես նաև էներգետիկ ռեսուրսների պոտենցիալի բնույթով: Ուստի հանրապետությունում արտադրողական ուժերի հետագա զարգացման և տեղաբաշխման պլանավորման ելակետն այնպիսի ճյուղերին գերադասություն տալն է, որոնք բացառեն շրջակա բնական միջավայրի վրա մարդու արտադրատնտեսական գործունեության աղետաբեր հետևանքները: Այդ պրոբլեմի լուծման հիմնական ուղիներից են գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, արդյունաբերության ճյուղային և տերիտորիալ կառուցվածքի խելացի զուգակցումը, ջրատար և վնասակար արտանետվածքներով նոր ձեռնարկությունների ստեղծման սահմանափակումը, ինքնապարփակ՝ անթափոն և անհոսք, արտադրության կազմակերպումը, հումքի մշակման տեխնոլոգիայի և մեթոդների կատարելագործումը, փոշեորսիչ և գազամաքրիչ կայանքների տեղադրումը, երկրորդային ռեսուրսների ավելի լայն օգտագործումը, հարակից արտադրությունների կազմակերպումը: Բազմազան են նաև հումքի և նյութերի խնայողության ուղիները. հանքահումքային ռեսուրսների համալիր ու բազմանպատակային օգտագործում, դրանց լրիվ վերամշակում, օգտագործման գործակցի բարձրացում, ծախսի նորմաների իջեցում, նոր նյութերի և փոխարինիչների ներդրում ու լայն օգտագործում: Այս պահանջներից էլ բխում են մեր արդյունաբերության հետագա զարգացման արմատական խնդիրները՝ արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացումը և բնական ռեսուրսների խնայողությունը, դրանց բազմանպատակային օգտագործումը, անթափոն արտադրությունների կազմակերպումն ու շրջակա բնական միջավայրի աղտոտումից պահպանումը: Այլ կերպ ասած՝ արդյունաբերության զարգացման կազմակերպման և տեղաբաշխման անհրաժեշտ պայմանը դրանց կողմնորոշելն է դեպի էկոլոգիական պահանջները: Ինչպես հայտնի է, Հայկական ՍՍՀ էկոլոգիական վիճակի վրա բացասական ներգործություն է ունեցել քիմիական և մասամբ լեռնահանքային արդյունաբերության որոշ ճյուղերի չհիմնավորված զարգացումը, որն իր անցանկալի ազդեցությունն է թողել խոշոր քաղաքների և առանձին շրջանների մթնոլորտի վրա: Ստեղծված էկոլոգիական վիճակի պայմաններում հանրապետության արդյունաբերության մասնագիտացման հիմնական ուղղությունը գիտատար արտադրությունների ընդլայնումն ու զարգացումն է: Եթե մինչև այժմ արտադրությունը կազմակերպվում էր «արտադրություն—տեխնիկա—գիտություն» փոխհարաբերությամբ, ապա ներկայումս այն հարկ է պլանավորել գիտությունից մինչև շրջակա բնական միջավայր: Ընդ որում շեշտը պահանջվում է դնել գիտաարտադրական միավորումների ստեղծման վրա, որտեղ գլխադասայինը լինելու է գիտահետազոտական ինստիտուտը՝ լաբորատորիաների ընդլայնված ցանցով, նախագծակոնստրուկտորական բյուրոյով, մասնագիտացված արտադրություններով: Այս նպատակով, վերջին տարիներին հանրապետության արդյունաբերության մեջ կատարվել են կառուցվածքային նկատելի փոփոխություններ: Առաջանցիկ տեմպերով զարգանում են արդյունաբերության այն ճյուղերը, որոնք խթանում են գիտատեխնիկական առաջընթացը և չեն աղտոտում շրջակա բնական միջավայրը (մեքենաշինության սարքաշինական, ռադիոէլեկտրոնային, էլեկտրատեխնիկական և հաստոցաշինական ենթաճյուղերը): Այդուհանդերձ, հանրապետության արդյունաբերության կառուցվածքում դեռևս զգալի է հանքարդյունաբերության տեսակարար կշիռը, ուր արդյունահանվող հումքի ծավալի մեծացման հետ աճում են բնության վրա արտադրատնտեսական ներգործության մասշտաբները: Բավական է նշել, որ ներկայումս հանրապետությունն ըստ տարածքի բնությունից անմիջականորեն հայթայթվող նյութերի քանակով Միությունում ամենաբարձրն է:

Հանքահումքային ռեսուրսների նկատմամբ անընդհատ աճող պահանջները բնականաբար ենթադրում են անցում հարուստ, արտադրական յուրացման բարենպաստ պայմաններ ունեցող հանքերի շահագործումից ոչ հարուստ, անբարենպաստ հանքավայրերի օգտագործման: Դրանց յուրացման ծախսերը, ինչ խոսք, ավելի շատ են: Այսպես, Ղափանի պղնձամոլիբդենային հանքավայրում արդեն արդյունահանվել են 300—350 մետր խորությամբ շերտերը և այժմ խնդիր է դրվում դրանք հասցնել մինչև 600 մետրի: Եթե 1965 թ. արդյունահանվող հումքի յուրաքանչյուր մեկ ռուբլու համար պահանջվում էր, միջին հաշվով, 2 ռուբլի կապիտալ ներդրում, ապա այժմ այն հասնում է 6 ռուբլու: Կամ Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատում արդյունահանվող հանքանյութի ամբողջ ծավալի միայն 2 տոկոսն է թողարկվում և իրացվում պատրաստի արտադրանքի տեսքով, իսկ 98 տոկոսը որպես թափոն կուտակվում է թափոնային զետեղարաններում (Проблемы воспроизводства в условиях научно-технического прогресса, Е., 1985, с. 20, 127): Ուստի հանքային հումքի խնայողաբար և ռացիոնալ օգտագործումը, երկրորդային հումքի ավելի մեծ զանգվածներով արտադրական ոլորտ ներգրավումը առաջնահերթ նշանակություն են ստանում: Բավական է նշել, որ միայն 1983 թ. երկրի ժողովրդական տնտեսության մեջ երկրորդային հումքի օգտագործման միջոցով տնտեսվել է մոտ 10—11 **մլրդ** ռուբլու սկզբնական ռեսուրս: Հայկական ՍՍՀ-ում դրանց օգտագործմամբ ապրանքային արտադրանքի արտադրությունը տասներկուերորդ հնգամյակում կաճի 30,3 տոկոսով: Ինչպես տնտեսական, այնպես էլ էկոլոգիական առումով արտադրության այդպիսի կազմակերպման արդյունքը հատկապես զգալի է: Այսպես, երկրորդային հումքից ստացված մեկ տոննա պողպատը 25 անգամ ավելի էժան է, քան առաջնային հումքից՝ հանքավայրերից արդյունահանված հանքաքարից ձուլվածը և 5 անգամ էժան, քան չուգունից ստացվածը: Բավական է նշել, որ ջարդոնից մեկ տոննա պողպատի ձուլման ժամանակ տնտեսվում է 3—8 տոննա երկաթի հանքաքար, 1,5 տոննա կոքսացված ածուխ և կրաքար: Երկրում սպառված նյութական ռեսուրսների ընդհանուր ծավալի մեջ երկրորդային հումքի օգտագործումը 1985 թ. կազմել է 4,3 տոկոս, որը հնարավորություն է տվել արտադրել պողպատի յուրաքանչյուր երրորդ տոննան, թղթի և ստվարաթղթի՝ չորրորդ, գունավոր մետաղների՝ հինգերորդ տոննան: Հետևաբար, առավել մեծանում է խնայողության ռեժիմի դերը՝ որպես արտադրության ինտենսիֆիկացման կարևորագույն գործոններից մեկի: Ռեսուրսախնայողությունը պետք է վերածվի ժողովրդական տնտեսության հարանուն պահանջմունքների բավարարման վճռական պայմանի՝ այն հաշվով, որ վառելիքի, էներգիայի, հումքի և նյութերի պահանջմունքների 75—80 տոկոսը բավարարվի հումքի և նյութերի տնտեսման հաշվին (տե՛ս **ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 381):

Արտաքին միջավայրի պահպանության, մասնավորապես բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման պրոբլեմի լուծումը պահանջում է զգալի միջոցներ, անհրաժեշտ դարձնում վերանայել ինվեստիցիոն քաղաքականությունը, քանի որ բնապահպան կապիտալ ներդրումները կողմնորոշվում են ոչ թե արտադրության և աշխատանքի արտադրողականության հետագա աճի նպատակին, այլ վերարտադրության նորմալ պայմանների պահպանմանն ու էկոլոգիական աղտոտման բացասական հետևանքների վերացմանը՝ անուղղակիորեն ազդելով արտադրության անմիջական գործընթացի վրա, և վերջին հաշվով, հանգեցնելով որոշակի սոցիալ-տնտեսական արդյունավետության: Ընդ որում որքան սուր է դրվում շրջակա բնական միջավայրի պահպանության պրոբլեմը, այնքան ավելի շատ ծախսեր են պահանջվում և մեծանում է ազգային եկամտի կուտակման մասից այդ նպատակների համար ավելի շատ միջոցների հատկացման անհրաժեշտությունը: Այստեղից էլ կուտակման ֆոնդի այն մասի ռացիոնալ օգտագործման կարևորությունը, որն առանձնացվում է բնապահպան միջոցառումների համար, քանի որ այն, իր հերթին, կանխորոշում է ամբողջ կուտակման արդյունավետությունը: Չնայած հանրապետությունում էկոլոգիական անբարենպաստ վիճակին՝ բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և բնապահպան ծախսերը դեռևս մեծ չեն:

Ընթացիկ հնգամյակում Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ կատարվող կապիտալ ներդրումներից 120,4 **մլն** ռուբլի կամ միայն 1,4 տոկոսն է հատկացվել բնապահպան միջոցառումներին, դրանց գերակշիռ մասը՝ 90,8 **մլն** ռուբլի կամ 75,4 տոկոսը ծախսվել է ջրային ռեսուրսների օգտագործման ու պահպանման, 11,3 տոկոսը՝ օդային ավազանը աղտոտումից պահպանելու միջոցառումների իրականացման համար: Սակայն, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, այդ հատկացումները բավարար չեն էկոլոգիական վիճակն արմատապես շտկելու համար: Չպետք է մոռանալ, որ որքան ձգձգվում է ռացիոնալ բնօգտագործման և շրջակա միջավայրը աղտոտումից պահպանելու աշխատանքների իրականացումը, այնքան դժվարանում է պրոբլեմի հետագա լուծումը: Շրջակա միջավայրի վիճակն ավելի է բարդանում, երբ նոր արտադրություններ կազմակերպելիս անտեսվում են էկոլոգիական պահանջները, իսկ դա հանգեցնում է բնության հավասարակշռության անցանկալի, իսկ հաճախ անուղղելի փոփոխությունների: Այս հարցում բացառիկ նշանակություն ունի ժամանակի գործոնը: Մաքրման տարբեր սարքավորումների կառուցման համար կապիտալ ներդրումների ժամկետի ձգձգումը մեծ մասամբ հանգեցնում է անվերադարձ կորուստների: Անհրաժեշտ է բնապաշտպան կառուցվածքների շինարարությունը սերտորեն զուգորդել տնտեսական և վարչական միջոցառումների իրականացման հետ: Այդ բնույթի կապիտալ ներդրումների արդյունավետ տարբերակի ընտրության բանալին էկոլոգիական տնտեսական չափանիշն է: Ընդ որում որպես բազա կարելի է ընդունել տվյալ ճյուղի առավել առաջավոր ձեռնարկությունը, որը բնութագրվում է էկոլոգիական և տնտեսական բարձր ցուցանիշներով:

Բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և շրջակա միջավայրի պահպանության պրոբլեմի լուծման գործում առաջնային նշանակություն ունի կապիտալ ներդրումների ճյուղային և վերարտադրական կառուցվածքի բարելավումը: Նախորդ հնգամյակում կապիտալ ներդրումների ծավալի շուրջ 37 տոկոսը բաժին է ընկել արդյունաբերությանը, իսկ նրա ճյուղային կառուցվածքում 60 տոկոսից ավելին հատկացվել է առաջատար ճյուղերին՝ մեքենաշինությանը (37,2 տոկոս), քիմիական (12,3) և թեթև (12,4 տոկոս) արդյունաբերությանը: Ընդ որում դրանց զգալի մասը ուղղվել է գործող ձեռնարկությունների վերակառուցմանն ու ընդլայնմանը, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը, շրջակա միջավայրի պահպանման միջոցառումների իրագործմանը, սակավաթափոն և անթափոն արտադրությունների կազմակերպմանը: Արդյունքում՝ այդ նպատակներին ծառայող հիմնական ֆոնդերը 1985 թ. 1980 թ. համեմատությամբ, ավելացել են մեկ քառորդով՝ կազմելով շուրջ 133,1 **մլն** ռուբլի: Դա նշանակում է, որ գործող ձեռնարկություններում, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործմանը զուգահեռ, ստեղծվում են նաև շրջակա միջավայրում կատարվող արտանետվածքների մաքրման համալիրներ, անթափոն և փակ ցիկլերով արտադրություններ:

Հանրապետության արդյունաբերության հետագա զարգացումը շրջակա միջավայրի պահպանման հետ օրգանապես զուգակցելը կապված է արդյունաբերության ճյուղային կառուցվածքի փոփոխությունների հետ: Էկոլոգիական պահանջների՝ շրջակա միջավայրի պահպանության, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման և անթափոն արտադրության ապահովման առումով, հանրապետության արդյունաբերության ճյուղային կառուցվածքի շարժի միտումը վերջին տասնամյակում հիմնականում կարելի է համարել ռացիոնալ, իսկ հեռանկարում, որպես առաջատար, մասնագիտացված ճյուղ, առաջարկվում է մեքենաշինության մեջ նոր ենթաճյուղի՝ էկոտեխնիկայի, ստեղծումն ու զարգացումը:

Հանրապետության արդյունաբերության մեջ, ժամանակակից գիտատեխնիկական առաջադիմությանը համընթաց ձևավորվել է զարգացած ինդուստրիալ երկրներին բնորոշ ճյուղային կառուցվածք: Ըստ ՍՍՀՄ ԿՎՎ մշակած դասակարգման, առանձնացվող ավելի քան 300 ճյուղերից և արտադրություններից 160-ը առկա են Հայկական ՍՍՀ-ում: Հանրապետության արդյունաբերության բազմաճյուղային զարգացման գործում վճռական է եղել ինչպես տարբեր տեսակի բնական, այնպես էլ աշխատանքային ռեսուրսների առկայությունը: Այդ ճյուղերում արտադրության համակենտրոնացումն ու մասնագիտացումը տարբեր աստիճանի վրա են՝ ուղղակի կախվածության մեջ գտնվելով ինչպես ճյուղային կառուցվածքից, այնպես էլ աշխատանքային ռեսուրսների զբաղվածության պրոբլեմի լուծումից: Համակենտրոնացման մակարդակն ավելի բարձր է վառելիքաէներգետիկ, մետաղաձուլական, քիմիական, մեքենաշինության և, ընդհանրապես, ցածր՝ սննդի, թեթև և տեղական արդյունաբերության ճյուղերում: Հանրապետության առանց այն էլ փոքր տարածքում համակենտրոնացման

բարձր մակարդակ ունեցող ձեռնարկությունների կենտրոնացումը խոշոր քաղաքներում իր անխուսափելի բացասական հետևանքներն է թողել շրջակա բնական միջավայրի վրա: Ուստի ինքնուրույն և օժանդակ ոչ մեծ արդյունաբերական ձեռնարկությունների ստեղծումը տարբեր շրջաններում հնարավորություն է ընձեռում հավասարակշռել տարածական տեղաբաշխումը և կանխել միջավայրի աղտոտումը:

Այսպիսով, գիտատեխնիկական առաջադիմության արդի փուլում շրջակա միջավայրն արդյունաբերական աղտոտումից պահպանելու հարցի լուծումը մեր հանրապետությունում ստանում է հետևյալ հիմնական ուղղությունները. նախ, սակավաթափոն կամ անթափոն սկզբունքորեն նոր տեխնոլոգիաների մշակումը և ներդրումը՝ հումքի համալիր, բազմանպատակային օգտագործման հիման վրա: Այսպես, վերջին տարիներին տուֆաքարի արդյունահանման գործընթացում տարեկան միջին հաշվով որպես թափոն դեն է նետվում ավելի քան մեկ **մլն խմ** զանգված: Դա բարձրորակ թեթև քարանյութ է և կարող է լայնորեն օգտագործվել ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում: Մասնագետների կարծիքով, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ու պահպանության ձեռնարկությունների էկոլոգիական վնասակարության մեղմացման ճիշտ ուղին անթափոն տեխնոլոգիայով և մաքրող սարքավորումներով արտադրությունների կազմակերպումն է:

Երկրորդ միջոցը հումքի նախնական մաքրումն է (հարստացումը), դրա մեկ տեսակը այլով փոխարինելը, էներգիայի նոր ձևերի, համեմատաբար ավելի քիչ վնասակար խառնուրդներ պարունակող վառելիքի օգտագործումը: Ներկայումս մի շարք տեխնոլոգիական պրոցեսներում արդեն իրագործվում են այդպիսի միջոցառումներ: Մեր հանրապետության համար նման մոտեցումը հատկապես պահանջվում է էներգետիկ արդյունաբերության մեջ՝ հաշվի առնելով դրա հետագա զարգացման խիստ անհրաժեշտությունը:

Մյուս ուղղությունը արդյունաբերական ձեռնարկություններում արտանետվածքների վնասազերծման համակարգերի մշակումն ու իրականացումն է: Մինչև այսօր արդյունաբերական փոշեգազային արտանետումների մեջ հայտնաբերված են շուրջ 140 վնասակար նյութեր, որոնք օդի շրջանառության միջոցով տարածվում են տասնյակ կիլոմետրեր: Դրանով հերքվում է այն թյուր կարծիքը, թե իբր մթնոլորտ արտանետված արդյունաբերական թափոնները վնասում են լոկ մոտակա շրջակայքը և իբր առանձնապես մեծ վտանգ չեն ներկայացնում շրջակա բնական միջավայրին: Դրանցից շատերը, չունենալով հոտ ու գույն, հաճախ չեն նկատվում, սակայն մթնոլորտում կուտակվելով՝ պոտենցիալ վտանգ են ներկայացնում մարդու և մնացած օրգանական աշխարհի համար: Ճիշտ է, աղտոտիչների տեսակների մի մասն առանձին վերցրած վտանգավոր չէ, սակայն դրանց միատեղ առկայությունը մթնոլորտում կարող է դառնալ վնասակար: Վերջին տարիներին համալիրային միջոցառումներ են իրագործվել հանրապետության մթնոլորտն աղտոտող մի շարք ձեռնարկություններում: Այսպես, զգալի աշխատանքներ են տարվել Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատում ծծմբագազերի և պղնձափոշու որսման ու օգտահանման նպատակով: Ձեռնարկված միջոցառումների շնորհիվ աղտոտող նյութերի մթնոլորտային արտանետումները, 1980 թ. համեմատությամբ, կրճատվել են մեկ երրորդով: Ինչպես հայտնի է, գազի արտանետման հիմնական աղբյուրներից են «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման քացախաթթվի և քլորոպրենային կաուչուկների արտադրությունները: Արդեն փակված է ացետիլենից քլորոպրենի ստացման արտադրությունը, որը զգալի չափով կրճատել է մթնոլորտի աղտոտումը, պիրոլիզային ացետիլենի արտադրության կարողությունները նվազեցվել են 75 տոկոսով, մրախույսի այրման ցիկլոնային վառարանների ներդրմամբ դադարեցվել են ածխածնի օքսիդի և մրի արտանետումները:

Շրջակա միջավայրն արդյունաբերական աղտոտումից պաշտպանելու մյուս միջոցը խոշոր արդյունաբերական համալիրների ապակենտրոնացումն է: Այսպես, Հայկական ՍՍՀ-ում արտադրողական ուժերի շուրջ 3/4-ը կենտրոնացված է Արարատյան դաշտում՝ անտեսելով վերջինիս կլիմայական-էկոլոգիական առանձնահատկությունները: Երևանում, օդի աղտոտման աղբյուրների թվում, բացի վերը նշվածից, կարելի է ներառել նաև ավտոմոբիլային տրանսպորտը, շինարարական հրապարակները, կոմունալ տնտեսությունները, որոնց արտանետած փոշին և գազերը «լրացնում են» արդյունաբերական ձեռնարկությունների կողմից շրջակա միջավայրի աղտոտումը: Թեև որոշ ձեռնարկություններ կամ առանձին արտադրամասեր դուրս



են բերվել Երևանից, սակայն միշտ չէ, որ հարցի նման ձևով լուծումը կարելի է համարել արդյունավետ: Միևնույնը չէ՞, արդյոք, թե փոքր տարածքով մեր հանրապետության ներսում տվյալ ձեռնարկությունը որտեղ է աղտոտում: Չէ որ բարվոք չեն նաև Ալավերդու, Կիրովականի, Հրազդանի և մի քանի այլ քաղաքների օդային ավազանները: Այդպիսի վիճակը պայմանավորված է այդ բնակավայրերի արդյունաբերական ձեռնարկությունների հագեցվածությամբ: Ցանկացած մշակվող նախահիծ և կառուցվող ձեռնարկություն, պետք է բացառի շրջակա բնական միջավայրի աղտոտումը, այսինքն՝ բավարարի էկոլոգիական պարամետրերի պահանջները: Այդ մասին կա ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի դեռևս 1972 թ. ընդունված «Բնության պահպանության ուժեղացման և բնական ռեսուրսների օգտագործման բարելավման» վերաբերյալ որոշումը, ըստ որի ոչ մի արդյունաբերական ձեռնարկություն չի կարելի առանց մաքրման սարքավորումների տեղակայման շահագործման հանձնել: Մինչդեռ հանրապետության և հատկապես Երևանի մի շարք ձեռնարկություններում մաքրման կայանքների շինարարության համար ներդրվում են միլիոններ, սակայն դրանց մի մասը չի գործարկվում: Օրինակ, Երևանի հիդրոապարատների գործարանի գալվանական արտադրամասում վաղուց տեղակայված են 700 հազար ռուբլու ընդհանուր արժողությամբ մաքրման սարքավորումներ: Սակայն այնտեղ մուտք գործող ջուրը առանց մաքրվելու թափվում է կոյուղի: Եթե նկատի ունենանք, որ Երևանում գործում է մոտ 40 գալվանական արտադրամաս, որոնցից շատերն առանց մաքրման ջրավազաններ են արտանետում հսկայական քանակությամբ տարբեր քիմիկատներ և մետաղներ պարունակող ջուր, ապա անժխտելի է դրանց աղետալի ազդեցությունը շրջակա միջավայրի վրա: Այդպիսի վիճակի պատճառները շատ են. ձեռնարկությունների ղեկավարության անտարբերությունը այդ կարևոր հարցի նկատմամբ, տեղերում համապատասխան մասնագետների բացակայությունը, շրջակա բնական միջավայրը աղտոտող ձեռնարկություններում բնապահպան հատուկ ծառայություններ՝ բաժիններ, խմբեր կամ լաբորատորիաներ ստեղծելու մասին դիրեկտիվ մարմինների կողմից ընդունված որոշումների անտեսումը: Վերջինները մեծ մասամբ չեն ստեղծվում, իսկ այնտեղ, ուր առկա են, դիտվում են որպես երկրորդական ծառայություն, ապահովված չեն համապատասխան մասնագետներով: Այդպիսի պայմաններում խոսք չի կարող լինել մաքրման կայանքներում տեղադրված սարքավորումների արդյունավետ օգտագործման ու բարձր հատույցի մասին:

Բնական միջավայրն աղտոտող ձեռնարկությունների վրա տնտեսապես ներազդելու նպատակով առաջարկներ են արվում նրանցից գանձել, այսպես կոչված, «աղտոտման վարձ» կամ տուգանք: Անկախ այն բանից, թե աղտոտման վարձը ինքնարժեքի թե շահույթի հաշվին է վճարվում, կարծում ենք այն խարսխվում է սխալ սկզբունքի վրա: Աղտոտման պատճառները վերացնելու փոխարեն այդ առաջարկությունը փաստորեն ձեռնարկություններին հնարավորություն կընձեռի աղտոտումը շարունակել անորոշ ժամանակով: Մեզ թվում է, որ անհրաժեշտ է խստորեն կիրառել աղտոտման կանխման սկզբունքը: Նման մոտեցմամբ շրջակա բնական միջավայրի պահպանման պլանավորման խնդիրների լուծումը արդի գիտատեխնիկական առաջադիմության պայմաններում կապահովի աստիճանական անցում սկզբում սակավաթափոն, իսկ այնուհետև անթափոն տեխնոլոգիայի լայն կիրառմանը, ռեսուրսների և թափոնների բազմանպատակային օգտագործմանը:

Ժամանակակից արտադրությանը բնորոշ է նաև հետևյալ գործընթացը. հումքը վերածվում է արտադրանքի, դրա մի մասը՝ թափոնի, որն ամբողջությամբ չի օգտահանվում ո՛չ արդյունաբերության կողմից և ո՛չ էլ բնական էկոլոգիական համակարգերի միջոցով: Էկոլոգացված արտադրության խնդիրն ամփոփված է հենց արտադրական գործընթացի անընդմեջ բնաարտադրական ցիկլի վերջնական փոփոխման մեջ: Արտադրության առկա ցիկլերում չի կատարվում հումքային նյութերի շրջանառություն, այն դեպքում, երբ յուրաքանչյուր արտադրության վերջնական օղակը կարող է ծառայել մեկ ուրիշի համար որպես սկզբնական օղակ, և շրջակա բնական միջավայրում չեն կուտակվի թափոններ: Այն, ինչ համարվում է թափոն, կարող է դառնալ մի շարք նյութերի ստացման համար անփոխարինելի հումք: Դա բնորոշ է հատկապես երկրի էկոնոմիկայի զարգացումը ինտենսիվ ուղեգծի փոխադրելու արդի փուլին, երբ արդյունաբերության բոլոր ճյուղերը կողմնորոշվում են դեպի այնպիսի համալիրային միավորումների զարգացում, երբ գործնական-

րեն չեն առաջանա թափոններ: Երկրի արդյունաբերական տարբեր ձեռնարկություններում տեխնոլոգիական ուղղաձիգ և հորիզոնական բազմաթիվ կապերի միջոցով արտադրական փուլերի միջև զուգորդված փոխկապակցությունների հաստատումը հանգեցրել է տերիտորիալ արտադրական համալիրների ձևավորմանը: Դրանք, լինելով հսկայական, խիստ փոխկապակցված, մեկը մյուսին լրացնող բարձրարդյունավետ ձեռնարկություններ, միաժամանակ նպաստավոր պայմաններ են ստեղծում հումքային ռեսուրսների, ինչպես նաև արդյունաբերական թափոնների առավելագույն արդյունավետ, բազմանպատակային օգտագործման համար: Անթափոն տեխնոլոգիան ապահովում է անհամեմատ բարձր շահութաբերություն, կապիտալ ներդրումների արդյունավետության կտրուկ բարձրացում՝ միաժամանակ նվազեցնելով մաքրման սարքավորումների շինարարության համար հատկացվող միջոցները:

ՀԿԿ XXVIII համագումարը հատուկ ուշադրություն նվիրեց շրջակա բնական միջավայրի վրա արդյունաբերության, կոմունալ-կենցաղային և գյուղատնտեսության վնասակար ներգործության նվազեցման, ջրային և հողային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ու պահպանման, բուսական և կենդանական աշխարհի վերականգնման ու վերարտադրության ապահովման ուղղությամբ միջոցառումների իրականացմանը:

Ընթացիկ հնգամյակի տարիներին ու հեռանկարում հանրապետության արդյունաբերության հետագա զարգացումը, նոր կարողությունների գործարկման ուղիով համախառն արտադրանքի ծավալի աճը, տեխնոլոգիական պրոցեսների ինտենսիվացումը և գործող ձեռնարկությունների վերակառուցումն ու ընդլայնումը անհրաժեշտ է առավելագույն չափով զուգակցել արտադրության էկոլոգացման միջոցով շրջակա բնական միջավայրի վրա բացասական ազդեցության խիստ նվազեցման հետ:

---

# ՔԱՂԱՔԸ ԵՎ ՄԵՆՔ

**ՀՐԱՆՏ ԲԱԳՐԱԶՅԱՆ**

ՖՈՒՏՈՐՈԼՈԳՆԵՐՆ ավելի ու ավելի հաճախ են սկսել խոսել ներկա դարավերջի այնպիսի մի երևույթի մասին, ինչպիսին միլիոնանոց քաղաքների թվի անկասելի աճն է: Երկրագնդի վրա այսօր հինգ, տասը, տասնչորս միլիոն բնակիչ ունեցող քաղաքների քանակն արդեն անցել է հարյուրից: Այդ պրոցեսը շարունակվում է: Խոսում են նույնիսկ XXI դարի սկզբի 20—30 միլիոն բնակիչ ունեցող մեգապոլիսների մասին:

Իսկ ի՞նչ է այդ հսկա քաղաքը: Բարի՞ք, թե չարիք: Եվ որքանո՞վ: Ինչպիսի՞ն պետք է լինի դրա բնակիչը՝ նրա կյանքի, աշխատանքի, հանգստի ու զարգացման պայմանները: Վերջապես, ինչպիսի՞ն կլինի նրա ներգործությունը մարդու հոգեկան աշխարհի, բարոյականության, ընդհանուր վիճակի վրա: Այդ հարցի վրա այսօր աշխատում են սոցիոլոգներ, ժողովրդագիրներ, հոգեբաններ, տնտեսագետներ, բժիշկներ, ճարտարապետներ, քաղաքաշինարարներ, մանկավարժական գիտությունների ներկայացուցիչներ:

Մեծ քաղաքի պրոբլեմն, անկասկած, անմիջականորեն վերաբերում է նաև մեզ՝ երևանցիներիս: Չէ որ մեր հարազատ Երևանն էլ է մտել այն միլիոնանոց քաղաքների շարքը, որոնք արժանի կերպով ներկայացնում են երկիրը, նրա մշակույթը, նրա դեմքը:

Այսօր դժվար է հավատալ, իսկ երիտասարդ սերունդների համար, թերևս, անհնար է պատկերացնել, որ դարասկզբին Երևանը եղել է մի փոքրիկ գավառական քաղաք՝ քառասուն հազար բնակչությամբ: Այժմ այն ավելի քան մեկ միլիոն բնակիչ ունեցող քաղաք է և աչքի է ընկնում կառուցապատման մոնումենտալությամբ ու ներդաշնակությամբ, ազգային ոճի և ժամանակակից ճարտարապետական ձևերի հաջող զուգակցմամբ:

Հիրավի, Երևանը հեղափոխական ու ինտերնացիոնալ փառապանծ ավանդույթների քաղաք է: Այստեղ ավելի քան մեկուկես հարյուրամյակ առաջ, Ռուսաստանի և Հայաստանի զավակների թափած արյամբ հավերժ զոդվեց հայ-ռուսական եղբայրության անխախտ դաշինքը, որը նոր փուլ սկզբնավորեց հինավուրց քաղաքի կյանքում: Իսկ մեծ Հոկտեմբերը դարձավ նրա վերածննդի աննախընթաց վերելքի արագացուցիչը:

Երևանը դարձել է հանրապետության քաղաքական, հասարակական, գիտական, ու մշակութային կյանքի կենտրոն, ժամանակակից խոշոր արդյունաբերական քաղաք: Այս հանգամանքն, իհարկե, չի կարող չուրախացնել: Բայց դա նաև թաքուն տագնապ է ներշնչում, խորհրդածությունների առիթ տալիս նրա զարգացման հեռանկարների մասին:

Նախ և առաջ նման աճը անչափ ավելացրել է քաղաքային իշխանությունների հոգսերը: Ավելի են շատացել քաղաքի կարգուկանոնի պաշտպանների, քաղաքաշինարարների, բարեկարգողների, սանիտարական-տնտեսական և առևտրական կազմակերպությունների գործերը: Առաջացել են պլանավորման, մատակարարման, տրանսպորտի, կապի, ջրամատակարարման, կոյուղու հետ կապված բազմաթիվ նոր պրոբլեմներ: Մի խոսքով, մեծ քաղաքը մեծ հոգս է:

Միլիոնանոց քաղաքը ոչ միայն ժողովրդագրական, սոցիոլոգիական, էկոլոգիական, այլև պատմական գործոն է: Այո՛, հենց պատմական: Հայաստանը իր բազմադարյա գոյության ընթացքում չի ունեցել եվրոպական հասկացողությամբ խոշոր քաղաքներ: Հսկա քաղաք հասկացությունը առանձնահատուկ պարտականություններ է դնում մեզնից՝ երևանցիներիցս յուրաքանչյուրի վրա: Մեր կյանքի մեջ այն հսկայական ուղղումներ է մտցնում անձնական, բարոյական, վարքագծային տեսակետներից: Չէ՞ որ փոքր քաղաքի բնակիչները ինչպես քաղաքի, այնպես էլ համաքաղաքացիների հետ ունեն փոխհարաբերությունների միանգամայն այլ պարա-

մետրեր: Փոքր քաղաքում կյանքն ընթանում է սահմանափակ կենսական տարածության մեջ, նրա բնակիչները միմյանց ճանաչում են: Այստեղ, բնականաբար, ստեղծվում են նաև վարքագծի սեփական նորմեր. մարդն ավելի վերահսկելի է շրջապատի կողմից: Իսկ նոր ուրբանիստական միջավայրում աճում է կյանքի տեմպը, բազմակի անգամ մեծանում են հոգեբանական և նյարդային բեռնվածությունները: Այստեղից էլ, իբրև հետևանք, փոխվում է նաև քաղաքաբնակի վարքագիծը փողոցում, տանը, հասարակական վայրերում:

Անկասկած, ամեն մի քաղաքի աճ առաջացնում է բազմաթիվ լրացուցիչ պրոբլեմներ: Բայց Երևանն ունի ոչ քիչ թվով միայն իրեն հատուկ պրոբլեմներ: Չի կարելի ասել, թե ուրիշ արագ աճող քաղաքները այդպիսի պրոբլեմներ չունեն, բայց Երևանի պրոբլեմներն ավելի շեշտակի են աչքի զարնվում, ազդում մեր գործունեության, ինքնազգացման, կյանքի ողջ ընթացքի վրա:

Ժամանակ առ ժամանակ կարելի է լսել այսպիսի խոսակցություն.

— Քաղաքն աճել է, բնակչության թիվը անցել մեկ միլիոնից, բայց իսկական քաղաքաբնակները շատ քիչ են:

Եվ իրոք, ստացվում է ինչ-որ պարադոքս. հսկայական քաղաքում բնիկները համեստ տոկոս են կազմում: Զարմանալի, անհավատալի իրողություն, որը հաճախ անբացատրելի հույզեր է առաջացնում մանավանդ հասակ առած մարդկանց շրջանում: Ունկնդրեք, թեկուզ, միմյանց անծանոթ, պատահաբար իրար հանդիպած երկու երևանցու խոսակցությունը և անպայման կլսեք բազմիցս կրկնվող մի հարց. «Դուք բնիկ ո՞րտեղացի եք»: Աշխարհագրությունը անչափ խայտաբղետ է: Տալիս են հեռու ու մոտիկ քաղաքների ու երկրների, գյուղերի ու վայրերի անուններ: Բայց այդ բազմաթիվ թվարկումների, անվանումների ու անունների մեջ, որքան էլ տարօրինակ է, դուք չեք լսի՝ «երևանցի եմ» պատասխանը, թեև, եթե հետաքրքրվեք, կպարզվի, որ մեր զրուցակիցները երկար տարիներ ապրում են մայրաքաղաքում, բայց իրենց դեռևս երևանցի չեն համարում: Այլ կերպ ասած, նրանք կարծես դեռ չեն «ներանել» երևանցի հասկացության մեջ և իրենց երևանցիներ չեն զգում:

«Անձնագրով» գրանցված որոշ երևանցիների մեջ ոչ միայն չի մշակվել հարազատ քաղաքի, նրա նկատմամբ պատասխանատվության գիտակցում, այլև նույնիսկ քաղաքաբնակի տարրական զգացում, նրանք դեռ չեն կարողացել հոգեբանորեն վերակառուցվել ու հարմարվել մեծ քաղաքի պայմաններին: Նրանց մեջ դեռ չի մշակվել քաղաքում մարդու վարվելակերպի չգրված կանոնները պահպանելու և կատարելու կարողություն, որը քաղաքային կուլտուրայի ձևավորման բաղադրատարրերից է:

Մենք ասում ենք՝ մեր քաղաքը մեր տունն է: Ասում ենք նաև հայրերի տուն, պապերի տուն: Խորն է այս բառերի բովանդակությունը, որոնք միշտ արտասանում ենք սիրով, ակնածանքով: Եվ դա միանգամայն բացատրելի է. մենք մեր հայրերի զավակներն ենք և դրանով պարծենում ենք: Սակայն, չգիտես ինչու, մենք չենք ասում թոռների տուն: Բառեր, որոնք նույնպես կառաջացնեն ոչ պակաս հարգանք ու հպարտություն, քան հայրերի տուն հասկացությունը:

Թոռների տուն: Ինչպիսի՞ն պետք է լինի այն: Ինչպե՞ս ենք այն կառուցում: Եվ, գլխավորը, ինչպիսի՞ն ենք այդ տունը թողնում մեր սերունդներին: Չէ՞ որ այսօրվա մեր տունը ժամանակի ընթացքում մեզանից հետո եկողների համար կդառնա հայրերի և պապերի տուն: Գալիք սերունդները շնորհակալություն կհայտնե՞ն, արդյոք, այն տան համար, այն քաղաքի համար, որ կառուցում ենք, և որոնցում նրանք պետք է ապրեն մեզանից հետո:

Ընդհանուր առմամբ Երևանը կառուցում ենք ճաշակով, գեղեցիկ: Բայց դրա հետ մեկտեղ դեռ պետք է շատ բան անենք, որ այդ ճաշակովն ու գեղեցիկն ավելի լրիվ չափով ծառայեն մեզ: Դեռ անելիքներ շատ կան, որպեսզի մենք կարողանանք հանգիստ խղճով ասել՝ այսպիսին պետք է լինի մեր քաղաքը, որի փառքն ու անունը նախորդ սերունդները տարել են դարերի միջով և թողել մեզ: Վերջապես, այդպիսին պետք է լինի այն քաղաքը, որ մենք թողնում ենք մեր թոռներին: Այս մասին վերջերս նշվեց ՀԿԿ Կենտկոմի մարտյան (1987 թ.) պլենումում: Այնտեղ մասնավորապես ասվեց. «Մեր նախագծողները առանձին դեպքերում նեղ ու վնասակար պրակտիցիզմ են հանդես բերում: Հարկավոր է վճռականորեն վերջ տալ դրան: Ճարտարապետի, նախագծողի, շինարարի վարպետությունը ոչ միայն ճարտարապետական տեսակետից արտահայտիչ ու բարձրորակ շինությունների նախագծումն ու կառուցումն է, այլև նորի ու հնի հմուտ զուգակցումը, դրանց ներդաշնակ հնչողության ապահովումը, քաղաքների և ավանների դարերի ընթացքում կազմա-



վորված նկարագրի, դրանց կոլորիտի պահպանումը: ... Այսօր մենք ստեղծում ենք ապագայի անցյալը: Եվ հարկավոր է դա այնպես իրականացնել, որ գալիք սերունդները հպարտանան այդ անցյալով»:

Ցավոք, մեր մեջ տակավին կան մարդիկ, որոնք չեն գնահատում երևանցու պատիվն ու անունը: Այնինչ, քաղաքաբնակը պետք է հատուկ հպարտություն ունենա իր քաղաքի համար: Իսկ այդ հպարտությունը նրա բարձր կուլտուրան և վեհանձնությունն են՝ իրենց ամենաբարձր դրսևորմամբ:

Եվ այսպես, քաղաքի բարձր կուլտուրա: Ինչի՞ց է կազմվում, ինչպես է գոյավորվում այդ կուլտուրան:

Այսօր, երբ մեր կյանքում ավելի է կարևորվում մարդկային գործոնը, երբ կուսակցությունն ամենասևեռուն ուշադրություն է դարձնում սոցիալական խնդիրներին, ժողովրդի կենցաղի բարելավմանը, ապա քաղաքային միջավայրի որակի հարցը, նրա կուլտուրան ստանում են ոչ միայն գեղագիտական, էկոլոգիական, առողջարարական, այլև սոցիալական նշանակություն: Ինչպիսին կլինի քաղաքը, այդպիսին էլ կլինենք մենք: Մենք ենք ձևավորում քաղաքը՝ նրա գեղեցկությունը, նրա առարկայական միջավայրը, հարմարավետությունը, իսկ քաղաքն էլ փոխադարձն է հատուցում մեզ՝ ներգործելով մեր բնավորության, տրամադրության, մեր վարքի վրա:

Այո՛, այն միջավայրը, որտեղ ապրում ենք մենք, պետք է լինի գեղեցիկ, հարմար բոլոր տեսակետներից, պետք է առաջացնի գոհունակության, լիարժեքության, գեղագիտական հաճույքի զգացում: Իսկ դա ստեղծվում է քաղաքի «հագեցվածությամբ» այն ամենով, ինչով քաղաքը քաղաք է դառնում. գեղեցիկ տներ, զբոսայգիներ, փողոցներ, հրապարակներ, շատրվաններ, ճարտարապետության փոքր ձևեր, խանութների ճաշակով ձևավորված ցուցափեղկեր, հարմարավետ պուրակներ, ցուցանակներ: Դրա հետ մեկտեղ, բարեշեն քաղաքն էլ իր պահանջներն է ներկայացնում մեզ՝ քաղաքաբնակներիս: Նա, կարծես թե, ասում է՝ արժանի եղիր ինձ: Անկասկած, խոսակցությունը պետք է տեղի ունենա ինչպես հավասարը հավասարի հետ. ես քեզ բարությամբ եմ հատուցում, բայց դու էլ պետք է ինձ հետ վարվես պատշաճորեն:

Այսպիսով, քաղաքի կուլտուրան ստեղծվում է նրա արտաքին տեսքից, բարեհարմարություններից, ինչպես նաև քաղաքաբնակների վարվեցողության կուլտուրայից: Ասում ենք՝ քաղաքը ձևավորում է մեզ: Եվ ձևավորում է ոչ միայն վերը նշված արտաքին ներգործության միջոցներով, այլև մեր անձնական ժամանակը, մեր ազատ ժամանցը կազմակերպելու կարողությամբ: Մարդն իր քաղաքում չպետք է ձանձրույթ զգա, նույնիսկ մենակ՝ առանց ընկերոջ, զրուցակցի: Այս պարագայում ես նա պիտի ցանկանա մի քիչ նստել զբոսայգու կամ պուրակի հարմար անկյունում, մտնի սրճարան, լինի կինոթատրոնում, թանգարանում կամ ուրիշ հասարակական վայրում: Քաղաքը պետք է ամեն կերպ ընդգծի հոգատարությունը մարդու նկատմամբ, կարծես նախապես կռահի նրա ցանկությունները, նրա պահանջմունքները, պետք է շարունակ քաղաքացու մեջ արթնացնի իր նկատմամբ դրական զգացում, փոխադարձ հաղորդակցման ցանկություն:

Անկասկած, այդ ամենը չի կարող երկնից գալ ինքնըստինքյան: Այն ձեռք է բերվում դարձյալ մարդկանց ջանքերով: Հետևաբար, կարելի է ասել՝ քաղաքի գեղեցկությունը այդ մենք ենք՝ բոլորս:

Հայտնի է, որ քաղաքն՝ ընդհանրապես, իսկ ժամանակակից կապիտալիստական քաղաքն՝ առանձնապես մշակում է յուրատեսակ մտածողություն, հոգեբանություն: Դա կարելի է տեսնել արևմտյան քաղաքների օրինակով. հետնախորշեր, կուտակվածություն, կենտրոնների շքեղություն և ծայրամասերի աղքատություն: Այդ ամենը առաջացնում է շեշտակի սահմանազատում ինչպես բնակիչների վարվելաձևի, այնպես էլ նրանց հետաքրքրությունների, կյանքի պայմանների, հոգեբանության մեջ: Առաջ են գալիս այնպիսի բացասական երևույթներ, ինչպիսիք են թմրամոլությունը, կազմակերպված հանցագործությունը, պոռնկությունը: Արևմտյան ուրբանիստական միջավայրում չքանում է անհատը: Մարդիկ ավելի ու ավելի են հեռանում միմյանցից: Միայնակությունն այնտեղ մարդկանց շրջանում դարձել է համատարած, գրեթե նորմալ վիճակ: Առանձին երկրներում նույնիսկ վտանգավոր է երեկոյան դուրս գալ փողոց:

Միանգամայն այլ սկզբունքներով են ձևավորվում մեր քաղաքները: Կառուցելով, բնակեցնելով այն՝ մենք, պատկերավոր ասած, աշխատում ենք հետներս նոր տուն չբերել հին տան հին սովորույթները: Սովետական կառուցվող քաղաքների գերխնդիրն է՝ ձևավորել մարդուն, ազդել հասարակության բարոյական առողջության, հոգևոր կլիմայի վրա, այսինքն՝ չկորցնել

մարդում, նպաստել բարոյական վեհ արժեքների կուտակմանը:

Մեր համակեցության սկզբունքները հստակորեն ձևակերպված են կուսակցության XXVII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված Քաղաքական զեկուցման մեջ. «Հասարակությունը,— ասված է այնտեղ,— կոնկրետ մարդիկ են, որոնք ունեն կոնկրետ շահեր, իրենց ուրախություններն ու ապրումները, կյանքի մասին, նրա իսկական և կարծեցյալ արժեքների մասին իրենց պատկերացումները...

Սոցիալիզմը բարձր բարոյականության հասարակություն է: Անկարելի է լինել գաղափարական մարդ՝ չլինելով ազնիվ, խղճով, օրինավոր, իր նկատմամբ պահանջկոտ: Որքան եռանդագին հաստատվեն մեր իդեալները, նոր հասարակության սկզբունքներն ու արժեքները, այնքան արդյունավետ կլինի մեր դաստիարակությունը: Պայքարը կյանքի անաղարտության համար գաղափարադաստիարակչական աշխատանքի արդյունավետության, նրա սոցիալական հատույցի բարձրացման, անառողջ երևույթների առաջացումից ապահովվելու ամենաներգործուն եղանակն է»:

Մարդկանց բարձր բարոյականության դաստիարակումը արտադրական խնդիրների հետ միասին ենթադրում է սոցիալական զարգացման, մարդկանց կյանքի, աշխատանքի ու հանգստի պայմանների բարելավման խնդիրների լուծում: Այս տեսակետից մեծ է «1986—1990 թվականներին Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած որոշման նշանակությունը:

Լենինի շքանշանակիր Երևանի առջև երբեք չեն բացվել զարգացման այնպիսի լայն հեռանկարներ, ինչպես հիմա: Մեր հարազատ մայրաքաղաքի նկատմամբ կուսակցության հայրական հոգատարության արտահայտությունն է տվյալ որոշումը: Այն հնարավորություն է տալիս լուծել քաղաքի սոցիալական ինֆրակառուցվածքի բարելավման հարցերի մի ամբողջ կոմպլեքս, սոցիալ-կենցաղային, տրանսպորտային, էկոլոգիական, աշխատավորների կուլտուրական հանգստի կազմակերպման և առողջության ամրապնդման կենսական պրոբլեմները, ավելի բարձր մակարդակի հասցնել ամբողջ քաղաքային տնտեսությունը, բնակչության բնակարանային-կոմունալ սպասարկումը:

Հիրավի, քաղաքը կարելի է դիտել որպես անհատի էթիկական ու գեղագիտական սկզբունքների ձևավորման յուրահատուկ միջավայր. նրա փողոցները, հրապարակները, մոնումենտալ կառույցները, շենքերը, ճարտարապետությունն անմիջականորեն են ներազդում մարդկանց խոհերի ու զգացումների վրա, դաստիարակում, ձևավորում, պատվաստում ճաշակը: Սակայն, ցավոք, Երևանում այնքան էլ շատ չեն այնպիսի փողոցներ, շենքեր, միկրոշրջաններ, որոնք լրիվ չափով կատարեն այդ կարևոր ֆունկցիան: Շատ բնակելի շենքեր արտաքուստ անշուք են, չեն արժանանում ուշադրության: Ասենք նաև, որ վերջին ժամանակներս փորձեր են արվում ինչ-որ կերպ գեղեցկացնելու բետոնապանելային միօրինակությունը:

Մի նկատառում ևս. Երևանի բոլոր մշակութային հաստատությունները՝ թատրոնները, համերգային դահլիճները, թանգարանները, պատկերասրահները «կուտակվել են» քաղաքի կենտրոնում: Ասենք, այդպիսի հաստատությունների թիվն այնքան էլ մեծ չէ: Դրանք քիչ են միլիոնանոց քաղաքի համար: Իսկ հեռավոր միկրոշրջանների բնակիչները հազիվ թե կարող են կանոնավոր հաճախել և՛ Ծիծեռնակաբերդի մարզահամերգային համալիր, և՛ պատկերասրահ, և՛ «Ռոսիա» կինոթատրոն, և՛ Կամերային երաժշտության տուն, և՛ ոչ միայն դրանք: Տրամաբանությունը հուշում է՝ մշակույթի նման կենտրոններ, գուցե իրենց չափերով ավելի համեստ, պետք է ունենան նաև Նորքի, Ավանի, Հարավ-արևմտյան, Դավիթաշենի և այլ միկրոշրջանները: Այստեղ նկատի ունենք ոչ միայն թատրոնների, կինոթատրոնների, գրադարանների, ընթերցասրահների կառուցում, այլև համեստ պատկերասրահների, մարզահրապարակների, վոլեյբոլի, բասկետբոլի, ֆուտբոլի, թենիսի դաշտերի, լողավազանների ստեղծում: Նման կառույցները խիստ կենսական են ու անհրաժեշտ: Դրանցում ոչ միայն կմասսայականացվի սպորտը, կամրապնդվի բնակչության առողջությունը, այլև նրանք կարող են դառնալ մարդկանց անձնական ծանոթության և հաղորդակցման հիանալի վայրեր: Եվ դա շատ կարևոր է այժմ, երբ ուրբանիզացիան թուլացնում է մարդկանց հաղորդակցման, անձնական շփումների հնարավորությունը:

Մեր բնակելի թաղամասերն այսօր, դժբախտաբար, զրկվում են իրենց բակերից, որոնք դարեր շարունակ ծառայել են որպես յուրատեսակ ակումբ, առօրյա ինֆորմացիայի կենտրոն: Եվ ոչ միայն դա: Բակերը կատարում էին նաև դաստիարակչական ֆունկցիա, կարծես բարոյական սկզբունքների յուրատեսակ կոլեկտիվ օրենսդիր էին: Եվ այդ բացը, այդ պակասը ինչ-որ չափով լրացնելու համար մեր միկրոշրջաններին հրամայաբար անհրաժեշտ են ոչ մեծ գրադարաններ, ընթերցասրահներ, ստվերախիտ պուրակներ՝ հարմարավետ անկյուններով, որտեղ մարդ կարողանար առանձնանալ՝ թերթը, գիրքը, էտյուդների նկարակալը ձեռքին: Երկրի մի շարք քաղաքների օրինակով հարկավոր է ստեղծել ոչ մեծ թատրոն-ստուդիաներ, դրանք տեղավորել անբնակ շենքերում, առանձին տների նկուղային հարկերում: Մայրաքաղաքում դանդաղ է ծավալվում սպասարկումների ոլորտը: Միկրոշրջաններում դժվար է գտնել դրանց հետքերը: Չկան ոչ մեծ ճաշարաններ, հարմարավետ սրճարաններ, կենցաղային ծառայության օբյեկտներ:

Անհրաժեշտ է ստեղծել բնակության այնպիսի միջավայր, որի բուն մթնոլորտը քաղաքաբնակի զգացում ներշնչեր ու դաստիարակեր իր բնակիչներին: Հիրավի, մեզանում բնակելի գոտիներում դեռ չեն ձևավորվել այնպիսի ցանկալի վայրեր, որտեղ գործարանային թաղամասերի բնակիչները հաճույքով անցկացնեին իրենց հանգիստը: Չէ՞ որ աշխատանքից ազատ վելու է «Հվքիաթային քաղաք», ավելի ճիշտ՝ անօգուտ ժամանակ չէ: Ազատ ժամանակը պետք է օգտագործվի որքան կարելի է արդյունավետ:

Հուրախություն մեզ, վերջերս իմացանք, որ Երևանյան լճի շրջակայքում կառուցվելու է «Հեքիաթային քաղաք» ավելի ճիշտ՝ «Հեքիաթների քաղաք»: Նախագծվում է Կոնդի շրջանում կառուցել ազգագրական քաղաք: Մանկական երկաթուղու տարածքում գեղատեսիլ Հրազդանի ձորը վերածվելու է երիտասարդական շրջանի՝ մարզական-մշակութային շենքերով: Այս ամենը, իհարկե, չի կարող չուրախացնել, բայց դարձյալ այնպես է ստացվում, որ այդ կառույցները «կուտակվում են» մի տեղում: Հարց է ծագում, իսկ ինչու՞ չի կարելի քաղաքի տարբեր շրջաններում հիմնել մասնագիտացված զբոսայգիներ, ինչպես այդ արվում է եղբայրական Բուլղարիայի մայրաքաղաք Սոֆիայում:

Հետաքրքիր շատ բան կարելի է անել, բայց այդ ամենն ի՞նչ արժեք կունենա, եթե մայրաքաղաքի բնակիչը նյութական արժեքների նկատմամբ ունեցած իր վերաբերմունքով, հասարակական վայրերում ցուցաբերած իր վարքագծով, լինի դա թատրոն, կինոթատրոն, մարզահրապարակ, ավտոբուս կամ տրոլեյբուս, չներդաշնակվի հարազատ քաղաքի հետ:

Բարի ավանդույթ է դարձել «Էրեբունի—Երևան» տոնակատարությունը, որը մի նոր, գեղեցիկ էջ բացեց հարազատ մայրաքաղաքի տարեգրության մեջ: Այդ օրվա տոնական մթնոլորտը լիցք է հաղորդում երևանցիներին, որոնք իրենց ստեղծագործական տաղանդի արգասիքը հրապարակ են բերում՝ ուրախություն պատճառելով համաքաղաքացիներին ու հյուրերին: Այսօր, երբ մեր երկրում տեղի են ունենում, հիրավի, հեղափոխական վերափոխումներ, մեր խնդիրն է վճռաբար ու հետևողականորեն ազատվել մեր առաջընթացը կասեցնող նեգատիվ երևույթներից, քաղաքացիական կրքով զորավիգ լինել նորին ու առաջավորին, արտամղել մեր միջից անտարբերության ու ինքնամեկուսացման ախտը:

Անելիքները շա՜տ-շա՜տ են: Դա առանձին մարդկանց ուժից վեր է: Ուստի, գուցե, անհրաժեշտ է մայրաքաղաքի բնակիչների ջանքերը միավորել Երևանի, բարեկամների ակումբում և որպես նրա նշանաբան ընդունել՝ «Սիրել քաղաքը, ինչպես այգեպանն է սիրում իր այգին» խորհուրդը: Իսկ դրա խորհրդանշանը դարձնել երևանցի մանչուկի՝ ջրավաճառ տղայի արձանը, որը դրված է 26 կոմիսարների անվան զբոսայգու մուտքի մոտ: Թող այդ ակումբի անդամի կուրծքը միշտ զարդարի ջրավաճառ տղայի պրոֆիլով կրծքանշանը, թող մանկական քաղցր ու զրնգուն կանչը, որով գովերգում էր Երևանի սառնորակ ջուրը, շարունակ հնչի մեր ականջներին:

Ակումբն այդ ձևով կկարողանար իր շուրջը համախմբել բոլոր նրանց, ովքեր բարձր են գնահատում երևանցու անունը, ովքեր ցավում են քաղաքի համար, ովքեր ուզում են, որ նա իրոք լինի գեղեցիկ: Ակումբի բաժանմունքներ ցանկալի է ստեղծել բոլոր ուսումնական հաստատություններում, դպրոցներում, պիոներական ջոկատներում ու ֆաբրիկաներում, հիմնարկներում:

Տիրոջ հոգատարություն ցուցաբերել հարազատ քաղաքամայր Երևանի փողոցների, տների, ծառերի, ջրի, օդի նկատմամբ, պահպանել ու հարստացնել նրա գեղեցիկ բնապատկերը: Պահպանել նրա հուշաքարն ու կոթողը՝ որպես մեր գոյության առհավատչյա: Երևանյանը պետք է արտահայտվի մարդկայնության, գեղեցկության, բանականության ամենաբարձր չափանիշով:

Քաղաքի նկատմամբ սիրո ու նվիրումի միակ չափանիշը մեր արարքներն ու գործերն են, որոնք նյութականացվում են մեր Երևանի հրաշագեղ ճարտարապետության ինքնատիպ հնարանքներում, երևանցիների գործելակերպում ու վարվելակերպում:

բնակարանի հերթ և այլն) զրկվելու սպառնալիքը հարբեցողին, որը անցյալում ոչ մի երկյուղ չուներ, ստիպում է սակվել, չերևալ փողոցում: Նա սկսում է խմել տանը, ընտանիքի ներկայությամբ: Եվ հարբածության այլանդակ հետևանքները բաժին են ընկնում խեղճ տնեցիներին... Սրան հարկավոր է հատուկ ուշադրություն նվիրել:

Մինչև վերջերս էլ իսկական դժբախտություն էր օղեթորումը գյուղական վայրերում: Դրան վերաբերվում էին ինչ-որ թողտվությամբ: Այդ ամենը ստիպեց մեզ ոչ միայն կազմակերպել ու անցկացնել միլիցիայի և դրուժիննիկների ստուգայցեր, այլև լայն պրոպագանդա ծավալել օղեթորողների դեմ: Հասարակական հավաքույթներում կուսակցական, իրավապահպան մարմինների աշխատողները պատմում են այն մասին, թե օղեթորողները ինչպիսի հսկայական վնաս են պատճառում մեր ընդհանուր գործին, ինչպես են նրանք հարստանում ուրիշների դժբախտության հաշվին: Վերջերս Շամշադինի շրջանում դատական պատասխանատվության էր ենթարկվել երկու մարդ, որոնք բնակվում են Պառավաքարում: Մեկը տրակտորիստ է, մյուսը՝ անասնապահ: Զարմանալին այն է, որ դատի ժամանակ հասարակայնության մի մասը ընդունեց հակառակ դիրք: Օրենքը խախտողներին դատապարտելու փոխարեն դատական պրոցեսի ընթացքում լսվում էին կարեկցանքի ձայներ, օղեթորողներին արդարացնելու փորձեր: Ահա թե ինչեր են լինում...

Նման դեպքերը պետք է դատապարտել մամուլում, ռադիոհեռուստատեսային հաղորդումներում, հրապարակային դասախոսություններում: Ինչ խոսք, այսօր սթափ ապրելակերպի հաստատման համար տարվող պայքարում հասարակայնության ակտիվությունը ակնհայտորեն բավարար չէ: Անհրաժեշտ է գաղափարական ներգործման աշխատանքը շաղկապել պրակտիկ միջոցառումների, անալկոհոլ հարսանիքների, հանգստի երեկոների, այլ հանդիսությունների անցկացման հետ: Այս առնչությամբ ուշադրության արժանի է, օրինակ, Լենինականում անցկացված միջոցառումը: Հատուկ կոնստրուկտորական բյուրոյի 60 աշխատողներ հավաքվել էին ընտանեկան երեկոյի առանց ալկոհոլային խմիչքների: Այն կազմակերպել էին սթափության համար պայքարի քաղաքային ընկերությունը, «Գիտելիք» ընկերության տեղական բաժանմունքը, ժողովրդական դեպուտատների Լենինականի քաղսովետի գործկոմի կուլտուրայի բաժինը: Հանդիպմանը ներկա էին մի շարք ղեկավար աշխատողներ, որոնք պատասխանեցին երեկոյի մասնակիցների բազմաթիվ հարցերին: Թեյի բաժակի շուրջը անցկացված այդ միջոցառումը բովանդակալից էր, հետաքրքրական, ափսոս, սակայն, որ նման միջոցառումներ մեզ մոտ սակավ են կազմակերպվում:

**— Ի՞նչ է դարձյալ հարկավոր ձեռնարկել ներկա փուլում, որպեսզի առաջին քայլերը, որ արդեն արված են հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ պայքարի բնագավառում, չդանդաղեն, այլ, ընդհակառակն՝ ընդունեն առավել նպատակաուղղված և հարձակողական բնույթ:**

— Նախ և առաջ կամենում եմ նշել, որ չնայած արված գործնական աշխատանքին, դեռևս անբավարար են իրականացվում հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ պայքարի ուժեղացման վերաբերյալ կուսակցության ցուցումները: Հարբեցողության երևույթները, հատկապես կենցաղում, բնավ չեն հաղթահարված և պահանջվում է ուժեղացնել պայքարը, դրան հաղորդել առավել մասսայական բնույթ: Կուսակցական կոմիտեների միջոցառումները պետք է խարսխված լինեն քրտնաջան աշխատանքի վրա, ընդգրկեն սոցիալական և տնտեսական հարցերի ողջ կոմպլեքսը, նպատակամղվեն ուժերի ծավալմանը այդ նպատակին: Հարբեցողության դեմ լայն ու անզիջում պայքարը ոչ ամենուրեք է անհրաժեշտ թափ ստացել: Մի շարք տեղերում ղեկավար աշխատողները, ակտիվը դեռևս չեն գիտակցել այդ նպատակով ձեռնարկվող միջոցների քաղաքական և սոցիալական նշանակությունը:

Չեն հաղթահարվել բարեհոգությունը և լիբերալիզմը ալկոհոլը չարաշահող անձանց նկատմամբ: Հարբեցողությունը հաղթահարելու հարցում դեռևս կան ձևական և անիրազեկ մոտեցման փաստեր:

Դանդաղ են դրական տեղաշարժերը աշխատավորների, հատկապես երիտասարդության կուլտուրական հանգստի կազմակերպման գործում: Էական փոփոխություններ են հարկավոր ակումբների, գրադարանների, մարզական կառույցների աշխատանքի բովանդակության մեջ: Չի ապահովվում աշխատավորների և նրանց ընտանիքների անդամների լայն ներգրավումը ակտիվ հանգստի մեջ: Դանդաղկոտություն է դրսևորվում անալկոհոլ ծիսակատարությունների տարածման գործում: Կուլտուր-լուսավորական հիմնարկությունների և մարզական կառույցների մեծ մասը նախկինի պես աշխատում է ոչ լրիվ օր, անբավարար է օգտագործում երեկոյան ժամերը, հանգստյան ու տոն օրերը:



Ինչպես արդեն ասվեց, վերջին ժամանակներս հարբեցողությունը տեղափոխվում է կենցաղի ոլորտը: Հաշվի առնելով այդ, անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել հակաալկոհոլային աշխատանքին ըստ բնակության վայրի: Այստեղ պահանջվում է անհատական աշխատանք տանել սպիրտային խմիչքներ օգտագործելու հակում ունեցող անձանց հետ: Հարկավոր է ակտիվորեն կիրառել աշխատանքի այնպիսի ձևեր, ինչպես սթափության ակումբներն են, որոնց ներգործությունը դեռևս բարձր չէ:

Հարկավոր է մարդկանց մշտապես համոզել ալկոհոլիզմը կյանքից իսպառ վերացնելու անհրաժեշտության մեջ, անշեղորեն հետևել սպիրտային խմիչքների կտրուկ կրճատմանը: Ցավոք, մարդկանց գիտակցության մեջ դեռևս բավականաչափ լայնորեն են տարածված ալկոհոլի հատկությունների, մարդկանց կյանքում նրա դերի վերաբերյալ սխալ պատկերացումները:

Մի շարք ղեկավար աշխատողներ դեռևս ոչ բավարար լրջությամբ են ընկալում հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ պայքարի խնդիրները: Սթափ ապրելակերպը պետք է նորմ դառնա բոլորի համար:

Հաճախ է հարկ լինում լսել այն մասին, թե Հայաստանում, որտեղ ալկոհոլիզմով հիվանդների թիվը նկատելիորեն ցածր է միութենական ցուցանիշների համեմատությամբ, այդ պրոբլեմը կարող է և շրջանցվել: Պնդում են, թե մեզ մոտ փողոցներում հազվադեպ կարելի է պատահել հարբածների և, ամենագլխավորը, մեր հանրապետությունում չկա սթափարան: Սակայն, ինչպես վկայում է պրակտիկան, շա՜տ վաղ է նիրհել դափնիների վրա:

**— Բնական է, որ սթափության համար պայքարի հայկական կամավոր ընկերությունը իր գործունեությունը կառուցում է կազմակերպական-մասսայական միջոցառումների հեռանկարային պլանի հիման վրա: Չէի՞ք կարող անդրադառնալ այդ աշխատանքի առավել կարևոր ուղղություններին:**

— Ներկայումս ընկերության հանրապետական խորհուրդը մշակում է լրացուցիչ միջոցառումների կոմպլեքսային պլան, որը նախատեսում է ստեղծել ոչ ալկոհոլային գոտիներ առողջարանային տեղերում, սանատորիաներում, պրոֆիլակտորիումներում, մասնավորապես Հանքավանում, Դիլիջանում, Արզնիում, Ջերմուկում, Սևանա լճի ափերին: Ինչպես հայտնի է, Ծաղկաձորն արդեն դարձել է հանգստի ոչ-ալկոհոլային գոտի:

Ինչպես և նախկինում, սթափության համար պայքարի կամավոր ընկերության անդամները մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի աշխատողների հետ միասին կմասնակցեն «Արդյունավետ աշխատանքի և առողջ կենցաղի համար» համամիութենական ստուգայցին, որը կազմակերպում են ՍՍՀՄ ժուռնալիստների միությունը և սթափության համար պայքարի համամիութենական կամավոր ընկերությունը: Ստուգայցի գլխավոր նպատակը ոչ թե պարզապես թերությունները արձանագրելն է, այլ բացահայտել պատճառները, հասնել դրանց վերացմանը, հուշել ծագող պրոբլեմների լուծման կոնկրետ ուղիներ, ռեալ ավանդ ներդնել արդյունավետ աշխատանքի և առողջ կենցաղի համար պայքարում, գտնել արտադրության խելամիտ կազմակերպման, բովանդակալից հանգստի տարածման արժանի դրական փորձը, դրա մասին վառ և համոզիչ կերպով պատմել մամուլում, հեռուստատեսությամբ և ռադիոյով:

Բացի այդ, սթափության համար պայքարի կամավոր ընկերության հանրապետական խորհրդի աշխատանքի պլանին համապատասխան, պետք է անցկացվեն գիտապրակտիկ կոնֆերանսներ քաղաքներում ու շրջաններում, սեմինար-խորհրդակցություններ: Նախատեսվում է կազմակերպել «Կլոր սեղանի շուրջը» զրույցներ՝ գիտությունների ակադեմիայի, հանրապետության ներքին գործերի և առողջապահության մինիստրությունների հետ համատեղ, ինչպես նաև հակաալկոհոլային պրոպագանդային վերաբերող պլակատների ցուցահանդես՝ ՀԼԿԵՄ Կենտկոմի, նկարիչների միության և «Հայաստան» հրատարակչության մասնակցությամբ:

Այս տարի անցկացվելիք առանձին միջոցառումներից առավել նշանակալից են սթափության համար պայքարի կամավոր ընկերության հանրապետական խորհրդի պլենումը՝ «ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարների որոշումների լույսով աշխատավորների շրջանում սթափության համոզմունքների ձևավորման և ընկերության կազմակերպությունների մարտունակության բարձրացման ասպարեզում հասարակայնության խնդիրների մասին» թեմայով, ընկերության քաղաքային ու շրջանային խորհուրդների նախագահների, պատասխանատու քարտուղարների, վերստուգիչ հանձնաժողովների նախագահների հանրապետական սեմինար-խորհրդակցություն՝ նվիրված հակաալկոհոլային պրոպագանդային և այլն:

Մի խոսքով, այդ միջոցառումների ողջ կոմպլեքսը կնպաստի հասարակայնու-

թյան է՛լ ավելի ակտիվ մասնակցությանը հարբեցողության և ալկոհոլիզմի դեմ մղվող տևական պայքարին, կօգնի այդ կարևոր գործին տալ մասսայական, համաժողովրդական բնույթ:

Հանրապետության մի շարք քաղաքներում և շրջաններում գործում են սթափության գոտիներ, երիտասարդության համար ստեղծվում են հանգստի անցկացման լավ պայմաններ, որոնք օգնում են ազատ ժամանակի արդյունավետ կազմակերպմանը, հատկապես գյուղական վայրերում:

Հարկավոր է ուղղակի ասել, որ առանց կուսակցական կոմիտեների աջակցության և օգնության մենք չէինք կարող հաստատել այն սթափ իրադրությունը, որը, ինչպես շատերը նկատել են, տիրում է հանրապետության որոշ ռեգիոններում: Դա առաջին հերթին վերաբերում է Երևանին, Լենինականին, Կիրովականին, Աբովյանի, Արտաշատի շրջաններին:

Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները բյուրոյի նիստերում, սկզբնական կուսկազմակերպությունները՝ ժողովներում, պլանաչափորեն քննարկում են սթափ ապրելակերպի ամրապնդման, հարբեցողության ու ալկոհոլիզմի դեմ պայքարի ուժեղացման հարցերը, միջոցառումներ մշակում այդ գործում եղած ուսանելի փորձը լայնորեն տարածելու, բացահայտված թերությունները վերացնելու համար: Չնայած բոլոր շրջաններում ու քաղաքներում սթափության համար պայքարի կամավոր կազմակերպությունների ստեղծմանը, այնուամենայնիվ, ցանկալի է, որ բարելավվի առանձին կոմիտեների աշխատանքը: Դա վերաբերում է Ամասիայի, Աշտարակի, Սևանի, Ախուրյանի, Գորիսի և մի քանի այլ շրջանների, ինչպես նաև Դիլիջան քաղաքին: Այստեղ անհրաժեշտ է ամրապնդել այդ ստորաբաժանումների և կուսակցական ու սովետական, իրավապահպան մարմինների, հասարակայնության գործնական կապերը: Միայն կոմպլեքսային միջոցառումներով է հնարավոր հասնել գոհացուցիչ արդյունքների:

Մեր ընկերության առջև մեծ ու պատասխանատու խնդիրներ են դրվում բոլորովին վերջերս ՍՄԿԿ Կենտկոմի ընդունած՝ «Հարբեցողությունն ու ալկոհոլիզմը հաղթահարելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումների կատարման և այդ աշխատանքի ակտիվացման ընթացքի մասին» որոշմամբ և «Տնային օղեթորման համար պատասխանատվության մասին» ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով:

Որոշման մեջ նշվում է, որ կենտրոնում և տեղերում զգալի աշխատանք է կատարվել գինեսթափ ապրելակերպ հաստատելու, հարբեցողության նկատմամբ անհանդուրժողության իրադրություն ստեղծելու նպատակով: Սրա հետ մեկտեղ այդ աշխատանքը ամենուրեք չէ, որ կատարվում է պատշաճ հաստատակամությամբ, հարձակողականությամբ և հետևողականությամբ: Առայժմ չի հաջողվել ամենուրեք պայքարի լայն ճակատ ստեղծել հարբեցողության դեմ և դեպի այդ պրոբլեմները թեքել բոլոր կուսակցական և հասարակական կազմակերպությունները, բարձրացնել աշխատավորական կոլեկտիվների դաստիարակչական դերն ու ազդեցությունը, ապահովել դաստիարակչական, տնտեսական ու վարչական-իրավական միջոցառումների համար զուգորդումը:

Հարկ կլինի է՛լ ավելի մեծ, քրտնաջան ու նպատակաուղղված աշխատանք տանել հասարակության կյանքից ալկոհոլը բացառելու անհրաժեշտության մեջ մարդկանց համոզելու համար: Այո՛, հարբեցողության պրոբլեմը լուծված չէ: Ավելին, այն կերպափոխվել է, անցել «ընդհատակ», տեղայնացվել կենցաղի ու անձնական կյանքի ոլորտում, սոցիալական վերահսկողության համար դարձել դժվար խոցելի: Հակաալկոհոլային պրոպագանդայի արդյունավետության բարձրացման համար անհրաժեշտ է լայնորեն պրոպագանդել այս նոր փաստաթղթերը, քաղաքացիներին ծանոթացնել նորմերի այն ողջ համակարգին, որոնք օրենսդրորեն ամրապնդում են հարբեցողության և ինքնաօղեթորման դեմ հետագա պայքարի միջոցառումները:

Ընկերության տեղական կազմակերպություններին օգնելու նպատակով այժմ նախապատրաստվում են լրացուցիչ գիտամեթոդական հանձնարարականներ, տարբեր հարցերի վերաբերյալ տեղեկատու նյութեր, մշակվում է գինեսթափության, առողջ ապրելակերպի, կյանքի ամենաբազմազան կողմերի վրա ալկոհոլի բացասական ներգործության պարզաբանման մասին դասախոսությունների թեմատիկա: Հայկական ՍՍՀ պետհեռուստառադիոկոմիտեի, առողջապահության և ներքին գործերի մինիստրությունների հետ համատեղ կկազմակերպվի հեռուստահաղորդումների շարք «Հանուն առողջության», «Մարդ և օրենք» թեմաներով: Կինոթատրոններում անցկացվում են հակաալկոհոլային ֆիլմերի ցուցադրման տասնօրյակներ:

Մենք արել ենք առաջին քայլերը և դեռևս անելիքներ շատ ունենք: Եվ այստեղ պահանջվում են ողջ հասարակայնության ջանքերը, որպեսզի լիովին վերացվի հարբեցողությունը՝ որպես սոցիալական չարիք: Այդ պայքարում թուլացում և թերացում չպետք է լինեն...





# ԹԱՆԳԱՐԱՆՆԵՐԻ ՎՍԵՄ ՊԱՐՏՔԸ

**Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
**Թանգարանագիտության հանրապետական գիտամեթոդական բաժնի վարիչ**

Ա**ՆՑՅԱԼԻ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԱՐԺԵՔՆԵՐԻ** նկատմամբ ցուցաբերվող հոգատարությունը, դրանք մարդկանց կոմունիստական դաստիարակության գործին ծառայեցնելը մեր կուսակցության ու պետության կուլտուրական քաղաքականության բնորոշ գծերն են, որոնք իրենց վավերացումն են ստացել ՍՍՀՄ սահմանադրության, ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության, «Պատմության և մշակույթի հուշարձանների պահպանման և օգտագործման մասին» ՍՍՀՄ օրենքի, գաղափարախոսական հարցերի վերաբերյալ կուսակցական փաստաթղթերի մեջ:

«Կուսակցությունն իր **կուլտուրական քաղաքականության** գլխավոր խնդիրը տեսնում է նրանում,— ՍՄԿԿ XXVII համագումարին տված Քաղաքական զեկուցման մեջ ասաց ընկ. Մ. Ս. Գորբաչովը,— որ ամենալայն ասպարեզ բացի մարդկանց ընդունակությունների դրսևորման համար, նրանց կյանքը դարձնի հոգեպես հարուստ, բազմազան: Արմատական փոփոխությունների ձգտելով նաև այս բնագավառում՝ կարևոր է կուլտուր-դաստիարակչական աշխատանքն այնպես կառուցել, որ դա առավել լրիվ բավարարի մարդկանց հոգևոր պահանջմունքները, ընդառաջ գնա նրանց հետաքրքրություններին» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 126):

Կուսակցության առաջադրած խնդիրներից ելնելով՝ մեր երկրում հսկայական ուշադրություն է դարձվում թանգարանային բարձրարվեստ ցուցադրությունների ստեղծմանը, դրանց գաղափարագեղարվեստական մակարդակի բարձրացմանը, ֆոնդերի գիտական համալրմանը, հաշվառմանն ու պահպանմանը, ինչպես նաև գիտահետազոտական, գիտամասսայական աշխատանքների համակողմանի կազմակերպմանը:

Մեր օրերում մեծ ու պատասխանատու սոցիալական դեր է վիճակված թանգարաններին: Ստանձնելով անցյալ և ներկա սերունդների մարդկային ու աշխատանքային սխրանքներին, գիտությանը, տեխնիկային, մշակույթին և հասարակական կյանքի մյուս բնագավառներին վերաբերող արժեքները կորստից փրկելու, դրանք հավերժ պահպանելու, ուսումնասիրելու, գիտական մշակման ենթարկելու և պրոպագանդելու գործը՝ թանգարանները աջակցում են կուսակցությանը՝ սովետական մարդկանց մեջ մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, նրանց գեղագիտական դաստիարակության, ակտիվ հանգիստը լավագույն ձևով կազմակերպելու գործում:

Թանգարանային հարուստ ավանդույթներ ունի Սովետական Հայաստանը, որտեղ գործող 86 պետական և ավելի քան 200 հասարակական հաստատություններն իրենց ֆոնդերում պահպանում և ցուցադրում են շուրջ 1,5 միլիոն միավոր արժեքներ: Այստեղ տարեկան հաճախում են 2,5 միլիոնից ավելի այցելուներ: Թանգարանների մասսայական, գիտալուսավորական աշխատանքները վաղուց դուրս են եկել նեղ շրջանակներից՝ ներառելով հանրապետության քաղաքներն ու գյուղական բնակավայրերը: Ավանդական դարձած շրջիկ ցուցահանդեսները, կազմակերպվող հանդիպումները, դասախոսություններն աշխատավորների հետ ուղեկցվում են կինոֆիլմերի ցուցադրումներով, երաժշտական կոլեկտիվների ու անհատ կատարողների համերգներով, բազմաբնույթ այլ միջոցառումներով:

Թանգարանների միջազգային օրը՝ մայիսի 18-ը, նշվում է հավուր պատշաճի։ Իսկ «բաց դռների օրերը», եզակի ցուցանմուշների ցուցադրումները, գիտնականների, թանգարանային աշխատողների հանդիպումները լայն հասարակայնության հետ բազմապատկում են նրանց այցելուների թիվը։ Հանրապետության թանգարաններն իրենց աշխատանքները հաջողությամբ կոորդինացնում են գիտական ու հասարակական կազմակերպությունների հետ, անցկացնում համատեղ թեմատիկ միջոցառումներ։

Կուսակցական ու պետական ձեռնարկումների իրականացման շնորհիվ վերջին տարիներին կուլտուրայի մինիստրությունը, համապատասխան գերատեսչությունները ու կազմակերպությունները շոշափելի աշխատանք են կատարել կուլտուր-լուսավորական այդ օջախների ցանցի ընդլայնման և զարգացման, նրանց պայմանների բարելավման ու նյութատեխնիկական բազայի ամրապնդման նպատակով։ Նոր, հարմարավետ շենքեր են տրամադրվել պետական պատկերասրահին, Ե. Չարենցի անվան գրականության և արվեստի, ժամանակակից արվեստի, Հայաստանի կոմերիտմիության պատմության թանգարաններին, Կիրովականի, Կամոյի, Հրազդանի, Էջմիածնի երկրագիտական, Մեծամորի պատմահնագիտական թանգարաններին, Ա. Խաչատրյանի, Խ. Աբովյանի, Ստ. Զորյանի, Ե. Քոչարի, Մ. Ավետիսյանի, Ա. Տիգրանյանի, Ս. Մերկուրովի տուն-թանգարաններին։ Լենինականի բնակիչները ջերմորեն ընդունեցին Ջիթողցյանների նախկին տան վերականգնումը, որտեղ կազմակերպված ժողովրդական ճարտարապետության և քաղաքային կենցաղի թանգարանը ոչ միայն ազգագրության պետական թանգարանի լավագույն մասնաճյուղն է, այլև իր տեսակի մեջ եզակի մի երևույթ է երկրում։ Թարմացվել, թանգարանագիտության ժամանակակից պահանջներին համապատասխան են դարձվել «Սովետական Հայաստանը Հայրենական մեծ պատերազմում 1941—1945 թթ.», Երևանի պատմության, «Էրեբունի», Իջևանի «Սովետական կարգերի հաստատումը Հայաստանում» թանգարանների, Խ. Աբովյանի, Ա. Խաչատրյանի տուն-թանգարանների ցուցադրությունները։ Աշխուժացել են թանգարաններում անցկացվող մասսայական միջոցառումները, հարստացվել շրջիկ ցուցահանդեսների թեմատիկան։

Հանրապետության թանգարանների աշխատանքը ըստ արժանվույն գնահատման մասին է խոսում այն փաստը, որ տասնմեկերորդ հնգամյակի բոլոր տարիներին ազգագրության պետական թանգարանն արժանացավ ՍՍՀՄ կուլտուրայի մինիստրության և կուլտուրայի աշխատողների արհմիության Կենտկոմի փոխանցիկ դրոշին։ Մշակույթի այս օջախը նրա կոլեկտիվի ջանքերի ու բարձր պրոֆեսիոնալիզմի շնորհիվ դարձել է աշխատավորության հիրավի սիրած վայրը։ Ներկայումս աշխատանքներ են տարվում նոր թանգարաններ բացելու ուղղությամբ։ Դրանց շարքում, անշուշտ, կառանձնանա Վ. Ի. Լենինի կենտրոնական թանգարանի երևանյան մասնաճյուղը, որը կդառնա առաջնորդի կյանքի ու գործունեության ուսումնասիրման և պրոպագանդման հանրապետական կենտրոն։ Այստեղ կցուցադրվեն նաև Հայաստանում լենինյան գաղափարների տարածմանը, հայ ժողովրդի հետ առաջնորդի առնչություններին, նրա հայ զինակիցներին, սովետական իշխանության տարիներին մեր հանրապետության ձեռք բերած նվաճումներին վերաբերող բազմաթիվ նյութեր ու վավերագրեր։

Նախատեսվում է Երևանում կազմակերպել հայ բժշկագիտության պատմության, Հ. Այվազովսկու, Ալ. Գրիբոյեդովի, Վ. Տերյանի թանգարաններ, Էջմիածնում՝ գորգի, Օշականում՝ հայ գրի և դպրության թանգարան, երկրագիտական թանգարաններ Վարդենիսում, Սևանում, Մեղրիում, Մարտունիում և հանրապետության այլ շրջաններում։ Մոսկվայում ավարտին են մոտենում Լազարյանների արևելյան լեզուների ինստիտուտի նախկին շենքում բացվելիք հայ և ռուս ժողովուրդների բարեկամության թանգարանի կազմակերպման աշխատանքները։ Իջևանի շրջանում, մեր երեք հանրապետությունների սահմանամերձ Ազատամուտ բանավանում, կհիմնադրվի անդրկովկասյան ժողովուրդների բարեկամության թանգարան։

Թանգարաններում ծավալուն աշխատանքներ են տարվում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 70-ամյակը արժանավայել գործերով դիմավորելու համար։ Այցելուներին նորովի կներկայանան հեղափոխության, Կիրովականի և Եղեգնաձորի երկրագիտական թանգարանները, պատմության պետական թանգարանի Հրազդանի մասնաճյուղը։ Կթարմացվեն թանգարանների ցուցադրությունները, դրանք կլրացվեն սովետական հասարակության զարգացման ներկա փուլն արտացոլող նոր նյութերով, կկազմակերպվեն մի շարք շրջիկ ցուցահանդեսներ։

Հաջողությունները ու առաջընթացի հեռանկարները, ինչ խոսք, մշակութային



գործունեության այս կարևոր բնագավառում շոշափելի են։ Այդուհանդերձ, կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքներում դեռևս քիչ չեն թերությունները ու բացթողումները։ Թանգարանների աշխատանքներում տեղ գտած թերությունների, դրանց վերացման ուղիների հարցը 1986 թվականի մարտին քննարկվեց ՀՍՍՀ Գերագույն սովետի ժողովրդական կրթության ու կուլտուրայի հանձնաժողովի նիստում։ Նշվեց, որ, չնայած ձեռք բերված որոշակի հաջողություններին, շատ թանգարաններ դանդաղորեն են վերակառուցում իրենց աշխատանքը ժամանակի պահանջներին համապատասխան, անբավարար են օգտագործում ժողովրդի հոգևոր և նյութական մշակույթի արժեքները լայնորեն պրոպագանդելու ու մասսայականացնելու հնարավորությունները։ Անհրաժեշտ բարձրության վրա չէ այցելուների սպասարկումը, դանդաղ են իրագործվում թանգարանային շենքերի նորոգման ու վերակառուցման աշխատանքները և այլն։ Հանձնաժողովի ընդունած հանձնարարականներում նշվում են թերությունները ու բացթողումները վերացնելու կոնկրետ ուղիներ։

Հանրապետության թանգարանների գերակշռող մասը տեղավորված է ոչ թե հատուկ նախագծված ու կառուցված, այլ այդ նպատակի համար հարմարեցված շենքերում։ Ծենքի վթարային վիճակի պատճառով 10 տարուց ավելի է, որ չի գործում Հայաստանի բնության պետական թանգարանը՝ մեր բնության պրոպագանդման լավագույն օջախը, մատաղ սերնդի էկոլոգիական դաստիարակության կենտրոններից մեկը։ Ծանր պայմաններում է գտնվում նաև Երևան քաղաքի պատմության թանգարանը։ Ղափանի երկրագիտական թանգարանն ու Հայաստանի պատմության պետական թանգարանի Սպիտակի մասնաճյուղը տեղավորված են բնակելի շենքերի առաջին հարկերում։ Զանգեզուրի պատմական կենտրոնի՝ Գորիսի, երկրագիտական թանգարանը տեղավորված է եկեղեցու փոքրիկ և արդեն քայքայված շենքում։ Տասնյակ տարիներ չի լուծվում ցուցանմուշներով հարուստ, այցելուների պակաս չզգացող այս թանգարանին նոր շենք տրամադրելու, եզակի ցուցանմուշները կործանումից փրկելու, դրանք լայն հանրությանը ի տես հանելու հարցը։ Մտահոգիչ է նաև Հայաստանի պատմության, հեղափոխության, Ե. Չարենցի անվան գրականության և արվեստի թանգարանները, պետական պատկերասրահը թանգարանային մեկ համալիրի մեջ ամփոփելու փաստը։ Տարբեր պրոֆիլի այս հաստատությունները, ուր պահվում ու ցուցադրվում են հանրապետության մշակութային արժեքների հիմնական մասը՝ մեկ միլիոնից ավելի ցուցանմուշներ, լրացուցիչ ցուցադրական և ֆոնդային տարածքների, աշխատասենյակների ու լաբորատորիաների խիստ կարիք են զգում։ Չի լուծված նաև համալիրը միասնական պահպանական-հակահրդեհային համակարգով ապահովելու հարցը, որը պատճառ է դառնում թանգարանային արժեքների կորուստների։ Չլուծված բազմաթիվ հարցեր կան թանգարանների նաև նյութատեխնիկական բազայի ամրապնդման, դրանք ժամանակակից տեխնիկայով հագեցնելու, ցուցադրությունների ձևավորման, ֆոնդերի պահպանման գործում։ Եթե այսօր երկրի շատ թանգարաններում սովորական են դարձել հաշվողական տեխնիկան ու տեսամագնիտաֆոնները, ջերմության և խոնավության ռեժիմների ինքնաշխատ կարգավորիչները, ապա մեր հանրապետության թանգարանները դեռևս դժվարանում են ձեռք բերել նույնիսկ ոչ բարդ սարքավորումներ կամ տեխնիկական միջոցներ։ Կուլտուրայի մինիստրության համակարգում թանգարանային կահույքի պատրաստման, ցուցադրությունների ձևավորման, արժեքների վերականգնման ու կոնսերվացման մասնագիտացված արվեստանոցների բացակայությունը մեկը մյուսից դժգույն ցուցադրությունների ստեղծման ու ֆոնդերի քայքայման պատճառ է դարձել։ Անհանդուրժելի է, որ մեծ թվով համապատասխան մասնագետների առկայության պայմաններում էլ այսօր, ինչպես տարիներ առաջ, մեր թանգարանների ձևավորումը հիմնականում հանձնարարվում է այդ գործի համար պատահական մարդկանց, որոնք անկարող են հաշվի առնել ժամանակի պահանջները, այցելուների արդի կուլտուրկրթական մակարդակը։ Ցուցադրության բովանդակությունը, գաղափարաքաղաքական որոշակի կողմնորոշվածությունը պետք է շեշտվի նպատակամետ ձևավորմամբ, իսկ ոչ բանիմաց մոտեցումն այս դեպքում կարող է միայն ու միայն վնասել գործին։

Ցուցադրական անհրաժեշտ տարածքների բացակայության պատճառով այսօր լայն հանրությանը ներկայացվում է պահվող արժեքների լոկ 4—5 տոկոսը։ Մնացածի մասին հակիրճ ինֆորմացիա կարող են հաղորդել միայն թանգարանային կատալոգները ու համահավաք ցուցակները։ Իսկ այդպիսիք առայժմ չեն կազմվում և հեռանկարային պլաններում էլ չկան։ Վատ է դրված թանգարանների ռեկլամի, հրատարակությունների գործն ընդհանրապես։ Հարկավոր է հանրապետության խոշոր

թանգարաններից գոնե մեկին տալ հրատարակչական իրավունք, որը կսպասարկեր նաև ողջ համակարգին: Դա, անշուշտ, կբարձրացներ դրանց գիտալուսավորական, գիտահետազոտական ու գիտամեթոդական աշխատանքների մակարդակը: Ի դեպ այդ աշխատանքները շատ ավելի արդյունավետ կլինեին, եթե մյուս հանրապետությունների նման մեզ մոտ ևս ստեղծվեին թանգարանների պրոֆիլային միավորումներ: Փորձը ցույց է տալիս, որ աշխատանքի կազմակերպման այս ձևը շահավետ է թե՛ տնտեսապես և թե արժեքների պահպանության ու պրոպագանդման առումով: Աշխատանքների կազմակերպման այս առաջավոր մեթոդը մեզանում իրեն լիովին արդարացրել է գրադարանների համակարգում և ժամանակն է թանգարաններում ևս կիրառել այն:

Հանրապետության թանգարաններում աշխատում են իրենց գործին նվիրված շատ մարդիկ: Սակայն փաստ է, որ մասնագիտական համապատասխան կադրերի մեծ պահանջ ունեն թանգարանները: Այդ է պատճառը, որ այսօր թանգարանային ցուցադրություններից շատերը համահունչ չեն ժամանակին, չեն հուզում այցելուին, չեն թարմացվում նոր նյութերով, քիչ են կազմակերպվում ժամանակավոր և շրջիկ ցուցահանդեսներ, բավարար աշխատանք չի տարվում այցելուների զանազան խմբերի հետ: Մտահոգության լուրջ առիթ է տալիս այն, որ թանգարանների այցելուների բացարձակ մեծամասնությունը զբոսաշրջիկներն են: Ինչու՞: Որովհետև մեկ անգամ արդեն թանգարանի ցուցադրությունը դիտած տեղացի այցելուն այդտեղ նոր բան տեսնելու ակնկալիք չունի և, բնականաբար, հրաժարվում է նորից հաճախել: Աշխատանքներն այս ձևով շարունակելու դեպքում թանգարանները կդադարեն տվյալ քաղաքի, շրջանի, ռեգիոնի գաղափարադաստիարակչական աշխատանքների կազմակերպման հենակետ լինելուց: Եվ դա այն դեպքում, երբ կուսակցությունն իր վիթխարի կանխագծումների իրականացման գործում զգալի տեղ է հատկացնում կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքներին: Ստեղծվում է այն տպավորությունը, որ մեզանում պատշաճ ուշադրություն չի դարձվում այդ կարևոր գաղափարախոսական բնագավառին:

Թանգարանների կոմպլեքսային օգտագործման հարցերը դեռևս քիչ են արժանանում տեղական կազմակերպությունների ուշադրությանը: Կուսակցական շատ կազմակերպություններ գաղափարադաստիարակչական աշխատանքների իրենց պլաններում չեն նախատեսում թանգարանների հետ համատեղ միջոցառումներ, չեն վերահսկում այդ ասպարեզում արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների գործունեությունը:

Կուսակցության Երևանի, Լենինականի քաղաքային, մայրաքաղաքի Սպանդարյանի, ինչպես նաև Իջևանի, Հրազդանի շրջանային կոմիտեները, քաղսովետների ու շրջսովետների գործկոմները բազմիցս անդրադարձել են թանգարանների գործունեությունը բարելավելու, դրանց հետ համագործակցությունն ամրապնդելու հարցերին, կազմել համապատասխան պլաններ, իսկ Ամասիայի, Թալինի, Կրասնոսելսկի, Արարատի, Մեղրու և մի շարք այլ շրջանների կուսակցական և սովետական մարմիններ պատշաճ ուշադրություն չեն դարձնում մշակութային կյանքի այդ ոլորտին:

Մեր հանրապետության ինքնատիպ, ավանդույթներով հարուստ շրջաններից է Թալինը: Բազմաթիվ ճարտարապետական հուշարձաններ կան այստեղ: Շրջանը շատ հարուստ է նաև ազգագրական նյութերով: Ելնելով այս ամենից՝ հանրապետության կառավարությունը տարիներ առաջ որոշեց կազմակերպել Հայաստանի ազգագրության պետական թանգարանի մասնաճյուղ: Հավաքվեցին անհրաժեշտ նյութեր, պատրաստ է ցուցադրության պլանը, գլխավորող թանգարանն անում է ամեն ինչ մասնաճյուղը բացելու համար: Բայց շրջանի համապատասխան կազմակերպությունները զարմանալի անտարբերություն են ցուցաբերում այս կարևոր ձեռնարկման նկատմամբ, և թանգարանի բացումը ձգձգվում է:

Հանրապետությունում քչերը գիտեն նշանավոր հեղափոխականներ Բորյան եղբայրների տուն-թանգարանի տեղը: Չգիտեն նաև շատ կրասնոսելսկցիներ, քանի որ շրջանի մշակութային այս օջախը և միակ թանգարանը վատ է օգտագործվում աշխատավորության և հատկապես երիտասարդության գաղափարադաստիարակչական աշխատանքների ծավալման, ազատ ժամանակը արդյունավետ կազմակերպելու գործում: Կուսակցության շրջկոմի ագիտացիայի և պրոպագանդայի, շրջսովետի գործկոմի կուլտուրայի բաժինները թանգարանը չեն դարձրել շրջանի կուլտուր-դաստիարակչական աշխատանքների իրականացման օջախ: Մինչդեռ Կրասնոսելսկում այդ աշխատանքները ավելի քան անհրաժեշտ են: Համանման վիճակ է տիրում նաև



«ՌՍԴԲԿ Հաղպատի կազմակերպության պատմության», Գորիսի երկրագիտական թանգարաններում:

Վերոհիշյալ թանգարաններից առաջին երկուսը ՀՍՍՀ հեղափոխության պետական թանգարանի մասնաճյուղերն են: Կուլտուրայի մինիստրության համակարգի խոշոր թանգարաններն ունեն ընդհանուր առմամբ 32 մասնաճյուղեր, որոնք տեղաբաշխված են հանրապետության տարբեր շրջաններում: Սակայն տեղերում կուսակցական և սովետական մարմինները հրաժարվում են միջամտել մասնաճյուղ-թանգարանների գործերին՝ դա համարելով գլխավորող թանգարանի պարտականությունը: Իսկ վերջիններս էլ իրենց մասնաճյուղերը ղեկավարող մեկ աշխատողով ի վիճակի չեն լինում անհրաժեշտ հսկողություն և օպերատիվ ղեկավարություն ապահովել տեղերում: Այնինչ այդ թանգարաններն իրենց գործունեությունը պետք է առաջին հերթին կոորդինացնեն տվյալ շրջանի, քաղաքի կուսակցական, սովետական մարմինների հետ, լինեն նրանց գաղափարախոսական աշխատանքի հենակետերը:

Քիչ չեն դեպքերը, երբ թանգարաններում պատասխանատու աշխատանքի են երաշխավորվում այլ բնագավառներում իրենց չարդարացրած, ձեռներեցությունից զուրկ, երբեմն էլ կենսաթոշակի անցած մարդկանց: Նրանցից շատերի համար տվյալ թանգարանը իրենց աշխատանքային կենսագրության մեջ կուլտուր-լուսավորական առաջին հիմնարկն է: Բնականաբար նրանք չեն կարող թանգարանային գործը վարել պրոֆեսիոնալ բարձր մակարդակով:

Հանրապետության կուլտուրայի մինիստրության համակարգում այսօր գործում են տարբեր տիպի ու բնույթի 66 թանգարաններ: Ավելի քան 20 թանգարան էլ ունեն ՀՍՍՀ գիտությունների ակադեմիան, հուշարձանների պահպանման և օգտագործման գլխավոր վարչությունը, շրջակա միջավայրի պահպանության կոմիտեն: Դեռևս 1963 թվականին, թանգարանների աշխատանքները կոորդինացնելու նպատակով, Հայաստանի պատմության և Ե. Չարենցի անվան գրականության ու արվեստի թանգարանները ևս տրվեցին կուլտուրայի մինիստրությանը: Այս կառուցվածքը իրեն հիմնականում արդարացնում էր: Իսկ ահա վերջին մի քանի տարում մեկուկես տասնյակից ավելի թանգարաններ է կազմակերպել հուշարձանների պահպանման և օգտագործման գլխավոր վարչությունը, երկու թանգարան ունի գիտությունների ակադեմիան և ընդամենը մեկ թանգարան՝ շրջակա միջավայրի պահպանության կոմիտեն: ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրությունն ունի թանգարանների, թանգարանագիտության գիտամեթոդական բաժիններ, հրատարակում է համապատասխան մեթոդական գրականություն և, այսքանով հանդերձ, դեռ չի հասել իր համակարգի թանգարաններում պահանջված մակարդակն ապահովելուն: Իրենց տնօրինության տակ թանգարան ունեցող մյուս գերատեսչությունները նման հնարավորություններից զուրկ են և, բնական է, այդտեղ վիճակն ավելի անմխիթար է: Նպատակահարմար է հանրապետությունում գործող բոլոր պետական թանգարանները միավորել մեկ մինիստրության կամ գերատեսչության մեջ՝ կենտրոնացնելով դրանց թե՛ ղեկավարումը, թե՛ մեթոդական օգնությունն ու նյութատեխնիկական մատակարարումը: Կարծում ենք, որ դա կնպաստի հանրապետությունում թանգարանային գործի հետագա ծավալմանը, այդ աշխատանքը կդարձնի ավելի արդյունավետ ու բովանդակալից:

Չի կարելի չխոսել և այն մասին, որ թանգարանային հարուստ ավանդույթներ, եզակի ցուցանմուշներ ունեցող մեր հանրապետությունում տակավին մշակված չէ այդ օջախների աշխատանքները գիտականորեն կազմակերպելու կուռ համակարգ: Մի՞թե տարօրինակ չէ, որ, ասենք, Պ. Պռոշյանի (Աշտարակ), Ա. Բակունցի (Գորիս) և գրական-հուշային 8 այլ թանգարաններ Ե. Չարենցի գրականության և արվեստի պետական թանգարանի մասնաճյուղեր են, իսկ ահա Պ. Սևակի (Սովետաշեն), Ստ. Զորյանի (Կիրովական) տուն-թանգարանները ղեկավարվում են համապատասխան շրջանային ու քաղաքային սովետների կուլտուրայի բաժինների կողմից: Նման օրինակները եզակի չեն, և դրանք վկայում են, որ բացակայում են սկզբունքային մոտեցումը, ղեկավարման կենտրոնացումն ու ավելորդ օղակներից ձերբազատվելու ցանկությունը:

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման ներկա շրջադարձային փուլը որակապես նոր խնդիրներ է առաջադրում ինչպես կուլտուր-լուսավորական բոլոր հաստատություններին, այնպես էլ թանգարանների համակարգին: Անելիքների այդ համալիրին իր յուրահատուկ պահանջներն է ներկայացնում նաև մեծ Հոկտեմբերի հոբելյանական տարին:

Լինել արդի պահանջների մակարդակին, աշխատել ավելի մեծ հատուցով՝ ահա թանգարանների աշխատողների պատվի գործը:

## Մեծ Հայրենականի տարեգրության էջերից

# ՌԱԶՄԱՃԱԿԱՏԻ ԵՎ ԹԻԿՈՒՆՔԻ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ՎԱՎԵՐԱԳՐԵՐ

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ պատերազմի տարիներին Անդրկովկասի կուսակցական կազմակերպությունները գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքներում առանձնահատուկ տեղ էին հատկացնում ռազմաճակատի և թիկունքի կապի ամրապնդմանը: Դրա արտահայտման մասսայական ձևերից մեկը բանակի և թիկունքի միջև ստեղծված նամակագրությունն էր: Դա մեծապես նպաստում էր թիկունքի աշխատավորությանն ու բանակի մարտիկներին սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու, ռազմաճակատում բանակայինների մարտական ոգին բարձրացնելու գործին: Կրկին հաստատվում էին Վ. Ի. Լենինի խոսքերն այն մասին, որ ամեն մի օգնություն, որ ցուցաբերում է թիկունքը՝ մարտիկներին, «... անմիջապես դառնում է կարմիր բանակի ուժեղացում... և հարձակողական ունակության մեծացում» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 41, էջ 398):

Անդրկովկասի ժողովուրդները ռազմաճակատներում մարտնչող իրենց զավակներին գրած հազարավոր հայրենասիրական նամակներում կոչ էին անում ջախջախել թշնամուն և տուն վերադառնալ միայն հաղթանակով: Ռազմիկների ու նրանց հարազատների բազմաթիվ նամակներ տպագրվեցին մամուլում: Այսպես, Զանգիբասարի շրջանի Հագվի գյուղից 70-ամյա Անուշ Հունանյանը, որի յոթ տղաները և վեց թոռները ռազմաճակատում էին, իր վիրավոր որդուն՝ Սուրենին, գրում էր. «... նորից համարձակ կռվի մեջ մտիր, որդի՛ս, գետնով մի՛ տուր Հունանյանների ընտանիքի պատիվը... Գնա՛, կռվի՛ր և ջախջախիր թշնամուն» («Պրավդա», 4 դեկտեմբերի 1943 թ.):

Բայց ահա ինչ են գրում գերմանացի ծնողները զինվոր Ֆրիդրիխ Ֆոգտին. «Սիրելի Ֆրիդրիխ, մի՛ մտիր կրակի մեջ, մտածիր հորդ և մորդ մասին, թաքնվիր մեծ փոսի մեջ և պառկիր այնտեղ, քանի դեռ ամեն ինչ չի վերջացել: Թող առջևից գնան ուրիշները... եթե նահանջեք, բոլոր ուժերով սլացիր հայրենիք: Եթե չափազանց ուշ լինի, ինչպես Ստալինգրադի մոտ, այդ դեպքում ձեռքերդ վեր բարձրացրու» (Скирдо М. П. Моральный фактор в Великой Отечественной войне. М., 1959, стр. 51):

Այս երկու նամակները շատ դիպուկ բնութագրում են սովետական և գերմանական թիկունքներում տիրող բարոյական վիճակը: Եթե մի դեպքում 70-ամյա հայրենասեր մայրը պատվիրում է վիրավոր որդուն արագ ապաքինվել և նորից կռվի մեջ մտնել՝ գիտակցելով, որ թշնամու նպատակն է խլել իրենց ազատությունն ու հայրենիքի անկախությունը, ապա մյուս դեպքում գերմանացի զինվորի ծնողները, զգալով, որ որդին գործիք է հիտլերյան զավթիչների արկածախնդրական քաղաքականությունն իրականացնելու համար, նրան համոզում են հեռու մնալ կրակի գծից, թաքնվել և դժվար պահին դիմել դավաճանության՝ հանձնվել:

1942 թվականի վերջերին և հատկապես 1943-ի սկզբներին, կարմիր բանակի ծավալած հարձակողական գործողությունների ժամանակաշրջանում, հայրենասիրական ու դաստիարակչական վիթխարի դեր խաղացին ազգային հանրապետությունների ժողովուրդների նամակ-պատվիրանները հայրենակից ճակատայիններին: Այդպիսի նամակ-պատվիրանների ուղարկման նախաձեռնությունը ծնվեց աշխատավորական կոլեկտիվների ժողովներում, կանանց, երիտասարդության, առանձին հանրապետությունների ժողովուրդների հակաֆաշիստական միտինգներում: Տեղական կուսակցական կազմակերպություններն անմիջապես պաշտպանեցին ու գլխավորեցին այդ հայրենասիրական շարժումը, որն ընդգրկեց ամբողջ երկիրը:

Իրենց ճակատային մարտիկներին համաժողովրդական այդպիսի նամակ-պատվիրանի ուղարկման առաջին նախաձեռնողները Ուզբեկստանի աշխատավորներն էին: Նրանց նամակը «Պրավդայի» էջերում հրապարակվեց 1942 թվականի նոյեմբերի 31-ին, երբ Ստալինգրադի մոտ դեռևս ընթանում էին պաշտպանողական մարտեր: Ուզբեկ ժողովուրդն իր ճակատային զինվորներին կոչ էր անում «Կարմիր բանակի շարքերում է՛լ ավելի անսասան կերպով ամրապնդել ՍՍՀՄ ժողովուրդների անկեղծ ու խոր բարեկամությունը» («Պրավդա», 31 նոյեմբերի, 1942 թ.):

ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը և նրանց զավակների մարտական եղբայրությունը, որոնց բախվելով՝ վոլգյան ամրություններին մոտ ջախջախվեցին ֆաշիստական զորքերը, նոր ուժով դրսևորվեցին պատերազմի արմատական բեկման տարում, սովետական զինված ուժերի հարձակողական վիթխարի գործողությունների ընթացքում: Երբ Ստալինգրադի մոտ մեր զորքերի հակահարձակման անցնելու լուրը տարածվեց ամբողջ երկրում, ազգային հանրապետություններում ծավալվեց հայրենասիրական հզոր շարժում. դիմել հայրենակից ռազմիկներին կոչով՝ է՛լ ավելի ամրապնդել ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը ճակատամարտերի դաշտերում, անխնա հարվածել թշնամուն:

1942 թվականի դեկտեմբերի 23-ին Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի բյուրոն, քննարկելով ճակատային զինվորներին նամակ-պատվիրան ուղարկելու մասին աշխատավորական կոլեկտիվների առաջարկը, որոշեց նախապատրաստել հայ ժողովրդի նամակի տեքստը, այն տպագրել հայերեն և ռուսերեն լեզուներով ու դնել համաժողովրդական քննարկման: Կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին առաջարկվում էր նամակի տեքստի քննարկումը կազմակերպել ռազմաճակատի հետ թիկունքի կապն է՛լ ավելի ամրապնդելու, թշնամուն հասցվող հարձակողական հարվածների հետագա ուժեղացման համար գործող բանակին ցույց տրվող օգնությունը մեծացնելու նշանաբանով*:

Նամակը լայնորեն քննարկվեց գործարանների ու ֆաբրիկաների կոլեկտիվներում, կոլտնտեսություններում, սովխոզներում և ՄՏԿ-ներում, գիտական և ուսումնական հաստատություններում, բոլոր հիմնարկներում: Նամակը ստորագրեցին հանրապետության բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորականության ավելի քան 335 հազար ներկայացուցիչներ (տե՛ս Советская Армения в годы Великой Отечественной войны. Ереван, 1975, стр. 752):):

1943 թվականի փետրվարի 27-ին նամակը հրապարակվեց «Պրավդայում», «Իզվեստիայում», «Սովետական Հայաստան», «Կոմունիստ» հանրապետական թերթերում, ինչպես նաև տպագրվեց առանձին թերթիկներով ու բրոշյուրով:

1943 թվականի մայիսին, երբ Հյուսիսային Կովկասում հարձակողական կատաղի մարտեր էին տեղի ունենում, իրենց հանրապետության աշխատավորներին դիմեցին վրացի մարտիկները:

Նամակ-պատվիրանները և մարտիկների պատասխան նամակները է՛լ ավելի էին ամրապնդում ժողովուրդների լենինյան բարեկամությունը՝ սովետական բազմազգ պետության գրանիտե հիմքը: Դրանցում գերիշխում էր այն գաղափարը, որ որքան ամուր լինեն մեր ժողովուրդների միասնությունը, մարտական եղբայրությունը, այնքան շուտ կհասնի հաղթանակը:

Հայ մարտիկներին ուղղված նամակում ասվում էր, որ բազում դարերի ընթացքում մեր ժողովուրդն իր սուրը չի դրել պատյան: Նա շատ տառապանքներ է հաղթահարել, մինչև հասել է երջանկության, որը նրան բերեց սովետական իշխանությունը: Այդ իշխանությունը մեզ տվել է ազատություն, խաղաղություն, պետականություն, որից մենք զրկված էինք հարյուրավոր տարիներ: Միայն սովետական իշխանության տարիներին վերածնվեց ու ծաղկեց մեր երկիրը: Հայ ժողովուրդն իր մարտիկներին կոչ էր անում՝ տուն չդառնալ, քանի դեռ չի ոչնչացվել վերջին օկուպանտը: Այդ ենք պահանջում ձեզնից այսօր մենք՝ ձեր հայրերն ու մայրերը, ձեր կանայք ու քույրերը...: Մեր ավագ եղբայր ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ մարտնչեցեք թշնամու դեմ՝ եղբայրական ժողովուրդների զավակների հետ կողք-կողքի, ձեռք-ձեռքի տված: Ամրապնդեցեք ռազմաճակատներում անխախտ բարեկամությունն ու եղբայրությունը: Հիշեցեք, որ ժողովուրդների այդ եղբայրության... բարեկամության մեջ է մեր հզոր հայրենիքի՝ Սովետական Միության, անպարտելիությունը» («Սովետական Հայաստան», 2 մարտի, 1943 թ.):

Իր ճակատային զինվորներին ռուս մեծ ժողովրդի, ՍՍՀՄ մյուս ժողովուրդների մարտիկների հետ բարեկամության ամրապնդման կոչ էր անում ադրբեջանական ժողովուրդը: Բարեկամը ճանաչվում է ծանր օրերին: Մենք՝ ադրբեջանցիներս, միշտ ռուսների, ուկրաինացիների, բելո-

* *ՄԼԻ Հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, ց. 31, գ. 298, թ. 106:*

ռուսների, վրացիների, ղազախների, հայերի, Սովետական Միության եղբայրական բոլոր ժողովուրդների բարեկամներն ենք եղել ոչ միայն երջանիկ օրերին, այլև փորձությունների օրերին: Հենց այդ բարեկամության շնորհիվ փակվեց հիտլերյան հրոսակախմբերի ճանապարհը դեպի Սովետական Ադրբեջան:

«Երբ ֆաշիստական հրոսակախմբերը, հասնելով Կովկասի նախալեռներին, իրենց ճիրանները մեկնեցին Ադրբեջանին ու Անդրկովկասի եղբայրական հանրապետություններին,— ասվում էր ադրբեջանական ժողովրդի նամակում,— նրանց ճանապարհը փակեց ժողովուրդների պողպատե պարիսպը:

Մենք պարտական ենք ռուսների և ուկրաինացիների, բելոռուսների և ադրբեջանցիների, վրացիների և հայերի, ղազախների ու թաթարների սրբազան արյանը, որոնք գերմանական ստրկացնողներից պաշտպանեցին մեր հայրենի Ադրբեջանը, մեր մայրաքաղաք Բաքուն: Դրա համար մենք պարտական ենք պատմության մեջ չտեսնված ժողովուրդների եղբայրությանը, որին սնել է Լենինի մեր մեծ կուսակցությունը...

Թող հավերժ ապրի ժողովուրդների սրբազան բարեկամությունն ու եղբայրությունը: Այնքան ժամանակ, քանի դեռ ապրում է այդ բարեկամությունը, ոչ մի ուժ չի կոտրի հաղթանակի մեր կամքը» («Պրավդա», 21 ապրիլի, 1943 թ.):

Ժողովուրդների և նրանց մարտիկների բարեկամությունն ու եղբայրությունը ըստ ամենայնի ամրապնդելու գաղափարով են համակված նաև ճակատային զինվորների նամակները: Վրաց ժողովրդի զավակները,— գրում էին ճակատային զինվորները,— Սովետական Միության եղբայրական ժողովուրդների բոլոր զավակների հետ միասին պաշտպանում են մեր մեծ հայրենիքը՝ Բարենցի ծովից մինչև Սև ծովն ընկած ռազմաճակատի ամբողջ տարածության վրա, իրենց պարտքը կատարում հայրենիքի հանդեպ: Մեր նամակը գրվում է Հյուսիսային Կովկասում, բայց արտահայտում է այն բոլոր վրացի ռազմիկների զգացումներն ու խոհերը, որոնք մարտնչում են Հայրենական մեծ պատերազմի ընդարձակ ռազմաճակատում... Ընդհանուր թշնամու դեմ մղվող սրբազան պայքարում է՛լ ավելի ամրապնդվեցին ժողովուրդների բարեկամությունն ու անխախտ եղբայրությունը: Այսուհետև այդ բարեկամությունն ամրապնդված է մեր անձնուրաց մարտիկների արյամբ և կոփված է պատերազմի հնոցում: Մեր ժողովուրդների բարեկամությունը պողպատի պես կոփվում է մարտերի կրակի մեջ, և աշխարհում ոչ մի ուժ ի վիճակի չէ ոչնչացնելու այն: Այդ բարեկամությունը խորտակելու թշնամու բոլոր փորձերը կփշրվեն՝ զարնվելով սովետական երկրի անխորտակելի հզորությանը:

Ռազմաճակատի և թիկունքի միջև հաստատված նամակագրության մեջ առանձնապես ընդգծվում էր, որ ժողովուրդները և նրանց ռազմիկների բարեկամությունը պետք է ամրապնդել ամենից առաջ մարտական գործերով, դյուցազնական սխրագործություններով, փոխադարձ օգնությամբ, սոցիալիստական հայրենիքի թշնամիներին անողոք կերպով ոչնչացնելով:

Ժողովուրդների նամակները համակված էին հայրենասիրության խոր զգացումով, յուրաքանչյուր մարտիկի համար սովետական ամբողջ հողի ընդհանրության գիտակցությամբ՝ ինչ ազգության էլ նա պատկանելիս լիներ: «Հիշեցե՛ք, մեր զավակներ,— ասվում էր հայ ժողովրդի նամակում,— ռազմաճակատի որ հատվածում էլ կռվելիս լինեք գերմանական ֆաշիստների դեմ, դուք կռվում եք հարազատ Հայաստանի գոյության, փրկության, ազատության համար»: Այդ միտքը հնչում է նաև ադրբեջանական ժողովրդի նամակում, ուր ընդգծված էր, որ ադրբեջանցի մարտիկները, որտեղ էլ որ կռվելիս լինեն, պաշտպանում են հարազատ Ադրբեջանը, նրա պատմական նվաճումները, լենինյան ազգային քաղաքականության արևավառ դրոշի ներքո վերածնված նրա ժողովրդին:

Անդրկովկասի ժողովուրդները չէին կասկածում, որ նամակ-պատվիրանները մեծ արձագանք կգտնեն իրենց քաջարի մարտիկների շրջանում: «Պրավդա» թերթը, հատուկ առաջնորդող նվիրելով նամակ-պատվիրաններին, այդ օրերին գրում էր. «Հայ ժողովրդի նամակը կհասնի նրա զավակներին: Այդ նամակը կկարդան խրամատներում, կկարդան մարտից առաջ: Նա հայ մարտիկներին կոգեշնչի նորանոր սխրագործությունների: Միայն հայ մարտիկները չէ, որ կկարդան նամակը: Այն կհասնի սովետական հայրենիքի բոլոր պաշտպաններին»:

Հիրավի, Անդրկովկասի ժողովուրդների քաջարի մարտիկներին անձնուրաց սխրագործությունների նոր լիցք հաղորդեցին նամակները: Այդ են վկայում նաև կարմիր բանակի քաղմարմինների զեկույցները: Այսպես, Անդրկովկասի ռազմաճակատի քաղվարչության պետ գեներալ-մայոր Կ. Լ. Սորոկինը, կարմիր բանակի գլխավոր քաղաքական վարչությանը զեկուցելով



նամակ-պատվիրանների ուղղությամբ տարվող աշխատանքի մասին, գրում էր. «Ռազմաճակատի զորամասերում մեծ վերելքով անցան միտինգները հայ մարտիկներին՝ հայ ժողովրդի, ադրբեջանցի մարտիկներին՝ ադրբեջանական ժողովրդի և վրաց ժողովրդին՝ վրացի մարտիկների գրած նամակների առթիվ: Այդ նամակների կապակցությամբ իրագործվեց ագիտացիոն մեծ աշխատանք: Նամակների բովանդակությունը հաղորդվել է բոլոր մարտիկներին ու հրամանատարներին: Այդ կապակցությամբ մի շարք ազգային զորամասերից պատասխան նամակներ են ուղարկվել հայրենիքի կոլտնտեսականներին ու ձեռնարկություններին» (В. А. Мурадян. Компартия Армении в годы Великой Отечественной войны. Ереван, 1984, стр. 212):

Հանրապետությունների և ռազմաճակատի կուսկազմակերպությունները գաղափարախոսական-քաղաքական աշխատանքում լուրջ նշանակություն էին տալիս նամակ-պատվիրանները զորամասերում պրոպագանդելուն: Երևանից, Բաքվից ու Թբիլիսիից ռազմաճակատ գործուղվեցին կուսակցական աշխատողների և գրողների բրիգադներ: Նրանք ռազմաճակատների ու բանակների քաղմարմիններին, ազգային դիվիզիաների հրամանատարություններին օգնեցին հայրենասիրական փաստաթղթերի բովանդակությունը հասցնելու յուրաքանչյուր մարտիկի:

Ադրբեջանական և հայ ժողովուրդների նամակ-պատվիրանները հայրենակից ճակատայիններին և վրացի մարտիկների նամակն իրենց ժողովրդին տպագրվեցին զինվորական թերթերում՝ ռուսերեն, ադրբեջաներեն, վրացերեն և հայերեն լեզուներով: Նրանք կանոնավորապես հրապարակում էին նաև տարբեր ազգությունների ռազմիկների արձագանքներն այդ նամակներին, ամբողջ էջեր նվիրում ժողովուրդների լենինյան բարեկամությանը և սովետական զինվորների մարտական եղբայրությանը: Այսպես, Հյուսիս-կովկասյան ռազմաճակատի՝ հայերեն լեզվով լույս տեսնող «Առա՛ջ, հանուն հայրենիքի» թերթն իր համարներից մեկում՝ «Արյունակից բարեկամություն» վերնագրով ակնարկում, գրում էր երկու մարտիկների՝ Առուշանյանի և Վասիլևի սրտառուչ բարեկամության մասին:

Ճակատային զավակներին հայ և ադրբեջանական ժողովուրդների և իրենց ժողովրդին վրացի մարտիկների նամակները նոր խթան հանդիսացան անդրկովկասյան եղբայրական հանրապետությունների կուսկազմակերպությունների համար՝ ռազմաճակատի ու թիկունքի կապը ամրապնդելու, թիկունքի աշխատավորության և, հատկապես, կարմիր բանակի մարտիկների շրջանում տարվող գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքն ուժեղացնելու գործում: Այն ավելի արդյունավետ, քաղաքական-կազմակերպական բարձր մակարդակով սկսվեց անցկացվել ոչ ռուս ազգության մարտիկների շրջանում աշխատող ագիտատորների սեմինար-խորհրդակցությունից հետո, որը 1943 թվականի օգոստոսի սկզբին Մոսկվայում հրավիրել էր կարմիր բանակի գլխավոր քաղվարչությունը: Խորհրդակցությունից հետո գլխավոր քաղվարչությունը միութենական հանրապետությունների կուսկազմակերպություններին ցուցում տվեց ծրագրել և իրականացնել կոմպլեքսային ծավալուն միջոցառումներ՝ ռազմաճակատի հետ կապն ամրապնդելու, ճակատային հայրենակիցների շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքն ուժեղացնելու նպատակով:

Շուտով Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի Կ(բ)Կ Կենտկոմները մշակեցին և ծրագրեցին գործնական միջոցառումներ այդ ցուցումն իրականացնելու համար: Օգոստոսի 14-ին Ադրբեջանի Կ(բ)Կ Կենտկոմը հատուկ որոշում ընդունեց «Ադրբեջանցի մարտիկների շրջանում քաղդաստիարակչական աշխատանքի հետագա ուժեղացման և նրանց հետ Ադրբեջանի աշխատավորների կապի ամրապնդման միջոցառումների մասին»: Այդ որոշմամբ Կենտկոմը կոնկրետ միջոցառումներ հաստատեց, որոնք ուղղված էին ռազմաճակատի հետ հանրապետության կապի հետագա ամրապնդմանն ու ադրբեջանցի մարտիկների շրջանում տարվող քաղդաստիարակչական աշխատանքի ուժեղացմանը: Մասնավորապես ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ադրբեջանական մասնաճյուղին և Ադրբեջանի Կ(բ)Կ Կենտկոմի կուսպատմության ինստիտուտին հանձնարարվեց՝ կազմակերպել մասսայական բրոշյուրների ու ժողովածուների լույս ընծայումը սովետական ժողովուրդների բարեկամության, գերմանաֆաշիստական զավթիչների դեմ մղվող պայքարին ադրբեջանական ժողովրդի մասնակցության, թիկունքում հանրապետության աշխատավորների կատարած հերոսական սխրագործությունների մասին և այլ թեմաներով: Այդ որոշմամբ ադրբեջանցի մարտիկների շրջանում գաղափարախոսական-քաղաքական, դաստիարակչական աշխատանքն ուժեղացնելու համար միջոցառումներ մշակելու և իրականացնելու հանձնարարություններ ստացան հանրապետության

գրողների միությունը, ռադիոկոմիտեն, Բաքկինոստուդիան, լուսժողկոմատը, ԼԿԵՄ Կենտկոմը և այլն:

Ադրբեջանի Կ(բ)Կ Կենտկոմը հանրապետության «Ազերնեշր» հրատարակչությանը պարտավորեցրեց ադրբեջանական զորամասերի համար տպագրել ռազմահայրենասիրական թեմաներով պլակատներ ու լոզունգներ՝ Հայրենական մեծ պատերազմի հերոսների դիմանկարներով:

Կարմիր բանակի գլխավոր քաղվարչության հանձնարարությամբ համանման որոշումներ ընդունեցին և միջոցառումներ ձեռնարկեցին նաև Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը և Վրաստանի Կ(բ)Կ Կենտկոմը:

1943 թվականի սեպտեմբերի 9-ին Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի բյուրոյի նիստում ընդունվեց «Կարմիր բանակի հայ մարտիկների հետ կապն ամրապնդելու միջոցառումների մասին» որոշումը: Ծատ չանցած Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմը ՀամԿ(բ)Կ Կենտկոմին հասցեագրված զեկուցագրով տեղեկացնում էր հանրապետության կոմկուսի գաղափարախոսական ճակատի կազմակերպությունների կատարած աշխատանքը հայ մարտիկների և Սովետական Հայաստանի միջև կապն ամրապնդելու ասպարեզում: Մասնավորապես նշվում է, որ հայկական հեռագրական գործակալությունը ռազմաճակատային, բանակային և դիվիզիոն թերթերի համար լույս է ընծայում հատուկ բյուլետեններ, որոնցում հանրապետության տնտեսական, կուլտուրական կյանքի, թիկունքի աշխատավորության գործունեության վերաբերյալ տրվում են հարուստ նյութեր և որոնք օգտագործվում են հայերեն լեզվով լույս տեսնող զինվորական թերթերում: Զեկուցագրում տեղեկացվում է նաև այն մասին, որ ագիտատորներին օգնելու համար տեղական հրատարակչությունները սիստեմատիկորեն լույս են ընծայում մասսայական գրականություն՝ «Հայ ժողովրդի հերոսական ավանդույթները իր հայրենիքի համար մղված պայքարում» և այլ թեմաներով: ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հայկական մասնաճյուղը սկսեց լույս ընծայել «Հայաստանի զավակների մարտական սխրագործությունները» բրոշյուրների շարք: ՀամԿ(բ)Կ Կենտկոմի ցուցումի համաձայն, այդ և մասսայական-քաղաքական այլ հրատարակությունների տպաքանակի 10 տոկոսը ուղարկվում է կարմիր բանակի գլխքաղվարչության հասցեով: Զեկուցագրում նըշվում է, որ հանրապետության կոմերիտական կազմակերպությունները սկսել են գեղարվեստական գրականության և ազգային երաժշտական գործիքների հավաքումը կարմիր բանակի զորամասերի համար:

Այսպիսով, ճակատային մարտիկներին հայ և ադրբեջանական ժողովուրդների և իրենց ժողովրդին վրացի մարտիկների նամակները մամուլում հրապարակելուց հետո, Անդրկովկասի հանրապետությունների կոմկուսակցությունները գաղափարախոսական, քաղդաստիարակչական բազմակողմանի աշխատանք ծավալեցին՝ ուղղված գործող բանակի անձնակազմի ինտերնացիոնալ համախմբվածության ըստ ամենայնի ուժեղացմանը, նրա մարտունակության, հարձակողական ավյունի հետագա բարձրացմանը, ռազմաճակատի պատվերների կատարմանը, թիկունքի աշխատավորության մոբիլիզացմանը, սովետական ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը: Այդ փաստաթղթերը և դրանց ուղղությամբ կատարված աշխատանքը Անդրկովկասի ժողովուրդների կենարար հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի վառ վկայություններն էին, հատկություններ, որ դարձան բազմազգ սովետական ժողովրդի զավակների մասսայական հերոսության անսպառ աղբյուր:

**Ա. ՄԱԿԱՐՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու**



# ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՈՒՍՄՈՒՆՔՆԵՐԻ ՄՈՏԻՎԱՑԻԱՆ

**Ս. ՄԱՆՈՒԿՅԱՆ**

**ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԵՎ ՊԱՏՄԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ** արդի դարաշրջանում, երբ երկու հասարակարգերի միջև գաղափարական պայքարն ավելի ու ավելի է սրվում, ստանում նորանոր ձևեր ու միտումներ, առանձնակի նշանակություն է ձեռք բերում այդ պայքարում անցյալի փիլիսոփայական ժառանգության և ժամանակակից փիլիսոփայության նկատմամբ վերաբերմունքի որոշման, այդ արժեքների գնահատման ու վերագնահատման հարցը: Մեծանում է նաև այդ արժեքների առաջավոր միտումների ու մնայուն նվաճումների պահպանման, նրանց ըստ ամենայնի օգտագործման դերն ու նշանակությունը: Չէ՞ որ, ինչպես պատմությունն է ցույց տալիս, այն գաղափարախոսությունը միայն կարող է դիմանալ ժամանակի փորձությանը, ներկայի և ապագայի նկատմամբ հանդես գալ իր որոշակի դիրքորոշմամբ, որն իրենից ներկայացնում է «բաց համակարգ», իր կապերը չի խզում անցյալի հոգևոր ժառանգության, այլ մշակութային կազմավորումների, նրանց լավագույն ավանդույթների ու անանցողիկ արժեքների հետ և, այդ իմաստով, ելնում է առողջ ու կենսական արմատներից: Ահա թե ինչու փիլիսոփայության պատմամեթոդաբանական պրոբլեմատիկան միշտ էլ գտնվել է մարքսիստական փիլիսոփայության ուշադրության կենտրոնում: Ինչ խոսք, ժամանակի օրավուր փոփոխվող պահանջներին համեմատ, այդ պրոբլեմատիկան փոխվում է՝ առաջ են գալիս նոր հարցադրումներ կամ հները նոր հնչերանգ են ստանում: Այսօր մարքսիստական փիլիսոփայության զարգացումը հանգեցնում է այն բանին, որ նրանում ատիճանաբար ձևավորվում է հետազոտության մի նոր, առանձին բնագավառ՝ **հերմենևտիկան**[1]: Իսկ մեր հարցադրումը փիլիսոփայական հերմենևտիկայի ելակետային հարցադրումներից է:

Մարքսիստական փիլիսոփայության մեջ այդպիսի նոր բնագավառի երևան գալը սոցիալական առանձին հնչողություն է ձեռք բերում ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների լույսի ներքո. մարքսիստական հերմենևտիկական գրականության մեջ արծարծված գաղափարները խիստ համահնչուն են ՍՄԿԿ XXVII համագումարում արծարծված այնպիսի ելակետային դրույթների հետ, ինչպիսիք են, օրինակ. ա) կյանքի բոլոր բնագավառներում, լինի դա տեսական, պատմական թե աշխատանքային բնագավառ, մարդկային գործոնը, կոնկրետ անհատին, մարդուն, նրա կոնկրետ շահերը, ուրախություններն ու ապրումները, կյանքի մասին նրա առանձնահատուկ պատկերացումները ելակետ համարելը, բ) գիտական հետազոտություններում ժամանակի, կյանքի զարկերակին զգայուն կերպով ունկնդիր լինելը, գ) իրերն իրենց անուններով կոչելը, ամեն ինչի մասին շիտակ դատելը, դ) տեսությունն ամենուրեք և կյանքի բոլոր դեպքերի համար պիտանի, քարացած սխեմաների ու դեղատոմսերի հավաքածու դարձնելուց զերծ մնալը, ե) մտքի քարացածությունից, դոգմատիզմից և պահպանողականությունից խուսափելը, զ) զուտ գաղափարայնությունից, երկրային հիմքից խուսքի խզումից զերծ մնալը և այլն:

---

[1] *Այդպես են անվանում այն բնագավառը, որն զբաղվում է մեկնման հարցերով: Անվանումը ծագել է ըստ հին հունական դիցաբանության Հերմես աստծո՝ Օլիմպիոսի աստվածների բանբերի, անվան:*

Փիլիսոփայական ուսմունքների մոտիվացիայի հարցադրումը կարևոր սոցիալ-քաղաքական հնչողություն է ձեռք բերում նաև կապված ժամանակակից պայմաններում փիլիսոփայության ոլորտում գաղափարական պայքարի առանձնահատկությունների հետ: Չէ որ դինամիկ, օրավուր նորանոր կերպարանքներ ընդունող, հերմենևտիկական մտածողության ամենաբազմազան միջոցներից օգտվող ժամանակակից բուրժուական փիլիսոփայության հետ պայքարը պահանջում է համապատասխան, ոչ «ուղղագիծ» դիրքորոշում, բուրժուական փիլիսոփայության համայնապատկերում տեղի ունեցող այդ երևույթների խորագնին ըմբռնողականություն, դրանք «կենսական իրադրություններում» իմաստավորելու կարողություն, մի հանգամանք, միայն որը հնարավորություն կտա հիմնավորելու դրանց մարքսիստական համարժեքները: Ժամանակակից բուրժուական փիլիսոփայության մեջ դիտվող զանազան հոսանքների ու ուղղությունները ըմբռնելու համար բավական չէ դրանք վերցնել, այսպես ասած, «ուղղահայաց», ժամանակային կտրվածքով. անհրաժեշտ է նաև դրանց մոտենալ գենետիկորեն, ընդ որում հետազոտել ոչ միայն փիլիսոփայական գիտելիքի և այդ գիտելիքի, որպես այդպիսինի, պատմության գիտակցորեն իրականացված վերակառուցումները, այլև դրանց հիմքում ընկած ինչ-ինչ ներքին ենթագիտակցական, թաքուն շերտերը, որոնք **«միայն դրսևորվել»** են բուրժուական փիլիսոփայության պատմության մեջ (տե՛ս М. К. Мамардашвили, Э. Ю. Соловьев, В. С. Швырев. Классика и современность: две эпохи в развитии буржуазной философии. В сборнике: «Философия в современном мире. Философия и наука. М., 1972, с. 28):

Փիլիսոփայության հայտնի պատմաբան Վ. Վինդելբանդը, խոսելով իրենց նորկանտականների և Ի. Կանտի փոխհարաբերության մասին, գրում է. «Մենք բոլորս՝ XIX դարի իմաստասիրողներս, Կանտի աշակերտներն ենք: Բայց նրան՝ ներկայիս մեր «վերադարձը» չի կարող լինել պատմական պայմաններով որոշված այն ձևի պարզ վերականգնումը, որում նա շարադրեց քննադատական փիլիսոփայության գաղափարը: Որքան խոր ես թափանցում նրա մտածողության տարբեր մոտիվներին հակամարտության մեջ, այնքան շատ միջոցներ ես նրանում գտնում այն պրոբլեմների մշակման համար, որոնք Կանտը ստեղծեց իր պատասխաններով: **Հասկանալ** Կանտին, նշանակում է **դուրս գալ** նրա սահմաններից» (ընդգծումը մերն է— Ս. Մ.: В. Виндельбанд. Прелюдии. Санкт-Петербург, 1904, с. VI): Մենք ամբողջովին չհամաձայնելով Կանտի ուսմունքի շրջանակներից նորկանտականների «դուրս գալու» եղանակների հետ, ցանկանում ենք, այնուամենայնիվ, նշել Վ. Վինդելբանդի արտահայտած մտքի կարևոր մեթոդաբանական նշանակությունն ընդհանրապես ամեն մի փիլիսոփայական ուսմունքի ըմբռնման համար. փիլիսոփայական ուսմունքի լինելությունն ըմբռնելու համար պետք է «դուրս գալ» նրա շրջանակներից, այն նայել «դրսից», թափանցել նրա այն ոչ ակնհայտ շերտերի, դրդապատճառների մեջ, որոնք թեև անմիջականորեն պայմանավորել են նրա երևան գալը, բայց նրանում ակնհայտորեն արտահայտված չեն: Փիլիսոփայական ուսմունքը այդպես «արտաքուստ» ըմբռնելով միայն կարելի է տալ նրա իրական ամբողջական պատմությունը. չէ՞ որ փիլիսոփայության պատմաբանի խնդիրը ոչ թե պարզապես փիլիսոփայական ուսմունքի պարզ վավերագիրը տալն է, այլ նաև այն «արտաքին» մոտիվացիոն իրադրության, «իմաստային կոնտեքստի» վերհանումը, որում միայն այն իմաստ և նշանակություն ունի:

Ռոմանտիկական փիլիսոփայությունից սկսած, փիլիսոփայական ուսմունքների մոտիվացիայի հարցադրումը, այս կամ այն ձևակերպումով և իմաստավորումով, ուղղակիորեն թե անուղղակիորեն մտել է շրջանառության մեջ: Դրանում համոզվելու համար փիլիսոփայության պատմությունից և պատմագրությունից բերենք փիլիսոփայական ուսմունքների մոտիվացիայի մի քանի գնահատումներ:

Ֆ. Շլեգելի կարծիքով «փիլիսոփայի համար, որի սուրբ գործը ներքին ամբողջական զարգացումն է, ոչինչ առավել նպատակամետ և բուժիչ չի կարող լինել, քան սեփական ոգու ստեղծանական ձևավորման և զարգացման ընթացքի դիտումը, մտքերի իր սեփական համակարգի վրա օտար կարծիքների ազդեցության հիմնավոր ուսումնասիրությունը, իր իդեաների և ըմբռնումների սկզբնաղբյուրների, դրանց հետագա ուղղությունը և ծավալումը որոշող մոտիվների, նրա մտքի հետագա տենդենցի վրա կրթության և դաստիարակության նախասկզբնական ազդեցության պարզ և հստակ ճանաչումը» (Ф. Шлегель, Эстетика. Философия. Критика. В двух томах, т. 2, изд-во «Искусство», М., 1983, с. 148): Այդ ճանա-



պարհով է միայն, ըստ նրա, փիլիսոփան «**իր միտքը** տարբերում ուրիշի մտքից, հավաստիանում իր սեփական մտքերի ճշմարտության մեջ...» (նույն տեղը):

Ըստ Վ. Վինդելբանդի, փիլիսոփայության պատմությունը մտածողության խիստ բազմազան առանձին ակտերի արդյունք է, որոնց մոտիվները տարբեր են լինում, մոտիվներ, որոնք պայմանավորում են փիլիսոփայության պատմության ինչպես հարցադրումները, այնպես էլ դրանց լուծման փորձերի բնույթը (տե՛ս В. Виндельбанд. История философии. С-Пб., 1898, с. 9): Այդ մոտիվներն են՝ պրագմատիկականը, մշակութապատմականը և անձնավորայինը (տե՛ս նույն տեղը, էջ 10—13):

Փիլիսոփայության մեկ այլ հայտնի պատմաբանի՝ Կ. Ֆիշերի տեսանկյունից փիլիսոփայությունը մշակույթի, կրթության ներքին ձևի դրսևորումն է, նրա գիտակցումն ու ճանաչումը. «Փիլիսոփայությունը, գրում է նա, խնդիր ունի ըմբռնել կրթության այդ ձևը, հասկանալ այն նրա ներքին մոտիվի առումով և բացատրել, թե ինչ է այն իրենից ներկայացնում և ինչի է ձգտում: Այդ ներքին մոտիվը պետք է դրսևորվի, ոգին պետք է այն գիտակցի իր մեջ, եթե միայն նա ցանկանում է գիտակցել իրեն: Չէ՞ որ նա ինքը հենց այդ ներքին մոտիվն է: Իսկ այդ խնդրի լուծման համար չկա այլ միջոց, քան փիլիսոփայությունն է» (К. Фишер. История новой философии, т. 1, С-Пб., 1906, с. 11): Ընդ որում, շարունակում է Կ. Ֆիշերը, քանի որ «աշխարհի կենսոլորտում հոգևոր ուղղությունները բազմաթիվ, բազմաբնույթ ու հակադիր են և միմյանց նկատմամբ պայքարի մեջ» և որ «մարդու հոգևոր կյանքում նույնքան բազմաբնույթ են նաև նրա շարժիչ մոտիվները», ուստի և «նմանապես բազմազան պետք է լինեն նաև միևնույն դարաշրջանում փիլիսոփայական ուղղությունները» (նույն տեղը, էջ 11—12):

Վ. Վունդտը կարևոր է համարում նշել այն մոտիվները, որոնցից **ծագում** են մետաֆիզիկական հարցերը (տե՛ս В. Вундт, Метафизика. В кн.: «Философия в систематическом изложении». М., 1909, с. 136): Նա փիլիսոփայության մեջ առանձնացնում է տեսական (տրամաբանական) և պրակտիկ (էթիկական) մոտիվները, որոնց գործողության արդյունքն էլ բուն փիլիսոփայությունն է (տե՛ս В. Вундт, Введение в философию. С-Пб., 1903, с. 8): Ինքնին հասկանալի է, գրում է Վ. Վունդտը, «որ ինչ-որ ժամանակ այդ մոտիվներից առաջին պլանի վրա հանդես կգա մեկը, իսկ մեկ այլ ժամանակ՝ մյուսը, կամ նրանք կարող են հանդես գալ միաժամանակ՝ պայքարելով մեկը մյուսի դեմ: Այդպիսի պայմաններում էլ հենց կարող են ծագել փիլիսոփայության էության, բովանդակության վերաբերյալ խիստ տարբեր հայացքներ» (նույն տեղը):

Բայց, այնուամենայնիվ, պետք է ասել, որ փիլիսոփայական ուսմունքների մոտիվացիայի՝ այդ և նման կարգի այլ բնութագրումները հիմնականում ինտուիտիվ բնույթի են:

Ընդհանրապես մարդկանց պատմական գործունեության, և, մասնավորապես, փիլիսոփայական ուսմունքների մոտիվացիայի հարցը առավել որոշակիորեն, տեսական մակարդակում առաջ է քաշվել, ինչ խոսք, ծայրահեղ միտումներով, կյանքի փիլիսոփայության մեջ: Այսպես, Դիլթեյը պատմական կամ «ոգու մասին» գիտության մեթոդի վերաբերյալ իր ուսմունքում հետևյալ պրոբլեմն է առաջադրում. պատմաբանը պետք է վերարտադրի ոչ միայն մարդկանց կյանքի նյութական պայմաններում տեղի ունեցած փոփոխությունները, այլ նաև նրանց պատմական գործունեության դրդիչ մոտիվները: Բայց, եթե առաջինը, ըստ նրա, կարելի է վերարտադրել բնագիտական ճշտությամբ, ապա երկրորդը ենթակա է ինչ-որ այլ մոտեցման: «Դիլթեյը,— գրում է Ա. Ս. Բոգոմոլովը,— դրանով իսկ ուշադրություն է դարձնում **իսկապես կարևոր մի հանգամանքի** վրա. պատմության ճանաչողության մեթոդ մշակելիս չպետք է մոռանալ, որ պատմական իրադարձություններին ակտիվորեն մասնակցում են մարդիկ, որոնք օժտված են գիտակցությամբ և անհատականությամբ, վարվում են մտածված կերպով կամ կրքերի պոռթկումների ազդեցությամբ, իրենց առջև դնում են սեփական անհատական նպատակները և ձգտում դրանց հասնել ոչ միայն իրենց համոզվածությանը, այլև խառնվածքին համապատասխան: Խնդրի այս սուբյեկտիվ կողմի պարզումը, հակառակ պատմական իդեալիզմի, չունի ինքնաբավ նշանակություն, բայց այնուամենայնիվ առանց այդ պարզելու անհնար է մինչև վերջը հասկանալ, թե ինչու այս կամ այն պատմական իրադարձությունը ստացել է հենց այս և ոչ թե մեկ այլ՝ իր բոլոր մանրամասներով, կոնկրետ ձևը... **Դա առավել ևս կարևոր է** հոգևոր մշակույթի պատմության համար, որի ուսումնասիրությունն իրոք ենթադրում

է, որ պատմաբանը պետք է փորձի «ներապրել» իր հետազոտության առարկայի մեջ՝ լինի դա տեսական կոնցեպցիա թե արվեստի ստեղծագործություն» (ընդգծ. մերն է— Ս. Մ.) (**Բուրժուական փիլիսոփայությունը իմպերիալիզմի նախօրյակին և սկզբին,** Եր., 1981, էջ 215):

Նշելով կյանքի փիլիսոփայության՝ հումանիտար գիտությունների պատմության նկատմամբ հիշատակված մեթոդի կիրառման «ինքնաբավ նշանակությունը»՝ հարկ ենք համարում այդուհանդերձ մատնանշել հասարակական գիտությունների, մասնավորապես փիլիսոփայության, պատմության համար այդ մեթոդի կարևոր մեթոդաբանական նշանակությունը:

Բնականաբար, մարդկանց պատմական գործունեության և փիլիսոփայական ուսմունքների մոտիվացիայի հարցադրումը չէր կարող վրիպել նաև մարքսիզմի դասականների ուշադրությունից: Ֆ. Էնգելսը պատմական մատերիալիզմի վերաբերյալ հայտնի նամակաշարքում քննադատում է այն «մարքսիստներին», որոնք հասարակության վերնաշենքում տեղի ունեցող երևույթները, մասնավորապես, փիլիսոփայության պատմության փաստերը բացատրում են զուտ դետերմինիստական և մեխանիստական (այսինքն՝ ոչ նաև հիշատակված մեթոդի— Ս. Մ.) ոգով: Նա իր դժգոհությունն է արտահայտում մարքսիզմի այն «հետևորդներից», որոնք հասարակության տնտեսական բազիսի և վերնաշենքի միջև տեսնում են միայն պատճառահետևանքային մեխանիկական կապ՝ անտեսելով դրանց միջև և այդ բոլոր երևույթների ստեղծողի՝ մարդու նկատմամբ ունեցած մի շարք միջանկյա կապերն ու հարաբերությունները: «Այն, ինչ պակասում է այդ բոլոր պարոններին,— գրում է Ֆ. Էնգելսը,— դիալեկտիկան է: Նրանք շարունակ այստեղ միայն պատճառ են տեսնում, այնտեղ՝ հետևանք: Նրանք չեն տեսնում, որ դա մի դատարկ աբստրակցիա է..., որ զարգացման ամբողջ մեծ ընթացքը տեղի է ունենում փոխազդեցության ձևով... որ այստեղ բացարձակ ոչինչ չկա, այլ ամեն ինչ հարաբերական է» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, **Ընտիր երկեր երեք հատորով,** հ. 3, 1978, էջ 655): «Բանն ամենևին էլ այնպես չէ,— գրում է մեկ այլ տեղ Ֆ. Էնգելսը,— թե միայն տնտեսական դրությունն է **պատճառ հանդիսանում,** որ **միայն** նա է **ակտիվը,** իսկ մնացած ամեն բան սոսկ պասսիվ հետևանք է» (Նույն տեղը, էջ 666): Ընդ որում, «Որքան ավելի է տնտեսականից հեռանում այն բնագավառը, որը մենք հետազոտում ենք, որքան ավելի է այն մոտենում զուտ աբստրակտ-գաղափարախոսական բնագավառին, այնքան ավելի շատ **պատահականություններ** կգտնենք մենք նրա զարգացման մեջ, այնքան ավելի **կեռմանավոր** կլինի նրա կորագիծը (ընդգծ. մերն է— Ս. Մ., նույն տեղը, էջ 668): Գաղափարախոսության մեջ,— դատում է Ֆ. Էնգելսը,— տնտեսական շարժումը որպես անհրաժեշտ բան «վերջիվերջո իր համար ճանապարհ է հարթում անթիվ ու անհամար պատահականությունների միջով... այն իրերի ու իրադարձությունների, որոնց ներքին կապն այն աստիճան հեռու է կամ այն աստիճան դժվար ապացուցելի...» (Նույն տեղը, էջ 645): Մասնավորապես «էլ ավելի բարձր կարգի գաղափարախոսությունները, այսինքն՝ որոնք նյութական տնտեսական հիմքից է՛լ ավելի են հեռանում, ընդունում են փիլիսոփայության և կրոնի ձև: Այստեղ պատկերացումների կապը գոյության իրենց նյութական պայմանների հետ է՛լ ավելի է խճճվում, է՛լ ավելի է մթագնում միջանկյա օղակներով» (Նույն տեղը, էջ 489): Այդպես ըմբռնված փիլիսոփայության պատմությունը, նրա այս կամ այն փաստը, կավելացնենք մենք, հնարավոր չէ ըմբռնել զուտ տեսականորեն, «բնագիտական ճշտությամբ». «այս դեպքում հարկ է դիմել **նաև** այն «վերապրելու» և այդ ապրումը «մեկնաբանելու» եղանակին, «հակառակ դեպքում, տեսությունը պատմական ամեն մի ժամանակաշրջանի նկատմամբ գործադրելը կլիներ ավելի հեշտ, քան թե առաջին աստիճանի ամենահասարակ մի հավասարություն լուծելը» (Նույն տեղը, էջ 645):

Մարքսիզմի հակառակորդները մարքսիզմը մեղադրում են մեխանիկական դետերմինիզմի մեջ, այն բանում, թե իբր մարքսիզմը **գաղափարախոսական** երևույթները բացատրում է զուտ տնտեսական պատճառներով՝ հաշվի չառնելով այդ երևույթների հիմքում ընկած մոտիվները (գաղափարական, մշակութային, ազգային, անհատական և այլն): Ֆ. Էնգելսը դրան հետևյալ բացատրությունն է տալիս. «Գլխավոր շեշտը մենք դնում էինք, և **պետք է դնեինք** սկզբում, քաղաքական, իրավական ու այլ գաղափարական պատկերացումները և դրանցով պայմանավորվող գործողությունները նրանց հիմքում ընկած տնտեսական գործոններից **բխեցնելու** վրա: Ընդ որում հանուն բովանդակության մենք այն ժամանակ անտեսում էինք ձևի հարցը, այն, թե ինչպիսի ուղիներով է ընթանում այդ պատկերացումների առաջացումը և այլն» (Նույն



տեղը, էջ 656—657): «Մենք ստիպված էինք լինում, առարկելով մեր հակառակորդներին, ընդգծել այն գլխավոր սկզբունքը, որը նրանք ժխտում էին, և միշտ չէ, որ ժամանակ, տեղ ու առիթ էր գտնվում պատշաճը հատուցելու փոխներգործությանը մասնակցող մյուս հանգամանքներին» (Նույն տեղը, էջ 647): Հետևաբար, շարունակում է Ֆ. Էնգելսը, «Գործի այս կողմին (այսինքն՝ թե ինչպիսի ուղիներով է ընթանում գաղափարական պատկերացումների առաջացումը— Ս. Մ.), որին ես այստեղ կարողացա անդրադառնալ միայն թեթևակիորեն, ինձ թվում է, որ մենք բոլորս ավելի քիչ ուշադրություն ենք նվիրել, քան այն արժանի է... Կրկնում եմ, ես ինքս եմ այդ բանն արել, և այդ սխալը միշտ իմ աչքին զարնել է արդեն post festum: Հետևապես, ես ոչ միայն հեռու եմ դրա համար Ձեզ (խոսքը Ֆ. Մերինգի մասին է— Ս. Մ.) ինչ-որ ձևով հանդիմանելու մտքից,— որպես մի մարդ, որը նույն բանի մեջ մեղավոր է դեռ Ձեզանից առաջ, ես նույնիսկ իրավունք էլ չունեմ այդ անելու,— այլ, ընդհակառակն, ես միայն կուզեի Ձեր ուշադրությունը հրավիրել այդ կետի վրա ապագայի համար» (Նույն տեղը, էջ 658):

Մարքսիզմի երևան գալը նշանավորեց արմատական հեղաշրջում փիլիսոփայության պատմության մեջ, և այդ պարագայում այն սկզբնական շրջանում չէր կարող փիլիսոփայության բոլոր պրոբլեմների վրա հատուկ ուշադրություն դարձնել և զերծ մնալ որոշ **բացարձակ** միտումներից:

Այսօր, երբ մարքսիզմը և՛ տեսականորեն, և՛ գործնականորեն ինքնահաստատվել է ու հետևորդների մեծ բանակ ունի, «ձևի հարցը» արդեն մղվել է առաջին պլան, և գաղափարական, մասնավորապես փիլիսոփայական, պատկերացումների «առաջացման ուղիների», նրանց մոտիվացիայի հարցը մարքսիստական փիլիսոփայության համար դարձել է «բովանդակային» հարց: Մեր օրերում, երբ ըստ ամենայնի արդեն մշակվել են մարքսիստական ընդհանուր աշխարհայացքային դիրքորոշումները, կոնկրետ խնդիրները հրատապ իմաստ են ձեռք բերում: Այսօր, մասնավորապես, փիլիսոփայական ուսմունքների երևան գալը բացատրելիս **«անհատական»** մոտեցում մշակելը, այսինքն՝ այդ ուսմունքների երևան գալու, Ֆ. Էնգելսի բառերով ասած, «ուղիների», «կեռմանների», «անթիվ ու անհամար պատահականությունների», «իրերի ու իրադարձությունների» և դրանց «խճճված», «դժվար ապացուցելի» փոխհարաբերությունների անկրկնելի կոնտեքստի հաշվի առնումը կամ, որոշակիորեն ասած, փիլիսոփայական ուսմունքների լինելության և ձևավորման սոցիալ-պատմական, մշակութային, մարդկային, ազգային, անձնային «իմաստային կոնտեքստի», **ամբողջական «կենսական իրադրության»** պարզումը դարձել է հույժ կարևոր: Դատելով ընդհանրապես հոգևոր-մշակութային կազմավորումների մասին՝ Հ. Ա. Գևորգյանը գրում է. «Չի կարելի խուսափել այն բանի պնդումից, որ գոյություն ունի ձևերի բազմազանություն՝ աշխարհընկալման իրենց անհատական առանձնահատկություններով հանդերձ. տարբեր «մտածողության սխեմաներ», «իմաստային կոնտեքստներ», առանձին տեսություններ, ինչպես և առանձին մշակութա-պատմական կազմավորումներ: Քննադատները, ըստ երևույթին, պետք է նկատի ունենան, որ այդ բազմազանությունից չի կարելի խուսափել...» (Г. А. Геворкян, О проблеме понимания, «Вопросы философии», 1980, № 11, с. 130)):

Փիլիսոփայական ուսմունքների մոտիվացիայի հարցադրմանը կարելի է մոտենալ տարբեր տեսանկյուններից: Օրինակ, կարելի է որոշակի (իմացաբանական, տրամաբանական, արժեքային կամ փիլիսոփայական-պատմական) հիմքի վրա առանձնացնել փիլիսոփայական ուսմունքների մոտիվները և առանձին-առանձին բնութագրել: Մեկ այլ մոտեցմամբ կարելի է այդ մոտիվները դասակարգել ըստ այնմ, թե դրանք արդյո՞ք իմացաբանական, տրամաբանական, թե արժեքային բնույթի են, և տալ դրանց բնութագրությունը: Կամ, հիմք ընդունելով այդ դասակարգումը, կարելի էր այդ տեսանկյունից «ընթերցել» փիլիսոփայության պատմությունը և պարզել, թե նրա զարգացման այս կամ այն փուլում որ մոտիվն է իշխել: Կարելի է նաև տալ փիլիսոփայական ուսմունքների մոտիվացիայի ծայրահեղ ըմբռնումների քննարկումը: Հնարավոր է նաև հարցադրումը քննել ընդհանուր մեթոդաբանական առումով: Հարցադրումն այս վերջին երկու կտրվածքով քննելն էլ հենց կհանդիսանա մեր խնդիրը:

Նախ հարցը դիտենք առաջին կտրվածքով:

Իհարկե, կան փիլիսոփայական ուսմունքների մոտիվացիայի բազմաթիվ ըմբռնումներ, սակայն կարելի է առանձնացնել առավել միակողմանի, տիպական ըմբռնումները, որոնցից յուրաքանչյուրը բացարձակացնում է փիլիսոփայական ուսմունքների մոտիվացիայի այս կամ այն կոնկրետ մոտիվը՝ մյուս մոտիվները անտեսելով

կամ նրանց աննշան դեր հատկացնելով: Փիլիսոփայական ուսմունքների մոտիվները, ինչպես նշեցինք, կարելի է տարբեր հիմքով դասակարգել: Ըստ այդմ կարելի է ստանալ ծայրահեղ ըմբռնումների տարբեր դասակարգումներ: Մենք պայմանականորեն այդ մոտիվները կբաժանենք ըստ բնույթի՝ այն իմաստով, թե տվյալ մոտիվը «ներփիլիսոփայական» բնութագրություն ունի և բացատրվում է փիլիսոփայության, որպես ինքնուրույն բնագավառի հատկություններով, փիլիսոփայական աշխարհընկալման և աշխարհազգացողության յուրահատուկ օրինաչափություններով ու նորմերով, թե «արտափիլիսոփայական» և բացատրվում է փիլիսոփայության և փիլիսոփայականի նկատմամբ «արտաքին» աշխարհի և նրա տարրերի (մշակույթի, սոցիալական իրականության, մարդու և այլն) համապատասխան առանձնահատուկ օրինաչափություններով ու նորմերով: Այդ առումով, փիլիսոփայական ուսմունքների լինելության և ձևավորման մոտիվները կարելի է դասակարգել «իմանենտայինի» (կամ «ներփիլիսոփայականի») և «էքստերնալիստականի» (կամ «արտափիլիսոփայականի»): Համապատասխանաբար, ծայրահեղ ըմբռնումները կարելի է դասակարգել՝ ա) «իմանենտայինի» (որի ամենացայտուն ներկայացուցիչներն են Պլատոնը և Հեգելը) և բ) «էքստերնալիստականի»: Իր հերթին «արտափիլիսոփայական» մոտիվները կարելի է դասակարգել՝ ելնելով նրանից, թե դրանք «արտափիլիսոփայական աշխարհի» ո՞ր ոլորտին են վերաբերում և այդ «աշխարհը» ի՞նչ «մակարդակում» և ի՞նչ «հարթության» վրա են բնութագրում: Այս առումով կարելի է առանձնացնել «էքստերնալիստական» ըմբռնման հետևյալ տարատեսակները. ա) սցիենտիստական (պոզիտիվիզմ), բ) մշակութաբանական (Շպենգլեր, Կասիրեր և ուրիշներ), գ) սոցիալական («նորմարքսիզմ»), դ) մարդաբանական (Լ. Ֆոյերբախ, Դիլթեյ, Զիմել, Բերգսոն և ուրիշներ), ազգայնական (Գ. Գոմպերց, Է. Ցելեր, Ռ. Ֆալկենբերգ, Ս. Ռադհակրիշնան և ուրիշներ), ե) անձնավորային (էկզիստենցիալիզմ):

Փիլիսոփայական ուսմունքների մոտիվացիայի ըմբռնումների այդպիսի բազմազանությունը պայմանավորված է այդ մոտիվացիայի ներքին բարդ կառուցվածքով, նրանում տարբեր հարթության, կարգի (նույնիսկ հակադիր) մոտիվների գոյությամբ, նրանց բարդ, ոչ միակերպ, միմյանց ստվերող ու քողարկող, խճճված, փոխադարձաբար միջնորդավորված հարաբերությամբ: Իսկ այն հանգամանքը, որ այդ մոտիվները անմիջականորեն չեն դրսևորվում փիլիսոփայական ուսմունքում, այլ, որպես կանոն, միջնորդավորված ձևով՝ մեկը մյուսին «ստվերելով», երբեմն ստեղծագործողի մոտ խաբուսիկ տպավորություն է ստեղծում այդ մոտիվների իրական փոխհարաբերության, ընդհանուր մոտիվացիոն համակարգում նրանց գրաված տեղի ու դերի վերաբերյալ, նրան հնարավորություն չի տալիս, այսպես ասած, հիմնական, վճռական մոտիվները տարբերակելու ոչ հիմնականից, էականը՝ ոչ էականից, անհրաժեշտը՝ պատահականից և այլն:

Այս, այսպես ասած, իմացաբանական հնարավորությունն ամրապնդվում, իրականության է վերածվում սոցիալ-պատմական, մշակութային պայմաններով, ստեղծագործողի անհատական ինչ-ինչ առանձնահատկություններով և այլն: Այդ հանգամանքները կարող են շեշտել առանձին մոտիվները կամ նպաստել դրանց դրսևորմանը, քողարկել մյուսները կամ խոչընդոտել նրանց դրսևորմանը՝ դրանով իսկ ստեղծելով այդ շեշտված մոտիվների ընդհանրապես փիլիսոփայական ուսմունքներում վճռական նշանակություն ունենալու պատրանք: Այնպես որ, ըմբռնումների նշված բազմազանության նախադրյալներից մեկն էլ այն է, որ իրոք տարբեր փիլիսոփայական ուսմունքներում առանձին մոտիվները տարբեր դեր են խաղում, ակնհայտության տարբեր աստիճանով, տարբեր խորությամբ ու ծավալով են հանդես գալիս. մի դեպքում շեշտվում է սոցիալական մոտիվը, մի այլ դեպքում՝ մշակութայինը, իսկ մի այլ դեպքում էլ՝ անձնայինը և այլն, այդ բոլոր դեպքերում էապես փոխելով փիլիսոփայական ուսմունքի բովանդակությունը:

Փիլիսոփայական ուսմունքների մոտիվացիայի հարցադրումը վերաբերում է ոչ թե բուն փիլիսոփայական ուսմունքին, նրա սեմանտիկական բովանդակությանը, նրա կառուցվածքի, տրամաբանության, առանձին տարրերի իմաստի վերհանմանը, փիլիսոփայության պատմության ընդհանուր կոնտեքստում այդ ուսմունքի տեղի ու դերի պարզաբանմանը, այլ նրա ակունքներին, այդ ուսմունքի հիմքում ընկած մղումների, ազդակների վերհանմանը: Այստեղ մենք գործ ունենք ոչ թե փիլիսոփայական ուսմունքի բուն տեքստի, այլ նրա ենթատեքստի, «թաքնված շերտի» հետ, որը ակնառու ձևով բուն փիլիսոփայական ուսմունքում տրված չէ և պետք է վերականգնել: Դա փիլիսոփայի «կուլիսային» և ոչ թե բուն «բեմական» կյանքին վերաբերող հարցա-



դրում է: Մի դեպքում, մեր դեմ է հառնում փիլիսոփան ինքնին, իր ամբողջական կերպարանքով, իր կյանքի բոլոր ելևէջներով, ապրումներով ու հույզերով, փորձերով ու «փորձանքներով», այլ կերպ ասած, այնպիսին, ինչպիսին որ նա **իրականում** կա, իսկ երկրորդ դեպքում՝ փիլիսոփան, որ մտածում է, որը մտքեր է միմյանց կապում, միմյանցից բխեցնում, միմյանց հակադրում, իր համար ակնհայտը փորձում է ակնհայտ դարձնել նաև ուրիշների համար. այս դեպքում նա «դուրս է գալիս» ինքն իրենից՝ աշխատում է «հարմարվել» և «հարմարեցնել», իսկ երբեմն էլ «ինքնազերազանցման հիպերբոլացնող ճիգ» է գործադրում (նույնքան պարադոքսալ, որքան «ինքն իրեն մազերից բարձրացնելը»), փորձելով գոյի համընդհանուր օրինաչափությունները որսալ մի նոր տեսական համակարգի միջոցով (տե՛ս Н. С. Автономова, Философские проблемы структурного анализа в гуманитарных науках, М., изд-во «Наука», 1977, с. 175): Այս երկու դեպքերում տարբեր են փիլիսոփայի գնահատման մասշտաբները և չափանիշները. մի դեպքում՝ կոնկրետ սոցիալ-պատմական, մշակութային, անձնային և այլն գործոններով պայմանավորված այն կոնկրետ կենսական իրադրությունը, «կենսոլորտը», որի պայմաններում ձևավորվել են նրա հայացքները, մյուս դեպքում՝ համաշխարհային փիլիսոփայության պատմությունը, նրանում վերջինիս խաղացած դերը: Ահա թե ինչու «երկրորդ» փիլիսոփայի հետ մենք կարող ենք չհամաձայնել, նրան հերքել, բայց «առաջինին» չենք կարող հակադրվել, մերժել, չընդունել՝ համարելով նրա «կուլիսային» կյանքը զուտ նրա «անձնական գործը», «ճակատագրի խաղը». այս իմաստով նրա ասած ամեն մի աբստրակտ դրույթ մեր կողմից պետք է արդարացվի և հաստատվի:

Իհարկե, չի կարելի ընկնել ծայրահեղության մեջ (ինչպես ընկնում են շատ փիլիսոփաներ) և այդ «երկու փիլիսոփաներին» միմյանց հակադրել: Ինչ խոսք, այդ «փիլիսոփաները» տարբեր են, նրանք լիովին միմյանց չեն համընկնում. փիլիսոփան բուն կյանքում այլ ապրելակերպով է ապրում, փիլիսոփայության մեջ՝ այլ, նա կյանքում մի բան է անում, իր ուսմունքում ուրիշ բան է ասում— մի տարբերություն, որը տարբեր փիլիսոփաների մոտ տարբեր չափերի է հասնում: Սակայն, այդ տարբերությունն ինչպիսին էլ որ լինի, ինչ աստիճանի էլ որ հասնի, միևնույն է, այն հակադրության չի վերածվում, որ կնշանակեր կամ մեկի («կյանքի» փիլիսոփայի), կամ մյուսի («բուն» փիլիսոփայի) ժխտում, բացառում: Դրանց «խաղաղ գոյակցությունը» փիլիսոփայի, որպես այդպիսինի, գոյության ապահովության երաշխիքն է: Այնուհետև, չի կարելի մյուս ծայրահեղության մեջ ընկնել և պնդել, որ «կյանքի» փիլիսոփան և «բուն» փիլիսոփան, փիլիսոփայական ուսմունքի «ենթատեքստը» և նրա «տեքստը» լիովին համընկնում են միմյանց, մեկը ամբողջովին դրսևորում է մյուսին:

Դրանց փոխհարաբերությունը բնութագրող թերևս առավել հարմար արտահայտությունը «ամբողջականություն» արտահայտությունն է, որը կարևոր պայման է փիլիսոփայի ողջ գործունեության համար: Մեր կողմից այդ ամբողջականության մասնատումը տեղի է ունենում որոշակի պայմանականության սահմաններում միայն:

Փիլիսոփայական ուսմունքն ըստ էության ըմբռնելու համար մեզանից պահանջվում է այդ ուսմունքում տեսնել հենց այդ «ամբողջական» փիլիսոփային: Իսկ դրան մենք կարող ենք հասնել այն դեպքում միայն, երբ մենք փիլիսոփային ոչ միայն հասկանանք, այլ նաև զգանք, թափանցենք նրա «ինտիմ» աշխարհը, «դուրս գանք» մեզանից, մտնենք նրա «դրության» մեջ, վերստին «ապրենք» նրա հետ, աշխարհին նայենք նրա տեսանկյունից և այլն: Այս դեպքում ևս տեղին կլինի ասել, որ «պրոբլեմի ողջ էությունը հենց այն է, որ ըմբռնումը (տվյալ դեպքում՝ փիլիսոփայական ուսմունքի— Ս. Մ.) ենթադրում է «իմաստային կոնտեքստի» մեջ թափանցում, նախապես որևէ նախնական սխեմայից հրաժարում» (Г. А. Геворкян, նշվ. աշխ., էջ 13): Փիլիսոփայական ուսմունքի մոտիվացիայի վերհանումը հենց այն միջոցն է, որն ապահովում է փիլիսոփայական ուսմունքի այդպիսի ըմբռնումը: Փիլիսոփայական ուսմունքը կենսական հարաբերությունների մեջ դիտելով միայն կարելի է հասնել նրա ամբողջական ըմբռնմանը: Իսկ դա իր հերթին ապահովում է փիլիսոփայական ուսմունքի մասին մեր իմացության հարաբերական լրիվությունը և միասնությունը:

# ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՏ, ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՄԱՐ

## (ՊԵՐՃ ՊՌՈՇՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

XIX ԴԱՐԻ ՀԱՅ ԱՇԽԱՏԱՎՈՐ գյուղացիության բազում ցավերի և սակավաթիվ ուրախությունների, կենսական շահերի ու հայացքների հարազատ արտահայտիչն էր մեր գեղարվեստական արձակի ականավոր դասական Պերճ Պռոշյանը: Նրա գործունեությունն սկսվեց անցյալ դարի 50-ական թվականներին, երբ հայ ժողովրդի պատմական ճակատագրում տեղի էր ունեցել բառիս բուն իմաստով բախտորոշ իրադարձություն՝ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումը: Այդ միավորման շնորհիվ արևելահայությունը թոթափել էր պարսկական դաժան դեսպոտիզմի սոցիալ-քաղաքական, ազգային ու կրոնական ահավոր ճնշումների, հարստահարության, մշտական հալածանքների դարավոր լուծը և ձեռք բերել Ռուսաստանի կազմում համեմատաբար ազատ զարգացման որոշակի հնարավորություն: Դրա արգասիքն եղավ այն նշանակալի իրողությունը, որ սկզբնավորվեց և զարմանալի կարճ ժամանակամիջոցում բուռն վերելք ապրեց հայ նոր գրականությունը, որի հիմնադիրը մեծ Աբովյանն էր:

Պ. Պռոշյանն առաջիններից մեկն էր, որ հմայված-կախարդված կարդաց նորնոր լույս տեսած «Վերք Հայաստանին», իր բնորոշմամբ՝ այդ «նորանշան և սքանչելի երևույթը», այդ «անգին գանձը», որի բարերար ազդեցությամբ էլ սկսվեց նրա ստեղծագործական ուղին: Նա դարձավ Աբովյանի սկզբնավորած ազգային-մշակութային, Թումանյանի բնորոշմամբ՝ «սրբազան գործի» շարունակող-զարգացնողներից մեկը:

Պերճ (մկրտության անունով՝ Հովհաննես) Պռոշյանը ծնվել է 1837 թ. հունիսի 15-ին (հին տոմարով՝ 3-ին), Երևանի նահանգի Աշտարակ գյուղում, դերձակի ընտանիքում: Նրա հայրն ուներ միայն մի փոքր այգի և ընտանիքի հանապազօրյա հացը վաստակում էր արդար աշխատանքով: Ճանաչված արհեստավոր էր, եղել էր Վրաստանում, Հյուսիսային Կովկասում, Աստրախանում և այլուր: Բարեհամբույր, հյուրասեր, գրագետ ու գրասեր անձնավորություն էր: Նա ինքն էլ զարմանալի ընդունակ հնգամյա տղային սովորեցրեց հայոց այբուբենը, նախաձեռնեց Աշտարակում փակված դպրոցի փոխարեն նորը բացելու գործը: Եվ նորաբաց դպրոցի առաջին ու լավ սովորող աշակերտներից մեկն էլ եղավ ութամյա Հովհաննեսը: Իր փայլուն առաջադիմության համար նա արժանացել է 1846 թվականին Աշտարակի ծխական վարժարան այցելած, Երևանի արքունական-նահանգական դպրոցի տեսուչ, մեծ գրող և մանկավարժ Խ. Աբովյանի դրվատանքին, որի պայծառ անունը Պռոշյանը պահեց իր սրտում մինչև կյանքի վերջը: Երբ փակվեց Աշտարակի վարժարանը, փոքրիկ Հովհաննեսը մոտ երկու տարի սովորեց մոտակա Մուղնու գյուղի վանական հոգևոր դպրոցում, ապա իր հայրենակից Ներսես Աշտարակեցի կաթողիկոսի հրավերով տեղափոխվեց Թիֆլիս և ընդունվեց Ներսիսյան դպրոց: Գերազանց գնահատականներով սովորեց ու հանձնեց ավարտական քննությունները, սակայն հրաժարվեց հոգևորական դառնալ, որի համար էլ զրկվեց կաթողիկոսի հովանավորությունից: Ցուրտ երեք ամիս հաճախեց արքունական գիմնազիա, բայց նյութական անբարենպաստ պայմանների պատճառով տասնինըամյա պատանին վերադարձավ իր ծննդավայրը և սկսեց աշխատել որպես ուսուցիչ: Այստեղից սկիզբ առավ նրա մանկավարժական գործունեությունը, որը տևեց շուրջ կես դար՝ շարունակվելով Շուշիում, Ագուլիսում, Աստրախանում, Երևանում, Թիֆլիսում: Ամենուրեք նա հիմնեց նաև իգական դպրոցներ, ղեկավարվեց ժամանակի առաջավոր մանկավարժության սկզբունքներով ու մեթոդներով, գրեց դպրոցական կանոնադրություններ և մանկավարժական հոդվածներ: Եվ բնական էր, որ հետադեմ հոգևորականների թվում ունեցավ կատաղի հակառակորդներ, որոնց սադրանքներով, հոգևոր կենտրոն Էջմիածնի հրամանով մի քանի տարի զրկվեց ազգային ծխական դպրոցներում դասավանդելու իրավունքից:

Չնայած մանկավարժական բազմազբաղ գործունեությանը, Պռոշյանը ժամանակ էր գտնում զբաղվելու նաև թատրոնի և թատերագրության հրատապ հարցերով: Մասնավորապես մի քանի թատերասերների հետ նա ձեռնամուխ եղավ Թիֆլիսում մշտական գործող հայկական թատրոն և թատերախումբ կազմակերպելու շահեկան գործին, որը պսակվեց փայլուն հաջողությամբ: Ի պատիվ նրա՝ տաղանդավոր դերասանների մի խումբ կոչվեց «Պերճական խումբ»: Նա «Վերք Հայաստանի» վեպի հիման վրա գրեց «Աղասի» ողբերգությունը, որը տպագրվեց և բեմադրվեց: Վերջապես հարկ է նշել, որ Պռոշյանի գրչին են պատկանում տասնյակ բանաստեղծություններ, որոնք նրա ժառանգության անկապտելի մասն են կազմում:

Այս բոլորով հանդերձ, Պերճ Պռոշյանը սերունդներին ներկայանում է որպես հայ գրականության դասական արձակագիր: Կարդալով Խ. Աբովյանի «Վերք Հայաստանին», նա հաստատորեն որոշում է. «Ես Աբովյանցին աշակերտելու և հետևելու եմ»: Եվ որոշ ժամանակ անց գրում է իր առաջին՝ «Սոս և Վարդիթեր» վեպը, որը նախ մամուլում և ապա առանձին գրքով հրատարակվեց 1860 թ.: Հայ գյուղացիության կյանքի և կենցաղի, ազգային ավանդույթների ու ծեսերի, ժողովրդական բանարվեստի արտահայտչամիջոցների խոր իմացությամբ, անկրկնելի ինքնատիպ արվեստով Պռոշյանն իր առաջին և հետագա բոլոր վեպերում, վիպակներում, պատմվածքներում պատկերեց մանկությունից իրեն քաջածանոթ, անձամբ ապրած իրականությունը: Նրա ստեղծագործությունը մի յուրատեսակ գեղարվեստական տարեգրություն է, ուր ռեալիստորեն արտացոլված են հետզհետե անհետացող «հին բարի ժամանակների» նահապետական պարզ բարքերը և բարոյական արժեքները, կապիտալիստական հարաբերությունների հարանուն զարգացմանը զուգընթաց արագորեն արմատավորվող սոցիալ-բարոյական խոցերն ու արատները: Խոսելով «տասն և իններորդ դարի երկրորդ կիսաշրջանի» բերած «վերափոխական տակնուվրայությունների» մասին՝ նա գրել է, թե տեղի ունեցավ «անհավատալի արմատական հեղաշրջություն. ամեն կարգ ու կանոն գլխիվայր շրջվեցան և հիմնական փոփոխության ենթարկվեցին... Կարճ միջոցում բուն ազգային ավանդական սովորությունները, ապրուստի եղանակը, լեզուն, նիստ ու կացը, նահապետական դարերով սրբագործված և արյունի մեջ մակարդված ծերերի պատվապահությունը, ծնողասիրությունը, պարզ սակավապետությունը, եղբայրական անբաժանությունը... միանգամայն, կարծես մի սաստակիչ հրեշտակի սրի առաջ դուրս վռնդվեցին և նոցա տեղը պատվաստվեցին կյանքին, տեղական պայմաններին, երկրի դիրքին խորթ ու օտարոտի նորություններ» (հ. 4, էջ 204, 206):

Պ. Պռոշյանը սկզբից մինչև վերջ սերտորեն կապված մնաց ժամանակի ու ժողովրդի կյանքի հետ, գեղարվեստորեն արտացոլեց իրականության մի շարք բնորոշ կողմերը, տեղի ունեցած հիմնական սոցիալ-տնտեսական փոփոխությունները: Այս իմաստով նրա ստեղծագործությունը ոչ միայն պատմաճանաչողական խոշոր արժեք ունի, այլև ուսանելի օրինակ է ծառայել գրական երիտասարդ սերունդների համար:

Սոցիալ-բարոյական լուրջ պրոբլեմներ արծարծելու, կենսական ռեալ բախումներ արտացոլելու, տիպական հանգամանքներ ու տիպական կերպարներ ստեղծելու մեջ է դասական գրողների, այդ թվում և Պռոշյանի գեղարվեստական վաստակի ուժն ու հմայքը: Նրա ստեղծագործությունները, հիրավի, խոսել են ընթերցողների մտքի և սրտի հետ ու այսօր էլ խոսում են, քանզի պահպանում են իրենց գաղափարագեղարվեստական թարմությունը: Նրա «Սոս և Վարդիթեր» վեպի քննությամբ հատուկ զբաղվեց Պետերբուրգի Պետրոպավլովյան ամրոցում բանտարկված ականավոր հեղափոխական-դեմոկրատ Միքայել Նալբանդյանը: Հարազատներից պահանջելով իրեն ուղարկել Պռոշյանի վեպը և ստանալով հենց հեղինակի ուղարկած օրինակը՝ նա ստեղծեց **Կրիտիկա «Սոս և Վարդիթեր»** փոքրածավալ կոթողային աշխատությունը, որտեղ գիտականորեն լուսաբանված են ոչ միայն գեղագիտական-տեսական և գործնական կենսական պրոբլեմներ, այլև փիլիսոփայական, տնտեսագիտական, լեզվաբանական, բնագիտական, հասարակական-քաղաքական մի ամբողջ շարք հրատապ խնդիրներ: Եվ ժամանակի ամենականկառուն հայ քննադատը յուր ծանրակշիռ հեղինակությամբ հենց սկզբից հավաստեց. «Մենք պարտականություն ունինք հրատարակել, թե պ. Աբովյանցի **Վերք Հայաստանին** և **Սոս և Վարդիթերը** հիմք դրին արդյան ազգային վիպասանության»:

Ինքնին մեծանշանակ այս գնահատականով հանդերձ՝ Նալբանդյանը միանգամայն անաչառ, «խիստ և անկաշառ»

քննությամբ բացահայտեց վեպի մի շարք էական թերությունները, անկատարությունները, հոգեբանական սայթաքումները և սակայն եզրակացրեց. «Էական արժանավորությունքը շատ են և շոշափելի, մինչդեռ թերությունքը՝ չնչին և աննշան»: Նա վեպի էական արժանիքների շարքը դասեց հեղինակի սերտ կապը ժողովրդի կյանքի հետ, կյանքի ռեալիստական արտացոլումը, գրողի «պարզ, բնական և անզարդ խոսքը», ժողովրդական բանարվեստին հատուկ «սիրուն ձևեր և ոճեր» գործածելը: Բայց հատկապես ընդգծեց վեպի քննադատական լիցքը, հասարակության սոցիալական խոցերի և բարոյական արատների մերկացումները, գեղջուկ Վայկունի «դառն բողոքը» ապօրինի հարկահանությունների, իշխանավորների անիրավությունների, շահամոլության դեմ: Միքայել Նալբանդյանը «համբուրելի հեղինակի» վիպական երախայրիքը համարեց «ազնիվ և պատվական աշխատություն», աներեր հավատ հայտնեց, որ շուտով կհասունանա «ապագայում ավելի մեծ հույսեր տվող երիտասարդ բանաստեղծի» տաղանդը:

Արդարացան մեծ քննադատի հույսերը, թեև ստեղծագործելու ազատ ժամանակ և բարենպաստ պայմաններ Պ. Պռոշյանը երբեք չունեցավ: Պատահական չէ, որ երկրորդ վեպը նա գրեց առաջինից ավելի քան մեկուկես տասնամյակ հետո: Այդ ժամանակամիջոցում նա հիմնականում զբաղված էր մանկավարժությամբ, մասամբ թատրոնի գործերով, որպես լուսավորիչ՝ շրջագայում էր Վրաստանի, Հյուսիսային Կովկասի, Հայաստանի տարբեր բնակավայրերում: Այդ շրջագայությունների ընթացքում շփվում էր ժողովրդի հետ, նյութեր հավաքում ապագա ստեղծագործությունների համար, երբեմն էլ հանդես գալիս մամուլում: Հիշարժան է, օրինակ, «Մշակ» օրաթերթի առաջին իսկ համարներում (1872) Պահլավունի ստորագրությամբ տպագրված նրա «Նամակներ Երևանից» փաստահարուստ, աշխատավորության թշվառ կենսավիճակի և բյուրոկրատ պաշտոնյաների շահատակությունների դեմ բուռն բողոքով հագեցված ակնարկների շարքը:

Պռոշյանը ուսուցիչ էր Աստրախանում, երբ, անսալով բարեկամների հորդորներին, 1876 թ. սկսեց շարադրել իր երկրորդ՝ «Կովածաղիկ» վեպը: Վիպական երախայրիքի համեմատությամբ, «Կովածաղիկը» որոշակի առաջընթաց էր գրողի ստեղծագործական կյանքում և վկայում էր նրա ձեռք բերած հարուստ կենսափորձն ու տաղանդի հասունացումը: Դիմելով պատմավեպի ժանրին՝ հեղինակը արձագանքում էր իր ժամանակի երևույթներին: «Գործող անձիք,— գրել է նա մի նամակում,— յուրյանց մականուններովը ներկա հերոսներն են 100 տարի առաջ տարած»:

«Կովածաղիկը» տպագրության պատրաստելու ընթացքում էլ արդեն Թիֆլիս վերադարձած Պ. Պռոշյանը գրեց նշանավոր «Հացի խնդիր» վեպը, որը լույս տեսնելուց հետո (1879) բազմիցս վերահրատարակվեց, թարգմանվեց ռուսերեն, գերմաներեն, լեհերեն, բուլղարերեն: Այն վերածվեց դրամայի և բեմադրվեց, ամենուրեք ջերմորեն ընդունվեց և գնահատվեց՝ որպես վիպասանի գլուխգործոցը, հայ դասական գրականության նշանավոր երկերից մեկը: Ուշագրավ է, որ Պռոշյանին հայտնի չէր Մ. Նալբանդյանի «Կրիտիկան» (այն հայտնաբերվեց և տպագրվեց սովետական իշխանության տարիներին՝ 1935 թ.), սակայն ժամանակաշունչ գրողը շեշտը դրեց հենց մեծ քննադատի պահանջած «սկեպտիկյան ուղղության», այլ խոսքով՝ քննադատական ռեալիզմի վրա: Նրա վեպի հիմնական պաթոսը խիստ քննադատությունն է, որն ուղղված է աշխատավորությանը կեղեքող, «արծաթի ու փառքի համար» ամեն տեսակ «ծուռն ու պարսավելի» միջոցների դիմող հարըստահարիչների դեմ՝ սկսած բարձրաստիճան պաշտոնյա մոլրովից (գավառապետից) և նրա պաշտոնակիցներից մինչև շահամոլ տանուտերերը, հոգևորականները, ագահ ու անգութ վաշխառուները: Նրանց տիպական ներկայացուցիչն է Միկիտան Սաքոն՝ վեպի կենտրոնական կերպարներից մեկը, որը խորապես անհատականացված է և հաստատուն տեղ է գրավում հայ դասական գրականության բացասական տիպերի պատկերասրահում: Վիպական գործողությունների, տիպական հանգամանքների մեջ նա հանդես է գալիս որպես նենգ ու խորամանկ, ձեռներեց և անսահման շահամոլ անձնավորություն, որը, ոմանց խաբելով, ահաբեկելով, ոմանց քծնելով ու կաշառելով դրամ է դիզում: Ահավոր են նրա գործած չարիքները, սակայն մնում է անպատիժ, որովհետև թիկունքին կանգնած են մոլրովը, յասաուլները, տանուտերերը, հոգևոր հովիվները... Եվ ոտնատակ տրորվում են արդար աշխատանքի մարդիկ, ունեզուրկ և իրավազուրկ ներքնախավերը, որոնց մասին վեպում ասված է. «Խալխումն էլ հալ չմնաց, եզը վեր են կացնում, տակիցը հորթ ուզում, զոռով մարդկանց կովացնում են, որ մեջտեղը իրանք մոծակի պես ծծեն՝ արնաքամ անեն. էլ ո՛չ դիվան կա, ո՛չ դատաստան, ո՛չ իրավունք կա, ո՛չ արդարություն. վերջին մոհտարիցը բռնած՝ ընչանք ինքը մոլրովը ձեռքը դեմ արած ուզում են: Ախար ո՞րտեղից տան, մի մեր գեղի հալը հարցրու՝ կսարսափես, որ լսես, տուն կա՞, որ պարտքի տակ թաղված չըլնի, ինչ են անում, կերածները՝ պաս օրերին ցամաք հաց ա, ուտիսին՝ մի կտոր աղվեսի չոր պանիր, հագածներն էլ՝ որ մի թելը քաշես, ինը հարիր կարկատան վեր կընկնի»:

Աշխատավոր գյուղացիության արդար դատի պաշտպան, գյուղացիական դեմոկրատիայի գաղափարախոս, ազատասեր և մարդասեր վիպասանը հույս է հայտնում, թե մի օր «արեգակի լույսը ամեն ծմակները կթափանցի», այլ խոսքով՝ «լույսի շող» է երազում «խավարի թագավորության» մեջ և վեպում հանդես բերում մի արդարադատ «բարի քննիչ», որը բացահայտում է գավառապետի հանցանքները... Սակայն գրողն ինքն էլ գիտեր, որ ոչ մի քննիչ չէր կարող արմատախիլ անել սոցիալական չարիքները, ահա թե ինչու մեծագույն չարագործ Միկիտան Սաքոն խուսափում է պատժից, փոխում է հայրենիքը, բնակավայրը, դավանանքը և շարունակում է շահատակությունները:

«Ցեցեր» վեպով (1889) Պռոշյանը հասուն վարպետի գրչով ցույց է տվել, որ «Հացի խնդրի» մեջ հանդես եկող «բարի քննիչից» հետո ոչ միայն չեն վերացել, այլև ավելի են բազմացել հարստահարիչները: «Առաջ ուտողը մինն էր,— ասում է հենց նոր «ուտողներից» Խուդոն,— հիմի՝ մի քանիսը»: Ընդ որում ոչ միայն բազմացել, այլև ավելի են հղփացել, լկտիացել, այլասերվել՝ ավելի ու ավելի խորացող «մարդը մարդու համար գայլ» գիշատչական սկզբունքի պայմաններում: Այդ են վկայում վեպի կենտրոնական դեմք Բալասան աղայի և նրա արբանյակների՝ Խուդոյի, Գնթունու, քահանա Տեր-Սուքիասի, գավառապետի օգնականի վարպետորեն ստեղծված կերպարները: Բալասան աղան, երբեմնի աղքատ ծառայի որդին, ուսման մեջ անշնորհք, բայց եկամըտաբեր պաշտոնների տիրացած երեկվա Բալոն, պաշտոնապես Վլադիմիր Մելնիկովը, խոշոր գիշատիչ է, ցեցերի ցեցը՝ ցեցապետը: Իր ծննդավայրի մասին նա ասում է. «Ողջ գյուղն իմ ստրուկն է», ապա ավելացնում է. «Թիփս երկու կողմն էլ կտրում է... էս ուեզդումը գեղ չկա, որ ինձ պարտ չըլնեն,— Վաղարշապատ, Աշտարակ, Եղվարդ, Փարբի, Բիրական, Ծարուր, Դարալագյազ— բոլորն իմ ճորտերն են, քաղաքումը բանկերն են ինձ պարտ»:

Տալով իր և իր նմանների մտածելակերպի ու գործելակերպի խոսուն բնութագիրը՝ նա ասում է. «Միշտ այդպես է, թույլը զորեղի համար է ստեղծված, արջը գայլին է խեղդում, գայլը՝ ոչխարին, աղվեսը՝ հավին, կատուն՝ մկանը... Ինձնից ձեզ խորհուրդ, ձեռքդ ընկավ, տեսար, որ քեզանից անոժ է՝ փշրի, ոչնչացրու, մեջտեղից քո օգուտը հանիր»: Ցնցող տպավորություն են թողնում «ողջ գավառի ցեցերի մեջ ցեցապետի» երեսպաշտության և ցինիզմի բացահայտմանը նվիրված էջերը. նա, որ «ծծել է ժողովրդի արյունը և սարսափ է դարձել ամենքին», գավառապետի և թղթակից Սմբատի հետ զրուցելիս ասում է. «... հարկավոր է շարունակ մտրակել ազգի ցեցերին, աստիճանամոլ և հացկատակ պաշտոնյաներին, արյունարբու վաշխառուներին, դավաճաններին, մատնիչներին և այն բոլորին, որոնք անձնական շահի համար խեղդում են ժողովրդի մեջ ամենատեսակ բարի ձգտումը»:

Հատկանշական է, որ հենց ցեցերի դեմ ուղղված սուր քննադատության համար վեպը բուռն վեճերի տեղիք տվեց: «Մշակ» լրագրում (1889, № 68), «Ցեցերը» համարվեց ոչ թե վեպ, այլ «պասկվիլ», որի հեղինակը զուրկ է «իդեալներ ունենալու շնորհքից և քաղաքակրթական հասունության ամենափոքր նշույլից», որովհետև ձաղկել էր ազգային պատվարժան գործիչների... Իսկ «Մուրճ» ամսագիրը, որ տպագրել էր վեպը, գրեց. «Վերջին տարիներում լույս տեսած վեպերից Պռոշյանի «Ցեցերը» յուր հասարակական նշանակությամբ բռնում է անկասկած առաջին տեղը. վեպի վրա թշնամաբար հարձակվում են հենց այն ցեցերը, որոնց դեմ լարված են մեր շանթերը: Նրանք երևի շատ գոհ են, որ իրենց դիմակները կծածկըվեն լրագրական կռիվներով: «Մշակը» ձեզ օգնական, Բալասան աղա, Տաճատ Գնթունի և տանուտեր Խուդո» (1889, № 7): Ուշագրավ է, որ վեպում նշմարելով մի շարք թերություններ, քննադատական ռեալիզմի հայ գրականության մեծ վարպետ Ալ. Շիրվանզադեն գրեց. «Բալասանների տիպը կարելի է գտնել, փոքր կամ մեծ դիրքով, բոլոր մեր գավառներում, ուր շահամոլությանը ընկեր և աջակից է հանդիսանում պաշտոնեական դիրքը» («Արձագանք», 1889, № 24—25):

Այս ճշմարտությունը մի առանձին վարպետությամբ ցույց տվեց Պռոշյանը «Բղդե» վեպում (1890): Այս երկի առանձնահատկությունն ու էական արժանիքն այն է, որ նրանում հոգեբանորեն, փաստարկված և համոզիչ արվեստով ներկայացված է գյու-

դական ցեցի լինելիության ու զարգացման ընթացքը։

Պռոշյանի ստեղծագործության մեջ արժեքավոր է նաև «Հունոն» վեպը (1900), քննադատական ռեալիզմի հայ արձակի մնայուն էջերից մեկը։ Այս վեպում մի առանձին ցայտունությամբ են դրսևորվել Պռոշյանի դեմոկրատական հայացքները։ Հիմնական հերոսներից մեկը հեղինակն ինքն է, որը ոգեշունչ ու հուզիչ տոնով պատմում է ճանապարհորդության ընթացքում իրեն հանդիպած «ազնիվ գաղափարական հերոս», իսկական ժողովրդական վրիժառու Հունոյի կյանքի և քաջագործությունների մասին։ Պետական իշխանությունների կողմից «ավազակ» համարված Հունոն իրականում «խեղճերի և անզորների պաշտպան» է, որ զինված խումբ կազմած կռվում է հենց թալանչի ավազակների, «գութ ու խղճմտանք» կորցրած հարստահարիչների դեմ։ «Հունոն,— ասում են նրան բոլոր ճանաչողները,— արդար մարդկանց, հալալ աղամորդու ճանապարհը չի կտրում, այլ տներ քանդելու..., կողոպուտներ անելու..., անխղճմտանք շահեր առնելու սովոր մարդկանց» է պատժում։ Իսկ իր մասին ասում է, որ ինքը վնասազերծում է «խեղճ գյուղացու քրտինքը լափողներին, անտեր-անտիրական որբին քերթողին, շահին շահ առնողներին, գողին, ավազակին, աղամորդու հայտնի ու թաքուն թշնամիներին, խաբեբաներին, անօրեններին...»։ Հատկանշական է, որ Հունոն, եթե անգամ ունեցել է իր նախատիպը, հեղինակի իդեալական հերոսն է, որպիսիք են նաև «Մեր Խեչոն» և «Աքցիզչի» պատմվածքների մաքառող կերպարները։

Պռոշյանի ժառանգության մեջ նշանակալից են մի քանի տասնյակ պատմվածքները, որոնցում այլ կողմերից, այլ նրբերանգներով նա պատկերում է ժամանակի հասարակության բնորոշ երևույթները՝ քաղաքային կյանքի այլականվածությունը («Բարի պտուղ», «Խելագարը»), մերկ-շահի համար հարազատ ծնողներին անգամ ուրանալու տգեղ փաստը («Վարդի յուղը մահադեղ»), դրամի և դիրքի համար եղկելի երկերեսանիությունն ու ազգուրացությունը («Յանոս»), քահանայի զգեստ հագած ագահ վաշխառուի շահատակությունները («Օրը կյուրակի է, երազը սուտ») և այլն։ Արժեքավոր են նաև նրա ինքնակենսագրական բնույթի պատմվածքները («Գյուղական վարժապետներ», «Լուսանկարչի հիշատակարանից», «Ծատերից մեկը»), փաստալից և ճշմարտապատում հուշագրությունները («Հուշիկներ» և «Հուշեր»), բնանկար-պատկերները («Ձմեռ», «Գարուն», «Ամառ», «Աշուն»)։ Թափանցիկ և խոսուն այլաբանություն է ռուսական առաջին հեղափոխության նախօրյակին (1904) գրված «Գարունը», որտեղ ասված է. «Թող ուրեմն ամեն ճնշված ու հարստահարված, ամեն խեղճ ու տնանկ հույսով ապրի և հույս ունենա, թե իրան սեղմող, իրան կուչ ածող, իր կյանքի թշնամի ձմռան դեմ իրան թև ու թիկունք, իրան պաշտպան կլինի կյանք տվող գարունը»։ Ցավոք, Պռոշյանը չընկալեց, հասու չեղավ բանվոր դասակարգի հեղափոխական առաքելությանը։ Բացի այդ, պրոլետարական պայքարի բուն փոթորիկների տարիներին նա արդեն ծեր էր, վշտացած. 1905 թ. կորցրել էր կնոջը, Օդեսայում բանտարկվել էր հեղափոխական շարժումների մասնակից, համալսարանի ուսանող որդին՝ Պռոշը, որը շուտով պիտի աքսորվեր Սիբիր*։ Աշխարհայացքի սահմանափակության պատճառով նա չէր կարող նկատել Ռուսաստանում բարձրացող համաժողովրդական փոթորիկների պատմական նշանակությունը, բայց երբեք չկորցրեց հավատը ազատ ու լուսավոր գալիքի նկատմամբ։

Ականավոր դասական գրողը ըստ արժանվույն գնահատվեց միայն սովետական իշխանության տարիներին։ Նրա անվամբ ծննդավայր Աշտարակում հիմնվեց տունթանգարան, Երևանում և այլուր կոչվեցին փողոցներ, դպրոցներ, գրադարաններ, լույս տեսան նրա կյանքին և գործունեությանը նվիրված արժեքավոր ուսումնասիրություններ, բազմիցս վերահրատարակվեցին նրա երկերը։

Պերճ Պռոշյանը վախճանվեց 1907 թ. նոյեմբերի 23-ին, Բաքվում։ Աճյունը տեղափոխվեց Թիֆլիս և ամփոփվեց Խոջիվանքի հայ գրողների պանթեոնում։

Պերճ Պռոշյանի դասական ստեղծագործությունները այժմ էլ պահպանում են իրենց պատմաճանաչողական և գեղագիտական արժեքը։ Նրա ավանդույթները ուսանելի են նաև այսօրվա գրական սերնդի համար։

**Ս. ՄԱՆՈՒԿՅԱՆ**
**Բանասիրական գիտությունների դոկտոր**

* *Պռոշ Պռոշյանը (1883—1918) էսէռական կուսակցության անդամ էր։ Մասնակցել է Հոկտեմբերյան հեղափոխությանը, որպես ձախ էսէռների Կենտկոմի անդամ ընտրվել Վ. Ի. Լենինի գլխավորած ժողկոմսովետի կազմում՝ փոստ-հեռագրատան ժողկոմ։ Ձախ էսէռների հայտնի խռովությանը մասնակից եղավ, պարտությունից հետո անցավ ընդհատակ և վախճանվեց տիֆից։*



# ԻՍԼԱՄԻ ԱԿՏԻՎԱՑՈՒՄԸ ՄԵՐՁԱՎՈՐ ԵՎ ՄԻՋԻՆ ԱՐԵՎԵԼՔՈՒՄ

*Յոթանասուն-ութսունական թվականների սահմանագծում նկատվում էր իսլամի քաղաքական դերի շեշտակի ակտիվացում, որն արտահայտվեց ինչպես իսլամի ավանդական տարածման երկրների ներքաղաքական հասարակական զարգացման, այնպես էլ միջազգային քաղաքականության վրա «իսլամական գործոնի» ներազդման մեջ։ Արևմտյան տերությունների գաղութային տիրապետության փլուզումից և անկախ պետությունների առաջացումից հետո, որոնցում իսլամը հռչակված է պետական կրոն, վերջինիս քաղաքականացման ուժեղացումը հանգեցրեց այնպիսի միտումի, երբ իսլամը, պահպանելով մահմեդականների կրոնապաշտամունքային պահանջմունքներին ծառայելու և նրանց գույքային-իրավական հարաբերությունների կարգավորման իր հին ֆունկցիան, սկսում է ավելի լայն մասշտաբներով իրականացնել քաղաքական ֆունկցիա։ Մի կողմից, պետությունը գործիք է դառնում մահմեդական հոգևորականության ձեռքին, որը դրա օգնությամբ փորձում է կենսագործել իսլամի սկզբունքները, իսկ մյուս կողմից՝ տիրող դասակարգերն իսլամն ու մահմեդական հոգևորականությանն օգտագործում են իրենց դիրքերի ամրապնդման համար։*

*Հայկական ՍՍՀ ԳԱ արևելագիտության ինստիտուտի հրատարակած աշխատությունում* հեղինակներն իրենց առջև խնդիր են դրել լուսաբանել «Մահմեդական եղբայրներ» հետադիմական կազմակերպության գործունեությունը Եգիպտոսում և Սիրիայում, ցույց տալ իսլամի և մահմեդական հոգևորականության դերի ուժեղացումը Թուրքիայի և Իրանի քաղաքական կյանքում, ինչպես նաև բացահայտել այդ երևույթի պատճառներն ու մատնանշել իսլամի ակտիվացման հնարավոր հետևանքներն ինչպես առանձին երկրների սոցիալ-քաղաքական զարգացման, այնպես էլ ամբողջովին համաշխարհային առաջադիմության համար։*

*Գրախոսվող ժողովածուում զետեղված է Ն. Հովհաննիսյանի «Իսլամի ակտիվացումը. բնույթը, առանձնահատկություններն ու հետևանքները» վերլուծական հոդվածը, որտեղ հեղինակը իսլամի ակտիվացում ասելով նկատի ունի մահմեդական պետությունների ներքին և արտաքին քաղաքական սկզբունքների ձևավորման գործում նրա քաղաքական նշանակալիության ուժեղացումն ու դերի բարձրացումը։*

*Հոդվածի հեղինակը, դիտարկելով մահմեդական երկրներում իսլամի տեղի և դերի ոչ միակերպ բնույթը, քննադատաբար վերլուծելով լայնածավալ փաստական ու վավերագրական նյութերը, ուսումնասիրելով մահմեդական երկրների սահմանադրությունները, այդ երկրները պայմանականորեն բաժանում է երեք խմբի։ Առաջինի մեջ մտել են այն երկրները, որոնք պաշտոնապես կամ փաստորեն թեոկրատական երկրներ են։ Դրանք են Սաուդյան Արաբիան, Կատարը, Օմանի սուլթանությունը, Արաբական Միացյալ էմիրությունները։ Այս երկրների օրենսդրության հիմքում դրված են կրոնական օրենքներն ու ավանդույթները։ Նրանց հասարակական-քաղաքական կառուցվածքը հենվում է իսլամի դավանական դրույթների վրա։ Այս խմբի երկրներում սահմանադրության դեր են կատարում ղուրանը և շարիաթը։*

*Հակաշահական հեղափոխությունից հետո Իրանը, թեպետև սահմանադրություն ունի, նույնպես անցավ պետությունների առաջին խումբը, շիա բնույթի իսլամի հիմնադրույթային սկզբունքներին համաձայն լիովին վերակառուցելով երկրի կառուցվածքը։ Եվ չի կարելի հեղինակի հետ չհամաձայնել այն բանում, որ այստեղ դրսևորվեց իսլամական քաղաքականության հակադարձ կապը. հոգևորականությունն իր ձեռքում է կենտրոնացրել ողջ գործադիր և օրենսդիր իշխանությունը, փորձում է ինչպես պետական, այնպես էլ հասարակական-քաղաքական ու սոցիալ-կուլտուրական ոլորտներում կենսագործել իսլամի բոլոր դոգմաները։*

*1983 թվականից պետությունների առաջին խմբին հարեց նաև Սուդանը, որը պաշտոնապես որոշում կայացրեց պետությունը իսլամի սկզբունքների հիման վրա վերակառուցելու վերաբերյալ։*

*Երկրորդ խմբի մեջ մտավ այն պետություն-*

* Ислам в политической жизни стран современного Ближнего и Среднего Востока. под ред. проф Н. О. Оганесяна. Ереван, изд-во АН Армянской ССР, 1986, стр. 229.

միջազգային հետադիմական դավադրության տարրերից մեկն ընդդեմ առաջադիմական վերափոխությունների ուղին բռնած երկրի։ 1980 թ. մարտին Սիրիայի կոմունիստական կուսակցության հայտարարության մեջ նշվեց, որ հենց Միացյալ Նահանգներն են հրահրել իրենց գործակալ «Մահմեդական եղբայրների» ելույթը՝ նպատակ ունենալով երկիրը պայթեցնել ներսից։

Սիրիայի կոմունիստները, եզրակացության մեջ նշում է Պ. Սարաջյանը, պաշտպանելով Սիրիայի հակաիմպերիալիստական արտաքին քաղաքականությունը, սիրիական ժողովրդի առաջադիմական նվաճումները, խնդիր են դնում ամրապնդել բոլոր հայրենասիրական ու առաջադեմ ուժերը, ընդլայնել սոցիալ-տնտեսական վերափոխումները, զարգացնել ու ամրապնդել համագործակցությունն ու բարեկամությունը ՍՍՀՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների հետ։ Եվ այդ պրոբլեմների ու խնդիրների լուծման ընթացքում հետադիմությունը, հանձինս «Մահմեդական եղբայրների» կազմակերպության և այլ աջ ուժերի, երկրի ներսում սոցիալ-քաղաքական հենարան չի ունենա։

Իսլամական գործոնի ուժեղացումը և Թուրքիայի ռազմական իշխանությունների քաղաքականությունը կրոնի հարցերում 1980 թ. ռազմական հեղաշրջումից հետո». այս է Ռ. Կոնդակչյանի ուսումնասիրության թեման։ Հեղինակը մանրամասնորեն վերլուծում է իշխանությունների և կառավարության քաղաքականությունը կրոնի և հոգևորականության հարցերում. հակվածությունը դեպի աշխարհիկ քաղաքականությունը, եկեղեցու անջատումը պետությունից և դպրոցինը՝ եկեղեցուց, միջկուսակցական պայքար բորբոքելու նպատակով Իսլամի և հոգևորականության դիրքի օգտագործման դեպքերի կանխումը, կրոնական հետադիմության ճնշումն ու Թուրքիայի սուննա և շիա համայնքների երկպառակության կանխումը։ Դրա հետ միասին Ռ. Կոնդակչյանը չի շրջանցում Թուրքիայի կառավարող շրջանների քաղաքականության երկրորդ կողմը՝ զիջումներն իսլամին և հոգևորականությանը բուրժուական աշխարհիկ պետության շրջանակներում և բուրժուազիայի իշխանության հետագա ուժեղացումը հոգևորականության նկատմամբ, ինչպես նաև իսլամի և հոգևորականության ազդեցության օգտագործումը հակակոմունիզմի քաղաքականությունում (էջ 189)։ Այնուհետև հեղինակը իրավացիորեն նկատում է, որ մյուս կրոնների հետևորդների նկատմամբ իսլամի կրոնական թեշնամության առկայության պայմաններում երկրում «բացակայում է ամերիկյան իմպերիալիզմի և ՆԱՏՕ-ի գծով նրա դաշնակիցների դեմ ուղղված մահմեդական նացիոնալիզմը» (էջ 204), որը նկատվում է մի շարք այլ մահմեդական երկրներում։

Գրախոսվող աշխատությունը եզրափակում է Հ. Եգանյանի «Շահի և հոգևորականության փոխհարաբերությունները 1950—1960 թթ.» հոդվածը, որտեղ հեղինակը միանգամայն հիմնավորված կերպով նշում է, որ Իրանի շիա բարձրագույն հոգևորականությունը միշտ չէ, որ շահի նկատմամբ օպոզիցիայում է գտնվել, ինչպես ինքն է պնդում, այլ ավելին՝ որոշակի ժամանակաշրջաններում նա պաշտպանել է շահին, իսկ վերջինս էլ իր հերթին ներքին քաղաքականությունում հաճախ հենվել է նրա վրա։

Բացահայտելով նրանց փոխհարաբերությունների մեխանիզմը՝ Հ. Եգանյանը ցույց է տալիս շահի քաղաքականությունից Իրանի բարձրագույն հոգևորականության դժգոհության ակունքները, քաղաքականություն, որն ուղղված էր հոգևորականության ազդեցության և երկրի քաղաքական կյանքում նրա միջամտության սահմանափակմանը, սեկուլյարիզացիայի՝ կրոնից պետության անջատման խորացմանը։

Արտասահմանյան Արևելքի երկրների քաղաքական կյանքում իսլամի ակտիվացման հետևանքով ծագած ժամանակակից պրոբլեմներին նվիրված սովետական գիտական գրականությունը, ցավոք, այնքան էլ պատկառելի թիվ չի կազմում։ Սովետահայ արևելագետների այս աշխատությունը որոշ չափով լրացնում է ժամանակակից իսլամի քաղաքական ակտիվացման և Մերձավոր ու Միջին Արևելքի երկրների քաղաքական կյանքի վրա նրա ազդեցության հետ կապված ոչ բավարար չափով ուսումնասիրված, բայց չափազանց հրատապ պրոցեսների ուսումնասիրման գործում եղած բացերը։

Վերջում նկատենք, որ, ցավոք, գրախոսվող ժողովածուն զերծ չէ որոշ թերություններից. հանդիպում են կրկնություններ, հեղինակների առաջադրած խնդիրների լուծման առումով ոչ սկզբունքային հարցերի շարադրման ձգձգվածություն։ Մեր կարծիքով, ոչ միշտ է բավարար հստակությամբ բացահայտվում ու քննադատվում մահմեդական խավարամոլության բումը, որի հակակոմունիստական սուր ծայրն ուղղված է ինչպես սոցիալիզմի, այնպես էլ սոցիալիստական կողմնորոշման զարգացող երկրների դեմ։

**Ս. ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ**

Հանձնված է շարվածքի՝ 13. 05. 87 թ.։ Ստորագրված է տպագրության 16. 06. 87 թ.։ ՎՖ 02896։ Ֆորմատ՝ 70×108 1/16։ Տպագրություն՝ բարձր,, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.։ Տպաքանակը՝ 18732։ Պատվեր 1034։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2։